


# ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

## ԱԶԳԱՅԻՆ

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

1874—75 ԵՒ 1875—76 ԱՄԱՑ

ԵՒ

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՈՅ





1876

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Ս. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

[illegible] ԹԻՒ 13

# ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

Hamaratuutiun Azgayin Kedronakan...

## ԱԶԳԱՅԻՆ

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

1874—75 ԵՒ 1875—76 ԱՄԱՑ

ԱՌ

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՆ





ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Ս. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

ՈՒԶՈՒՆ - ՉԱՐՇԻ ԳԼՈՒԽ ՃԷՐԻՖ ՓԱՇԱ ԽԱՆ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎ

1. Աշըանեան Յովհաննէս փաշա — Հրաժարեալ
2. Մազլումեան Սիմոն Պէյ
3. Տատեան Առաքել » — Հրաժարեալ
4. Արզումանեան Յովհաննէս էֆէնտի — Հրաժարեալ
5. Մամիկոնեան Միքայէլ »
6. Քափամաճեան Յարութիւն »
7. Մանուկեան Մանուկ » — Հրաժարեալ
8. Խանտամանեան Յակոբ » — Հրաժարեալ
9. Արապեան Սարգիս »
10. Նորատունկեան Սիմոն »
11. Իկիապաշեան Աւետիս »
12. Խնդիրեան Յովհաննէս »
13. Միքայէլեան Սիմոն »
14. Փամուկչեան Պօղոս » — Հրաժարեալ

## ՀՐԱԺԱՐԵԼՈՑ ՏԵՂ ԸՆՏՐՈՒԱԾՆԵՐԸ

1. Կոստանդեան Յակոբ էֆէնտի — Բացակայ
2. Փափազեան Կարապետ »
3. Աշնանքեան Խաչիկ »
4. Աբրահամեան Սարգիս »
5. Լոռեան Մկրտիչ » — Բացակայ
6. Հայրէնց Աբրահամ » — Հրաժարեալ

# ՀԱՄԱՐԱՏՈՒԹԻՒՆ

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

## 1874 — 75 ԱՄԻ

ԵՒ

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՆ

---

### Ա.

#### կազմութիւն

Քաղաքական Ժողովս Ազգային Ժողովոյդ քուէովն ու վստահութեամբը պատուեալ իւր վաւերագիրը Բ. Դռնէն ընդունելէն ետև, Ազգային Ժողովոյդ Նախագահ և Կրօնական Ժողովոյ Ատենապետ Արքազանին հրաւիրանօքն 'ի Պատրիարքարան իւր առաջին նիստն ըրաւ 'ի 27 Նոյեմբերի 1873։

Այս առաջին նիստին մէջ նախ իւր դիւանը կազմելով և ապա Կրօնական Ժողովոյ հետ միացեալ Խառն Ժողովով Պատրիարքական Տեղապահի ընտրեց, որ 73—74 ի Խառն Ժողովոյ համարատուութեան մէջ արդէն տեղեկագրուած է։

Քաղաքական Ժողովս Ազգին անդորրութիւնն ալեկոծեալ ժամանակի մը մէջ Վարչութեան տաժանելի և կնճիռներով ծանրացեալ բեռը իւր վրայ առած էր։

Իրաց այս վիճակին մէջ նորընտիր Վարչութիւնն ազգին խաղաղութիւնը վերահաստատելու և ազգային գործոց յառաջադիմութեան ու բարւոքման առջև հակառակ կուսակցութիւններն ի մի ձուլելու համար պարտք համարեց խիստ անկողմնակալ և գործունեայ ընթացք մը բռնել, և իւր այս ընթացքին նախագիծը ծանոյց հասարակութեան հետզհետէ յետագայ երկու յայտարարութիւնները հրատարակելով,

#### Պատճէն յայտարարութեանց Քաղ. Ժողովոյ

### Ա.

Ազգային Վարչութեան Քաղ. Ժողովս 'ի պաշտօնավարութիւն կոչուած միջոցին նախ՝ իւր շնորհակալութեան պարտաւորութիւնը կը մատուցանէ Ազգ. Ընդհ. Ժողովոյ, որ իւր վստահութեան քուէովը պատուեց Ժողովոյս անդամները և անոնց յանձնեց Ազգ. գործադիր իշխանութեան ղեկը. ուստի նորա վստահութեան արժանաւոր կերպով պատասխանելու և Ազգային Սահմանադրութեան տրամադրութեանը համաձայն վարուելու համար իւր ջանքն ու անձնուիրութիւնը ցուցնելու ամեն կերպով տրամադիր և պատրաստ ըլլալը յայտնելէ ետև, կը յայտարարէ նաև հանրութեան ազգիս թէ Ժողովս անկողմնակալութիւնն ու արդարասիրու-

*թիւնն իրեն առաջնորդ ընտրած է, կուսակցութիւններ իր աչքաց առջև հաւասար արժէք ունին, և ազգին խաղաղութիւնը վրդովող որ և իցէ անձ թէ պաշտօնական ըլլայ և թէ անպաշտօն, իր ատենին մէջ արժանի դատապարտութիւնը պիտի կրէ. Ազգային մանկանց դաստիարակութիւնը գլխաւորաբար իր ուշադրութիւնը պիտի գրաւէ և իր ամէն գործոյն մէջ պիտի ջանայ արդարութենէն մազիւ չափ չը շեղելու:*

*Ժողովս վստահ է ազգիս ընդհանրութեան կողմանէ համակրանաց և ձեռնտուութեան հանդիպիլ, որոց ապաւինելով կսկսի իր պաշտօնը և որովհետև ինքզինքն անսխալ չգտանիր, յօժարակամ նկատողութեան պիտի առնու ազգային մամլոյ կողմանէ ըլլալիք անկողմնակալ դիտողութիւնները. Ուստի սոյն տրամադրութեամբ ընդհանուրի վերաբերեալ իր արարքին վրայ եղած դիտողութեանց կամ քննութեանց ազատութեանը չը դիմադրելէն զատ, ժողովս կը ցանկայ որ անոնք տեղի ունենան ամէն անգամ երբ օրինաց սահմանէն ու վայելչական է և կը կարօտի քննադատութեան կամ դիտողութեան. սակայն չիրնար համբերել որ սոյնք անկեղծութեան սահմանէն ելնելով թշնամական կամ անձնական ձև առնուն: Ինչպէս այս, նոյնպէս կը խնդրէ Մեծ. Խմբագիրներէն որ անստոյգ աղբիւրներէ քաղուած տարբերակներու հրատարակութեամբ ազգային խաղաղութիւնը վրդովելէ զգուշանան. քանզի Ժողովս ազգային լրագրաց միջոցաւ հրատարակութեան պիտի տայ իւր բոլոր խնդրոց համար ընելիք տնօրէնութիւնները:*

*Ազգին այժմեան վիճակը լոկ միայն և խաղաղութեան զարմանի պէտք ունի, և առաւ պիտի ապահովուի ազգին Սահմանադրական գործոց բարեկարգութիւնը. ուստի Ժողովս ամէն կողմէ ազգայնոց յորդոր կը կարդայ խաղաղասիրութեան զգացմամբ իրենց պարտաւորութիւնը ճանչնալ և կատարել՝ եթէ կուզեն փոխադարձաբար ազգէն ունեցած իրաւունքին վայելել:*

*Ժողովս ընդհանուրի վերաբերեալ ազգային նորանոր կարգադրութեանց հետամուտ ըլլալով, զանոնք ալ իրենց ժամանակին և կարգին հրատարակութեամբ պիտի իմացնէ Ազգին:*

30 *Նոյեմբեր* 1873

Բ.

*Ազգային Քաղ. Ժողովս նկատելով որ 30 Նոյեմբեր 1873 թուականաւ հրատարակած Պաշտօնական յայտարարութեանքն ըրած հրաւէրին հակառակ ազգային լրագիրներէն ոմանք կը շարունակեն տակաւին Ազգ. Երեսփոխանական Ժողովոյ, Պատրիարքութեան և ազգային երեսփոխանաց և պաշտօնէից ոմանց դէմ թշնամական և անարգական կերպով խօսիլ.*

*Նկատելով որ փոխանակ ժողովուրդը սիրոյ և խաղաղութեան յորդորելու յուզիչ հրատարակութիւններով Ազգին խաղաղութիւնը կը վրդովեն.*

*Պարտք կը համարի ծանուցանել ներկայ ազդարարութեամբս Մեծ. Խմբագրաց՝ որ այսուհետև միևնոյն ընթացքը շարունակող լրագիրն Ազգ. Պատրիարքութեան դէմ իւր վրայ ծանր պատասխանատուութիւն առած պիտի ըլլայ. Հետևաբար Պատրիարքութիւնն ալ պիտի ստիպուի անոր դէմ պէտք եղած միջոցներուն դիմել:*

*Իսկ անոնք որ ազգային պաշտօնէութեան անձին դէմ ամբաստանութիւն ունին և դատաստան կը խնդրեն, կը հրաւիրուին իրենց ամբաստանագիրը ներկայացնել Պատրիարքութեան և օրինական պայմանները լրացնելով դատաստանի մտնել յատկապէս կարգեալ դատական Մասնաժողովին առջև.*

17 *յուլիս* 1874:

*Պատրիարքութիւնս իր անկողմնակալութիւնը և հաստատակամ խաղաղութենէն և միայն անոնց բարիքը մտածելէն զատ ուրիշ կէտ նպատակի չունենալը արդեամբ ցուցնելու համար իր ատենին մէջ եղած որոշումներէն անոնք որ անպատշաճութիւն չունին յայտնելու, Պաշտօնական հրատարակութիւն անուամբ երբեմն ամէն ազգային լրագիրներու մէջ հրատարակել որոշեց:*

# ԿԱՆՈՆԱԳԻՐ

## ՆԵՐՔԻՆ ՔԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ

## ԱԶԳ. ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ

### ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ ԵՒ ՊԱՇՏՕՆԵԱՅՔ

### Ա.

Սրբազան Պատրիարքն Ազգային Ժողովոց Նախագահն է և անոնց որոշմանց գործադիրը, միանգամայն Պատրիարքարանի գործոց ընթացքին քարեկարգութեան հսկող և պատասխանատու է՝ խորհրդական ունենալով իւր փոխանորդն ։

### Բ.

Պատրիարքական Փոխանորդը խորհրդական է Սրբազան Պատրիարքին, և իւր յատուկ պաշտօններէն զատ փոխանորդաբար կը հսկէ նաև Ազգային Ժողովոց որոշմանց գործադրութեան ։ Միանգամայն պատասխանատու է Պատրիարքարանի ներքին քարեկարգութեան ։

Պատրիարքական Փոխանորդը ներկայ կը գտնուի Կրօնական, Քաղաքական և Խառն Ժողովոց նիստերուն ։

### Գ.

Պատրիարքարանն ունի նաև երկու գլխաւոր պաշտօնեայ, Գափուքէհեային և Դիւանապետն ։

### Դ.

Պատրիարքական Փոխանորդին, Գափուքէհեային և Դիւանապետին ընտրութիւնը Սրբազան Պատրիարքին առաջարկութեամբ Քաղաքական Ժողովը նկատողութեան կառնու և պէտք եղածը կը տնօրինէ ։

### Ե.

Գափուքէհեային Կառավարութեան և Պատրիարքարանի մէջ եղած յարաբերութեանց գործակատար պաշտօնեայն ըլլալով, պարտական է Սրբազան Պատրիարքին և Փոխանորդ Հօր կողմէն իրեն յանձնուած գործերը կանոնաւոր կերպով կատարել և ամէն օր արդիւնքը գրով հաղորդել, որպէս զի Ժողովոց ներկայացուի ։

Գափուքէհեային ներկայ կը գտնուի Քաղաքական և Խառն Ժողովոց նիստերուն ։

Գափուքէհեային ունի մէկ օգնական մը Թէ՛ Բ. Դրան և Թէ՛ Ոստիկանութեան վերաբերեալ գործոց համար ։

### Զ.

Դիւանապետը դիւանական գործոց կարգադրութեան գործադիր և պատասխանատու պաշտօնեայն ըլլալով, պարտական է իւր իրաւասութեան տակ գտնուած գրասենեակներուն մէջ եղող պաշտօնէից պարտքերն անթերի և անյապաղ գործադրել տալ ։

Դիւանական պաշտօնէից փոփոխութիւնն ու յաւելումը Դիւանապետին առաջարկութեամբ Քաղաքական Ժողովը նկատողութեան կառնու և պէտք եղածը կը տնօրինէ ։

### Է.

#### ԴԻՒԱՆԱՏՈՒՆ

Կեդրոնական Դիւանատունն երեք գրասենեակներէ կը բաղկանայ, որք են՝ Խմբագրութեան, Արձանագրութեան և Վիճակագրութեան գրասենեակ, ընդ հսկողութեամբ և պատասխանատուութեամբ Դիւանապետին ։

### ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿ

Այս գրասենեակին մէջ կը խմբագրուին այն ամեն Հայերէն Տաճկերէն և Գաղղիարէն գրութիւնք, որ կը պատկանին Երեսփոխանական, Կրօնական և Քաղաքական ժողովոց որոշմանց։

Դիւանապետն ունի իրեն հետ երեք խմբագիր դիւանագպիրներ, մէկը Կրօնականի, մէկը Հայերէնի և Գաղղիարէնի և երրորդը Տաճկերէնի յատկացեալ, որոց պաշտօնն է գլխաւորապէս դիւանապետին կողմէ յանձնարարեալ խմբագրական գործոց պատրաստել։

Նոյնպէս ունի ուրիշ երեք դիւանագպիրներ, որոց երկուքին պաշտօնն է Հայերէն խմբագրութեանց ընդօրինակութեան և ուրիշ գըրութեանց պատրաստել։

### ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿ

Այս գրասենեակին մէջ կարձանագրուին Պատրիարքարան եկած այն ամեն թղթերը, զորս Արքազան Պատրիարքը կամ իւր Փոխանորդը կարդալէ ետև օրուան թուականը և որ ժողովոյ որ անկ են, վրան նշանակելով կը ղրկեն Արձանագրութեան գրասենեակը։

Արձանագրութեան պաշտօնեայն նոյն թըղթոց համառօտութիւնն ընդհանուր տումարի մը մէջ կարգաւորապէս արձանագրելէ ետև կը ղրկէ իրենց պատկանեալ տեղերն՝ անոնցմէ ընդօրինակութիւն առնելով. և երբ պատասխաններն ալ խմբագրութեան դիւանէն առնէ, արձանագրութեան տումարին մէջ այնոր եղած գործողութիւնները կատարելէ ետև կը յղէ իրենց տեղերը։

Վերջապէս Արձանագրութեան պաշտօնեայն պատասխանատու է Դիւանապետին առջև Պատրիարքարան մտած ու ելած ամեն թղթոց համար, որոց պահպանութիւնն իրեն յանձնեալ է։

Արձանագրութեան պաշտօնեայն ունի իրեն հետ մէկ օգնական մը։

### ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԵԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿ

Այս գրասենեակին պաշտօնն է

Ա. Վանօրէից, եկեղեցեաց, և ազգային որ և է հաստատութեանց թէ՛ շարժական և թէ անշարժ ստացուածոց վրայոք մանրամասն տեղեկութիւններ հաւաքել և կանոնաւոր տումարներու մէջ արձանագրել։

Բ. Ընդհանուր ազգահամար մ'ունենալ, որ պիտի պարունակէ ամեն ազգայնոց արձանագրութիւնք, հանդերձ վիճակագրութեամբ պատահած ծննդոց, վախճանմանց և ամուսնութեանց։

Վիճակագրութեան պաշտօնեայն այս տեղեկութիւնները պիտի հաւաքէ վանահայրներէն, գաւառական վարչութիւններէն և Մայրաքաղաքիս Թաղական խորհուրդներէն, այնոր եղած հրահանգներն ու ցուցակներն անոնց հաղորդելով։

## Է.

### ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ

Դաստիարակական խորհուրդն ունի օրէնսգէտ և տաճկագէտ պաշտօնեայ մը, որ այսպիսութեամբ նոյն խորհրդին գործողութեանց օրինական և խմբագրական մասերը պիտի կատարէ, և մէկ ալ մնայուն դիւանագպիր մը՝ որոյ պաշտօնն է գաւառական և ամուսնական արձանագրութեանց պատրաստել և փոխանորդարանի դիւանագրութիւնը կատարել։

Տնտեսական խորհուրդը և Ելմտական Հոգաբարձութիւնը միանալով ունին մէկ դիւանագպիր, մէկ հաշուակալ, մէկ գանձապահ և մէկ Անցագրատան պաշտօնեայ, որ Վարչութեան հրահանգին համեմատ իրենց պաշտօնը պիտի վարեն։

Ուսումնական և Վանօրէից խորհուրդները և Կտակաց Հոգաբարձութիւնը միանալով, ունին մէկ դիւանագպիր մը, որոյ պաշտօնն է նոյն երեք ճիւղերուն վերաբերեալ գրական բոլոր գործողութիւնները և միանգամայն Ուսումնական խորհրդոյ արձանագրութիւնները և վանական կալուածոց ու Ազգին նուիրեալ կտակաց արձանագրութիւնները կատարել յատուկ տումարներու մէջ։

Այս խորհրդոց և Հոգաբարձութեանց պաշտօնէից ընտրութիւնն անոնց առաջարկութեամբ

Քաղաքական Ժողովը նկատողութեան կառնու և այնպէս եղածը կը տնօրինէ ։

Թ.

Պատրիարքարանի խոհանոցը բոլորովին վերցուած ըլլալով, ամեն պաշտօնեայք իրենց քսակէն պիտի ընեն ուտեստի ծախքերնին ։ և թարգմաններէն ու սենեկապաններէն զատ ուրիշ մէկը չ'պիտի կենայ գիշերներն 'ի Պատրիարքարան ։

Ուստի Եէտի Գուլէի Ս. Յակոբայ վանուց մէջ Հիւրանոց անուամբ յարկ մը յատկացած է, ուր պիտի երթան Սրբազան Պատրիարքին յանձնարարականով 'ի Պատրիարքարան հիւր մտնելու սահմանեալ անձինքը ։

Այս Հիւրանոցի ծախուց համար կեդրոնական սնտուկէն ամսական հազար ղրուշ յատկացած է Հիւանդանոցի սնտուկին ։

Ժ.

Պատրիարքարանն ունի փոխանորդ Հօր հսկողութեան տակ ընդհանուր վերակացու մը, որուն յանձնուած է Պատրիարքարանի բոլոր կահկարասիքը, և որ պատասխանատու է ներքին մաքրութեան և ապահովութեան, և իր հսկողութեան տակ պիտի ունենայ

Մէկ սենեկապան Պատրիարքին համար

Մէկ » Փոխանորդարանի »

Երկու սպասաւոր ծառայութեան և մաքրութեան համար ։

Հինգ վեց բարապան (կաւասքի), որոց մէկը գլուխ պիտի ըլլայ, և ամենքը մէկէն ընդհանուր վերակացուին հսկողութեան տակն են ։

Մէկ ալ դռնապան ։

Վերոյիշեալ սպասաւորաց փոփոխութիւնը Փոխանորդ Հայրը տնօրինելէ ետև' պատճառները Քաղաքական Ժողովոյ կը հաղորդէ ։

ԺԱ.

ԿԱՆՈՆՔ ՎԱՆՑ ՊԱՇՏՕՆԵԻՑ

Առանց բանաւոր պատճառի ոչ և է պաշտօնեայ չ'պիտի զրկուի իր պաշտօնէն ։

Ազգին ծառայութեան յատկացեալ պաշտօնեաներն երբ երկար ծառայութենէ ետև ծերութեան կամ' ցաւագարութեան պատճառաւ անկարող լինին այլ ևս իրենց պաշտօնը շարունակելու, ըստ հետևեալ հրահանգի կազդուրման ամսական պիտի առնեն մինչև ցմահ Ազգային Սնտուկէն ։

Անոնք' որ 10 տարի շարունակ առանց բարոյական պակասութեան և հաւատարիմ' ծառայութեամբ անկարող գտնուին, պիտի առնեն իրենց ամսականին հարիւրին երեսունը, իսկ 10 տարիէն աւելի ծառայողներուն կազդուրման ամսականը համեմատաբար տարուէ տարի հարիւրին մէկ պիտի յաւելնայ, այնպէս որ ամբողջ երեսուն տարի ծառայողները իրենց ամսականին հարիւրին յիսուն և քառասուն տարի ծառայողները հարիւրին վաթսուն կազդուրման ամսական պիտի առնեն ։

ՀՐԱՀԱՆԳՔ ԿԱՄ ԿԱՆՈՆՔ ՀԱՄԱՐԱԿԱԼՈՒԹԵԱՆ ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ

Ա.

ՀԱՄԱՐԱԿԱԼ

1. Պատրիարքարանի համարակալը մաքուր ձեռատետր մը կամ յիշատակարան մը պիտի բանէ և ամեն դրամական գործողութիւնները պատահածին պէս հոն պիտի արձանագրէ թէ մուտք ըլլայ և թէ ելք ։

2. Ձեռատետրէն անմիջապէս զանազան օժանդակ տետրակներու մէջ պիտի անցնէ պատահած գործողութիւնները, օժանդակ տետրակներուն երեսահամարները ձեռատետրին մէջ և ձեռատետրին երեսահամարը օժանդակներուն մէջ նշանակելով ։

3. Ամեն օր ձեռատետրին մէջէն նման գործողութիւններն ամփոփելով գումարները կրկնատումարի ձևով օրինաւորապէս օրհաշիւը փոխադրելու և անկէց ալ մայր հաշիւն անցնելու է ։

4. Ամեն ամսագլուխ Տնտեսական խոր-

հուրդ և Ելմտական Հոգաբարձութիւնք սնտուկի տետրակը պիտի վաւերացնեն իւրաքանչիւր գործածութիւն իր հակակշռոյն հետ բաղդատելով։

5. Նաեւ Համարակալը արձանագրութեան տետր մը պիտի ունենայ Պատրիարքարանի սնտուկը աւանդ ձգուած գոյից համար, ուր իւրաքանչիւր աւանդին մուտքն ու ելքը կանոնաւորապէս պիտի արձանագրուին մտից պատճառովը և ելքին հրամանովը, և այս աւանդները ծրարեալ և Պատրիարքարանի կնքովը կնքեալ պիտի ըլլան և ազգային սնտուկին մէջ պիտի պահուին։

Նաեւ պիտի ունենայ առկախ վճարեալ գումարներու համար տետրակ մը, ուր ամեն առկախ վճարմունքներ թէ հաշուոյ մը մէջ իրարու տակ նշանակուած պիտի ըլլան և թէ զատ տեղերու մէջ և իւրաքանչիւր առ կախ վճարմունք լրանալուն պէս գոցուելու են, քովը նշանակելով իրենց բուն արձանագրութեան տեղերը։

6. Համարակալը պարտաւոր պիտի ըլլայ ամեն երեկոյ թղթի մը վրայ նշանակել սնտուկին մուտքն ու ելքը և անոնց տարբերութիւնը նաեւ առ կախ վճարմունքները. այս թուղթը պիտի ցուցնէ Պատրիարքարանի սնտուկին մէջ գտնուած պատրաստ գումարը, զոր ինքն ստորագրելով և գանձապահին կնքել տալով պիտի յանձնէ Սրբազան Պատրիարքին։

7. Արկղէն ելած բոլոր գումարները նախ Համարակալը պիտի հաշուէ յատկապէս պատրաստուած թղթի մը վրայ, անոր համեմատ պիտի ընդունի գանձապահը և պիտի կնքէ նոյն թուղթը. այս թուղթը դարձեալ համարակալին գալով պիտի արձանագրէ և անդորրագիրը Համարակալը պիտի տայ և Ելմտական Հոգաբարձութեան կնքովը վաւերացնելէն ետքը պէտք եղած գործողութիւնները պիտի կատարուին։

8. Նաեւ վճարման համար եկած հրամանագիրը նախ Համարակալը պիտի արձանագրէ և նոյն հրամանագրերուն վրայ արձանագրեալ ըսելով պիտի ստորագրէ և ետքը գանձապահը պիտի վճարէ, վճարման թղթերն ալ յատկապէս պատրաստուած ըլլալու են։

9. Ամեն տարեգլուխ մէյմը հաշիւէն քաղելով պիտի պատրաստէ տարեկան հաշուեցոյց և Տնտես. Խորհրդոյ և Ելմտական Հոգաբարձութեան պիտի ներկայացնէ և անոնց ստուգել տալով նոյնը պիտի յղէ առ Քաղ. Ժողովն։

Բ.

ԳԱՆՁԱՊԱՀ

10. Գանձապահը միայն սնտուկի տետրակ մը պիտի բռնէ որուն մէջ մուտքն ու ելքը կանոնաւոր կերպով պիտի նշանակէ։

11. Մտից համար միշտ իրեն կնիքը պիտի գտնուի Համարակալին քովը և ելից համար ալ իր բոլոր հրամանագրերը պիտի գտնուին Համարակալէն ստորագրեալ։

12. Ամեն երեկոյ իր տետրակը Համարակալին սնտուկին տետրին հետ պիտի բաղդատէ և առ Սրբազան Պատրիարքն տրուած հաշուեթուղթը պիտի կնքէ։ Գանձապահը պիտի ունենայ նաեւ երկու տետրակներ ալ, մին Պատրիարքարանի աւանդ ձգուած գոյից համար և միւսը առ կախ վճարմանց համար։

Այս տետրակներուն ձեւերը Համարակալին այս մասին բռնած տետրակներուն ձեւովը պիտի ըլլան։

13. Գանձապահը ինքնին մէկուն բան մը չ՚պիտի վճարէ, բայց միայն իրեն յղուած հրամանագրերու վրայ՝ որք արձանագրեալ և ստորագրեալ են Համարակալէն։

Գ.

ԱՆՑԱԳՐԱՏԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՅ

14. Անցագրատան պաշտօնեայն իրեն եկած գումարը նախ Համարակալին պիտի տայ, որ Քաղ. Խորհրդէն տրուած ծանուցագրին համեմատ Պատրիարքարանէն առնուելիք տուրքը հաշուէ և պաշտօնական թղթի մը վրայ նշանակէ ստորագրելով, որուն համեմատ գանձապահը կընդունի դրամը և կը կնքէ թուղթը, գանձապահէն կնքեալ թուղթը համարակալը պահելով պաշտօնական անդորրագիրը կու տայ և անոր վրայ Անցագրատան պաշտօնեային պաշտօնական ծա-

նուցագիրը կը գրէ և համապատասխան ալ զայն կը կնքէ պաշտօնական կնքով ։

15 . Ընդունարան Պաշտօնէին բոլոր գործողութիւնները այս կերպով կը կատարուին ։

16 . Ընդունարան պաշտօնեայն տետրակ մը պիտի բանէ ուր պիտի նշանակէ իր գրած ծանուցագիրը իրենց տեսակով , թուովը և անձանց անուններովը , այս տետրակը այնպիսի ոճով մը պիտի ըլլայ որ ամեն ատեն կարող ըլլայ մէկը դիւրութեամբ յայտնապէս տեսնելու որ բանի տեսակ ծանուցագիր գրած է և գանձապահը իւրաքանչիւր տեսակին համար ո՞րչափ դրամ ընդունած է և համագումարը ո՞րչափ է ։

## Դ .

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿԱՆՈՆՔ ԵԼՄՏԱԿԱՆ

Պատրիարքարանի սնտուկին մուտքերն են հետևեալ հասոյթները .

Ա . Կալուածական ծանուցագրերը .

Բ . Ճանապարհորդաց անցագրի և արհեստաւորաց հրամանագրի վկայականք ։

Գ . Նշանտուութեան և հրամանի հասոյթ .

Դ . Գաւառական մուգաթա բաժած և մայրաքաղաքիս եկեղեցիներէն առնուած քանչէլէր տուրքերը .

Ե . Եկեղեցական տուրք .

Զ . Զանազան հասոյթներ .

Եւ սնտուկին ելքն են .

Ա . Պատրիարքարանի պաշտօնէից ամսականք .

Բ . Յատկացեալ ամսականք .

Գ . Նշանտուքի ծախք .

Դ . Զանազան կամ ընդհանուր ծախք .

18 . Կալուածական ծանուցագրերու համար յատկապէս Ելմտական Հոգաբարձութեան կողմէն թուագրեալ և ստորագրեալ 50 , 110 , 160 և 260 դրուշնոց անդորրագրեր պէտք են , որք համեմատով Համապատասխանին տրուելու են իրմէ ստորագրութիւն առնելով , այս ստորագրութիւնը Տնտեսական Խորհրդոյ և Ելմտական Հոգաբարձութեան դիւանը պիտի մնայ և այս գործողութիւնը պիտի կատարուի ըստ 14 րդ յօդուածի ։

19 . Ճանապարհորդաց անցագրի և արհեստաւորաց հրամանագրի վկայականի հասոյթը ամբողջապէս Հիւանդանոցի վերաբերելով , Հիւանդանոցի Հոգաբարձութեան կողմէն թուագրեալ և ստորագրեալ անդորրագրեր պէտք են , որք համեմատով համապատասխանին տրուելու են իրմէ ստորագրութիւն առնելով , այս ստորագրութիւնը Հիւանդանոցի Հոգաբարձութեան քով կը մնայ և այս գործողութիւնը կը կատարուի ըստ 14 րդ յօդուածի և շաբթէ շաբաթ կամ ամսէ ամիս համապատասխանը Հիւանդանոցի Հոգաբարձութեան հրամանին վրայ հաշիւը կատարելով և ստորագրելով և ստորագրել տալով Հիւանդանոցի Պաշտօնէին գանձապահը կը վճարէ Հիւանդանոցի վերաբերեալ այս հասոյթը ։

Համապատասխանը Հոգաբարձութեան հրամանագիրը ստորագրել կուտայ առանց ընդունող Պաշտօնէին գումարը մէջը նշանակել տալով ։

20 . Նշանտուութեան հասոյթին համար փոխանորդ Հօր և Հիւանդանոցի Հոգաբարձութեան կողմէն կարգեալ պաշտօնէին ստորագրութեամբը տարիքնին , նշանուողներուն անունը , մականունը և ուրիշ պարագաները նշանակեալ թուղթ մը գալ պէտք է համապատասխանին , որ ըստ կանոնի հաշուելու է և հաշիւը նոյն թղթին վրայ նշանակելով ստորագրելու է . այս թղթին համեմատ գանձապահը դրամը առնելու և ընդունագրելու է , այս թուղթը Համապատասխանը պահելով պաշտօնական անդորրագիրը կնքեալ և ստորագրեալ յանձնելու է և անկէ ետքը Փոխանորդ Հայրը ուրիշ պաշտօնական արձանագրութիւնները և գործողութիւնները կատարելու է ։

Հրամանագրի համար ալ այս ձևը բռնելու է ։

Հիւանդանոցի բաժինն ալ պիտի վճարուի 19 րդ յօդուածին համեմատ ։

21 . Գաւառական մուգաթա և մայրաքաղաքիս եկեղեցիներէն քանչէլէր առնուելիք տարեկան յատկացեալ տրոց համար յատուկ անդորրագրեր չինել պէտք է , որք համապատասխանին քով կը մնան և երբ վճարուի և գանձապահը համապատասխանին ընդունած հաշուեթուղթը կնքէ , հա-

մարմինը վաւերացնել և կնքել անդորրագրերէն կուտայ ։

Մուգաթոյի վերաբերեալ անդորրագիրը թէ Սրբազան Պատրիարքը և թէ Ելմտական Հոգաբարձութիւնն ստորագրած ըլլալու է ։

Իսկ քանչէլէրի անդորրագիրը միայն Ելմտական Հոգաբարձութիւնը կստորագրէ ։

22 . Կեդրոնական տուրքը՝ տրոց Պաշտօնէին ձեռօք կը հաւաքուի հաշուակալէն ընդունած անդորրագրերուն վրայ ։ Տրոց անդորրագրերը Ելմտական Հոգաբարձութեան կողմէն կը պատրաստուին, որք թուագրեալ և ստորագրեալ ըլլալու են և համրանքով յանձնուելու են հաշուակալին իր ստորագրութեան վրայ . այս ստորագրութիւնը Տնտես . Խորհրդոց և Ելմտական Հոգաբարձութեան դիւանը պիտի մնայ ։

Երբ տրոց պաշտօնեայն հաւաքած դրամները կեդրոնական սնտուկին կը յանձնէ, հաշուակալը գանձապահէն ստորագրութիւն մը առնելով տրոց պաշտօնէին անդորրագիր կուտայ ։

23 . Զանազան հասոյթներն են .

Ա . Երդման համար Պատրիարքարան դիմողներէն առնուած մէկ մէկ մէճիտիէն՝ իրեն ծախք գրուած թէզքէրէին .

Բ . Ուր և իցէ ստորագրութեանց և մկրտութեան վաւերացմանց համար առնուած մէկ մէկ մէճիտիէն ։

Գ . Փոխանորդագրի վաւերացման համար առնուած երկուքական մէճիտիէն ։

Դ . Գալաթայ Ասպնջակաց և գաւառական ազգային ժողովոյ վաւերացման համար դրկուած Պատրիարքական կոնդակներէն իրենց մուգաթային վրայ 10 առ % նմանապէս մաղթանագիր քարոզիչներուն և 'ի վաւերացումն Թաղ . Խորհրդոց տրուած կոնդակներուն համար իրենց քանչէլէրին վրայ 10 առ % առնուած տուրքը ։

Ե . Մայրաքաղաքիս Թաղ . Խորհուրդներէն տրուած կողմնակի վկայագրերուն համար յատուկ դրոշմատուր և տանով ( քօշան ) թըղթեր կը պատրաստուին Ելմտական Հոգաբարձութեան կողմէն կնքեալ, որոց համար 10 տական փարայ կառնուի Թաղ . Խորհուրդներէն ։

Զ . Պատուաստանական հասոյթ .

Այսոց համար դիւանական հասոյթ անունով անդորրագրեր ըլլալու են Ելմտական Հոգաբարձութեան կողմէ ստորագրեալ և թուագրեալ որք համրանքով յանձնուելու են Համարակալին իրմէ ստորագրութիւն առնելով և իր ստորագրութիւնն ալ Տնտեսական և Ելմտականի դիւանը պահելով այնոր եղած առնելը սանդմէ կուտայ վերջնիկեալ կանոնաց համեմատ բաժնին մէջ թէ՛ առնուած տուրքը և թէ խնդիրը նշանակելով, իսկ տրուած մասին միայն մնացորդը նշանակելով բայց այնպէս է որ բաժնին մէջ նաև վճարողն ալ ստորագրէ ։

24 . Ամեն ամսագլուխ համարակալը կը պատրաստէ պաշտօնէից ամսականները պարունակող թուղթ մը, որ պիտի նշանակուած ըլլան բոլոր պաշտօնէից անուններն դիմացը իրենց ամսականք, այս թուղթը Ելմտական Հոգաբարձութենէն վաւերացեալ պիտի ըլլայ և Սըրբազան Պատրիարքը տեսնելով հրաման կընէ 'ի վճարումն ամբողջապէս կամ մասամբ % այչափ ընելով սնտուկին դրամական վիճակին համեմատ, այս թուղթը համարակալն ալ ստորագրելէ ետև գանձապահին կը յանձնուի և իւրաքանչիւր պաշտօնեայ իր առած դրամը իր անուանը դիմացը գրելով կստորագրէ ։

Ամեն տարի բոլոր Պաշտօնեայք հաստատապէս պիտի ընդունին իրենց ամսականները և երբ ամսականք թերահասի վճարուին, ամենքն ալ նոյն համեմատութեամբ թերահասի պիտի առնեն ։

25 . Որևիցէ ամեն սովորական ծախքերու համար Տնտեսականին ու Ելմտականին հաւանութիւնն առնելով և անոնց քննութեամբը ստորագրեալ հաստատագրերու վրայ Ս . Պատրիարքը հրաման կընէ և Համարակալը արձանագրած ըլլալուն համար ստորագրութիւնը դնելէն ետքը գանձապահը կը վճարէ առնողին նոյն թուղթը ստորագրել տալով ։

26 . Տնտես . Խորհուրդն և Ելմտական Հոգաբարձութիւնն ամենեւին անձամբ ծախ․ ․ ․ ո

պիտի ընեն, այդ Պատրիարքարանի Պաշտօնեայք պիտի ընեն իրենց հրամանաւը և միշտ ինչ բան որ առնուի կամ չինուի տուողէն կամ չինողէն իրրև հաստատագիր ստորագրութիւն առնելու է տրուած նուէրը կամ չինած բանը մէկ. ջը գրուած ըլլալու պայմանաւ ։

27. Թէ Պատրիարքարանի և թէ Թաղ. Խորհրդարաններէ և մէքթէպներէ տրուած ծանուցագրերը պէտք է որ ազգութեան յատուկ դրոշմը ունենալէն զատ նաև թուահամար և Պատրիարքարանի կողմէ տրուած ըլլան պէտք եղած տեղերը, և այս ամեն ծանուցագրերը որ յիշեալ կերպով չեն, ապօրինաւոր կը համարուին, և այս անզգոյշն կարգադրութիւնը հարկ եղած տեղերը պէտք է ծանուցանել ։

Ժողովս նկատելով որ մայրաքաղաքիս Թաղական խորհրդներուն և երեսփոխանութեան ընտրութեանց առեն միշտ խառնակութիւնը և դժուարութիւնը պակաս չէ, այս խառնակութեանց առջեն առնելու նպատակաւ ընտրական գործողութեանց համար հետևեալ հրահանգը պատրաստեց ։

# ՀՐԱՀԱՆԳ

## ԸՆՏՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹԵԱՆՑ

### ԸՆՏՐՈՂԱԿԱՆ ԺՈՂՈՎ

1. Թաղական խորհուրդը Ընտրողական ժողով կը կազմէ ընդ նախագահութեամբ Թաղին Քարոզչին կամ անոր չգտուած տեղ՝ Աւագերիցուն ։

2. Թաղական խորհուրդը գաղտնի քուէարկութեամբ երեքէն մինչև վեց Թաղեցիներ կ'ընտրէ, որք Թաղական խորհրդոյ հետ ի միասին կը կազմեն Ընտրողական ժողովը ։

3. Ընտրողական ժողովոյ անդամք ընտրողութեան իրաւունք և հանգամանք ունեցող պատուաւոր Թաղեցիներէն պիտի կազմուին ։

4. Ընտրողական ժողովը ընդ նախագահութեամբ Քարոզչին կամ Աւագերիցուն կը կազմէ իւր Դիւանը, որ կրնայ Թաղական խորհրդոյ դիւանին մէջէն կամ դուրս կազմել ըստ հաւանութեան ժողովոյն ։

5. Ընտրողական ժողովը Թաղին մէջի ըստ Սահմանադրութեան ընտրողութեան իրաւունք ունեցողներն առնելով, այբուբենի կարգաւ ընտրողաց ցանկ մը կը պատրաստէ, նշանակելով ըստ կարելւոյն ընտրողաց անունը, մականունը, արհեստ, փողոցը և տան թիւը ։ Այս ցուցակը առ նուազն ութ օր կը կախէ Թաղական խորհրդարանի ժողովրդեան տեսանելի կերպով, հրատարակելով ծանուցմամբ որ դիտողութիւն ունեցող անձինք կամ անձամբ ժողովին ներկայացնեն իրենց դիտողութիւնը, կամ բանկալը դրուած յատուկ տոմարի մը մէջ գրութեամբ, որ պիտի անուննին ստորագրեն, և իրենց բնակութեան փողոցն ու տանը թիւը նշանակեն ։ Անանուն դիտողութիւնք ընդունելի չեն ։

6. Ընտրողական ժողովոյ դիւանը՝ ներկայացեալ դիտողութիւնքը քննութեան կառնէ, և Ընտրողական ժողովոյն գիտութեամբը յաւելուած կամ ջնջում կ'ըլլայ ընտրողաց ցուցակին վրայ, ըստ ընկալեալ օրինաւոր տեղեկութեանց կամ դիտողութեանց ։

7. Ով որ մինչև քուէարկութեան նախընթացող ուրբաթ երեկոյ դիտողութիւն մը չէ ներկայացուցեր Ընտրողական ժողովոյն ընտրողաց և ընտրելեաց ցանկերուն վրայ, քուէարկութեան օրը կամ յետոյ այս մասին իրաւունք չունենայ դիտողութիւն կամ բողոք ներկայացնելու ։

### ԸՆՏՐՈՂՔ

8. Ընտրողութեան իրաւունք ունին Թաղին այն բնակիչները միայն որոնք Կեդրոնական տուրքոյ Թաղային տետրին մէջ անուննին արձանագրել տուած են ։

9. Թաղականի ընտրութեան մասնակցելու համար Սահմ. 55 դ. յօդուածոյն համեմատ իրաւունք ունի ամեն անհատ որ 25 տարին լրացուցած է և ըստ 67 դ. յօդուածոյ Սահմ. ընտրողական իրաւունքէ զրկուած չէ ։

10. Երեսփոխանական ընտրութեան համար ըստ Սահմ. 65-66 և 67 դ. յօդուածոց ընտրողութեան իրաւունք ունին այն Թաղեցիք որ 25 տարին լրացուցած, Օսմանեան հպատակ և

տարեկան 75 ղրուշ ազգային տուրք տուող են. և որ քրէական յանցանաց պատապարտեալ չեն. Ազգային գործոց մատակարարութեան մէջ նենգութեամբ բռնուած չեն, Ազգային ժողովոց մէկուն կողմէն Ազգային գործոց չգործածուելու վճիռ ընդունած չեն, Տէրութեան դատարաններուն կողմէն զգաստացուցիչ պատժոյն պայմանաժամը լրացուցած են, վերջապէս խելագարութեամբ անբուժական ճանչցուած չեն օրինաւոր կերպիւ։

## ԸՆՏՐԵԼԻՔ

11. Թաղական խորհրդոյ համար ընտրելի են անոնք՝ որ Թաղական խորհրդոյ ընտրող ըլլալու իրաւունք ու հանգամանքները ունին։ Իսկ երեսփոխանութեան համար ընտրելի են ըստ Սահմ. 68 դ. յօդուածոյ անոնք՝ որ 30 տարին լրացուցած են, Օսմանեան հպատակ են, Տէրութեան օրինացը տեղեակ, և ազգային գործոց հմուտ են և ընտրողութեան իրաւունքէն զրկուած չեն, ըստ 67 դ. յօդուածոյ Սահմանադրութեան։

12. Ընտրողական ժողովը գաղտնի քուէարկութեամբ ընտրելեաց եռապատիկ թուովը ցանկ մը կը պատրաստէ, զոր կը կախէ Եկեղեցւոյն բակին՝ առ նուազն 3 օր, ի տես ժողովրդեան, ծանուցանելով որ ընտրողք ազատ են այն ցանկէն դուրս ալ ընտրելեաց քուէ տալ։

## ՔՈՒԷԱՐԿՈՒԹԻՒՆ

13. Ընտրողական ժողովոյ Նախագահը քուէարկութեան որոշեալ օրէն առաջ հրատարակել կուտայ ի լրագիրս և Եկեղեցւոյ ու թաղին դպրոցներուն դռները ծանուցում փակցնելով, և յիշելով հրաժարեալ երեսփոխանաց կամ թաղականաց անունը, անոնց վերընտրելի ըլլալը, ընտրուելիք երեսփոխանաց կամ թաղականաց թիւն և ընտրելութեան պայմանները, և քուէարկութեան և քուէհանութեան որոշեալ օրն ու ժամը. և թէ՝ մինչ ի քուէարկութեան ուրբաթ երեկոյ ընտրողաց և ընտրելեաց ցանկին վրայ հարկ է դիտողութիւնները ներկայացնել, և թէ յիշեալ պայմանաժամէն ետքը ոչ ոք իրաւունք ունի դիտողութիւն ներկայացնելու։

14. Եթէ ընտրողն իւր քուէն անձամբ չկարենայ բերել, պէտք է ստորագրեալ նամակաւ մը զայն ղրկել, կամ պահարանի մը մէջ դնել և պահարանին վրայ իւր անունը ստորագրել. Նամակաբերն ևս պարտաւոր է միանգամայն նաև պահարանին վրայ ստորագրել այս կերպով «այս ինչ անձին կողմանէ նամակաբեր» (ստորագրութիւն)։ Եթէ նամակաբերը գրել չգիտեր՝ Ատենադպիրը կը գրէ պահարանին վրայ անոր անունը, և ան ալ խաչ նշան մը կը քաշէ անունին ներքև ի ներկայութեան Ընտրողական ժողովոյ։

15. Եթէ քուէն որոշեալ ժամանակէն ետքը գայ՝ ընդունելի չէ։

16. Եթէ քուէթուղթին մէջ ընտրելեաց թիւէն աւելի անուններ գտնուին՝ քուէն կարգաւը ընդունելի է բայց աւելորդ անունները և ստորագրեալ քուէթուղթերը ընդունելի չեն։

17. Ընդունելի չէ այն քուէն՝ որ ընտրելութեան հանգամանքներէ զուրկ անձի մը տրուած է։

18. Քուէարկութիւն կատարուելիք կիրակւոյն նախընթաց շաբաթ առաւօտ Ընտրողական ժողովը կը գումարուի, եղեալ դիտողութիւնները ի նկատի կառնու, վերջնական կերպով ընտրողաց ցուցակին վրայ տնօրէնութիւններ կընէ՝ եթէ նոր հարկ կայ. ատենագրութեան մէջ կը նշանակէ. և քուէարկութեան ժամանակ ներկայ գտնուելիք քննիչներն ու անդամները կորոշէ։

19. Քուէարկութեան ժամանակ Ընտրողական ժողովոյ անդամք ներկայութեան տումարին մէջ անուննին նախ կստորագրեն, և յետոյ մեծագոյն մասամբ տեսնելով քուէատուփին դատարկ ըլլալը, կը կնքեն զայն պաշտօնապէս և քուէարկութեան սկիզբէն մինչև վերջը կը հսկեն քուէատուփին վրայ։

20. Քուէարկուք կը ներկայացնեն իրենց քուէն Ընտր. ժողովոյն կամ անոր քննչացը, որ տեսնելով մէկ քուէթուղթէ աւելի չըլլալը՝

պարունակութիւնը չը կարդացուելու եղանակաւ քուէատուփին մէջ կը ձգեն առաջի քուէարկուին, կամ՝ նորա ստորագրել կու տան ընտրողաց տոմարին՝ մէջ։ Իսկ եթէ քուէարկուն դիր գրել չը գիտեր, Ատենադպիրը ի ներկայութեան քուէարկուին կամ՝ նորա նամակաբերին կը նշանակէ քուէարկուին կամ՝ նամակաբերին գրել չը գիտնալուն պատճառաւ ստորագրած չըլլալը, և նա խաչ նշան մը կը քաշէ ներքևը ։

21. Նամակաւ եկած քուէները կը նշանակուին ընտրողաց տոմարին մէջ ընտրողին անունին առջև, յիշատակելով թէ՝ նամակաւ եկած է քուէն ի ձեռն այս ինչ անձին (14)։

22. Եթէ քուէի մը վրայ կասկած յայտնուի, քննիչք կը պահեն այն քուէն և Նախագահին կը ներկայացնեն, որ Ընտրողական ժողովոյ մեծագոյն մասամբը կորոշէ ընդունելի կամ՝ անընդունելի լինելը ։

23. Քուէներն եկած միջոցին նոյն քուէներուն վրայ ներկայ ժողովուրդը իրաւունք ունի քուէատուփը ձգուելէն առաջ դիտողութիւն ընել Ընտրողական ժողովոյն, որ պարտաւոր է ի նըկատի առնուլ և ըստ այնմ ընդունիլ կամ մերժել նոյն քուէները պատասխանատուութիւնը իր վրայ առնելով. իսկ քուէատուփը ձգուելէն ետքը ո՛չ ոք իրաւունք ունի բողոքելու ։

ՔՈՒԷՀԱՄԱՐ

24. Քուէհամարի սկսելու ժամը երբ կը հասնի, քուէարկութիւնը կը դադրի. և Նախագահը քուէատուփը բանալէն առաջ ներկայութեան տոմարին մէջ քուէարկութեան հակող անդամոց անունները նշանակել կուտայ, նոյնպէս նաև քուէհամարի ներկայ գտնուելիք անդամոց և քննչաց անունները ։ Այս քննիչք կարող են նաև համախոհս ժողովրդեան մէջէն ընտրուիլ ի Նախագահէն ըստ պիտոյից ։

25. Նախագահը կը ծանուցանէ թէ քուէհամարի սկսելու ժամը հասած ըլլալով, քուէարկութիւնը դադրած է ։ Այնուհետև քուէատուփին կնիքները քննելէն յետոյ բանալ կուտայ զայն, և կը յանձնէ քուէները համրել մի առ մի ի տես ժողովրդեան ։

26. Յետոյ կարձանագրուի ի ձեռն Ատենադպրին քուէարկուաց և քուէից թիւը ։ Եթէ երկու թիւք անհամաձայն գան, Նախագահը Ընտրողական ժողովոյ հետ կը քննէ (եթէ հարկ դատի՝ ստանձնանալով) և եթէ ապօրինաւորութեան կասկած տեսնուի, իսկոյն կը հրատարակէ թէ քուէարկութիւնը իբրև չեղեալ կը նկատուի, և առաջիկայ կիրակի նորէն քուէարկութիւն ընել կորոշուի ըստ 77 դ. յօդուածոյ Սահմանադրութեան ։

27. Երբ քուէներուն համրանքը քուէարկուաց թուոյն հետ ճիշդ գայ՝ կը նշանակուի. և յետոյ մէկ կամ քանի մը գրասեղանի վրայ կը բաշխուին քուէթուղթերը, նոյնպէս և զոյգ զոյգ քննիչներ ըստ թուոյ գրասեղանոց, կըսկըսին գրել քուէթուղթերուն պարունակութիւնը ի տես ժողովրդեան ։ Երբ աւարտի՝ քննիչք կստորագրեն այն թղթերը. յետոյ մէկ թղթէ մը վրայ արդիւնքը կը միացնեն քուէթղթոց հետ և կը յանձնեն Նախագահին ։ Քննիչք իրենց կարդացած քուէթղթերը զատ պահարանի մէջ կը դնեն, վրան կստորագրեն, և գոցելով Դիւանին կը յանձնեն ։

28. Նախագահը կը հարցնէ թէ՝ դիտողութիւն ունեցող կա՞յ քուէհամարի գործողութեանց վրայ ։ Եթէ օրինաւոր դիտողութիւն մը լինի՝ քուէհամարը կրկին կատարել կուտայ միևնոյն նիստին ։ Իսկ եթէ օրինաւոր դիտողութիւն բնաւ չլինի՝ Ընտրողական ժողովոյ տոմարին մէջ քուէհամարին արդիւնքը՝ քննչաց տուած քուէհամարի թղթոյը համեմատ կարձանագրուի ի ձեռն Ատենադպրին. որոյ ներքև կստորագրեն Նախագահն և Ընտրողական ժողովոյ անդամք ։

29. Եթէ քուէն հաւասար թուով ստացուի՝ տարիքով երիցագոյնն է ընտրելի ։

30. Եթէ բացարձակ առաւելութիւն չը գոյանայ, երկրորդ անգամ քուէարկութիւն կըլլայ ։ Իսկ այս անգամ Ընտրողական ժողովը քուէհամարի գործողութեան մէջ յաջորդաբար առաւելագոյն երկու քուէ ստացողներէն կրկնապատիկ թուով ցանկ մը կը պատրաստէ, և ընտրողք՝ այս ցանկէն դուրս անձանց քուէ չեն կըրնար տալ ։

31. Ընտրութիւնը աւարտելէն յետոյ՝ Նախագահը մարդոց ընտրելեաց հաւանութիւնն ընդունի գրով։ Եթէ հրաժարողք գտնուին՝ Ընդհանրական ժողովը ի ձեռն Նախագահին համեմատական քուէարկութեան մէջէն քուէից յաջորդ առաւելութիւն ստացողները հրաւիրէ ի նոյն պաշտօն, մինչև որ ընտրելոց թիւը լրանայ։ Այս պարագան հարկ է որ յատկապէս նշանակուի Քաղաքական ժողովոյ ղըրկուելիք տեղեկագրին մէջ։

32. Նախագահը քուէտուփին մէջ պահել կուտայ քուէթղթերը, եկած նամակները, արձանագրութիւնները և ամեն այն թղթերը՝ որ նոյն քուէհաւաքին կը վերաբերին, և կը կնքէ քուէտուփը իր և Թաղական խորհրդոյ կնքով։ Այս թղթերս կը պահուին մինչև վաւերացումն ընտրելոց Ազգ. Քաղաքական ժողովէն։ Այնուհետև արձանագրութեանց օրինակը կը պահուի Թաղական խորհրդոյ դիւանատան մէջ, իսկ քուէթուղթք և նամակք կը ջնջուին։

33. Նախագահը իւրոյն պաշտօնական տեղեկագրով մը քուէարկութեան արդիւնքը կը հաղորդէ Ամեն. Ս. Պատրիարքին՝ նշանակելով ընտրելոց անունը, մականունը, արհեստը, անոնց յանձնառութիւնը և քուէարկութեան բոլոր պարագաները։ Այս տեղեկագիրը կստորագրեն Նախագահը և Ընդհանրական ժողովոյ Դիւանը, և կը կնքուի Նախագահին և Թաղական խորհրդոյ կնքով։

34. Քուէարկութեան մասին Քաղաքական ժողովը չը պիտի ընդունի այն բողոքը որ մինչև քուէհամարի սկիզբը կանխաւ թաղին Ընդհանրական ժողովոյն ներկայացուած չէ, բայց եթէ ներկայացուած է կանխաւ՝ Քաղաքական ժողովը նըկատողութեան կառնու։ Նոյնպէս քուէհամարի մասին եկած բողոքը կընդունի՝ ու նախ բացատրութիւն կուզէ Ընդհանրական ժողովէն։ Այնուհետև եթէ հարկ տեսնէ՝ իր կողմէն կարգեալ քննիչի մը ներկայութեանը կնքեալ քուէտուփը բանալ և քուէհամարի գործողութիւնը կրկին կատարել կուտայ և արդիւնքը ճշգելէն յետոյ հրատարակել կուտայ ի լրագիրս,

35. Վաւերացման վերջնական որոշումը Նախագահին հասնելէն յետոյ Ընդհանրական ժողովը լուծուած կը համարուի։

36. Այս հրահանգէն մէկ մէկ օրինակ շրջանակեալ պիտի ունենան իւրաքանչիւր Թաղական խորհուրդք։ Իսկ ընտրական գործողութեանց ժամանակ պիտի կախուի ի տես ժողովրդեան։

Գ.

## ՏԵՍՈՒՉ ԽՈՐՀՈՒՐԴՔ ԵՒ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆՔ

Սահմանադրութիւնն արդէն նախատեսելով որ Ազգային Կեդրոնական Վարչութեան Քաղաքական ժողովը բեռնաւորած էր տեղական, գաւառական և անհատական խնդիրներով և հազիւ կարող կըլլար անոնց մէջ պատահած գժտութեանց պատճառները վերցնելով խաղաղութիւնը վերահաստատելու, գաւառաց անհամար ցաւերը մօտիկ ընելով թէ Բ. Դրան և թէ Կառավարութեանց հայական իշխանց ու գթութիւնն անոնց վրայ հրաւիրելով իրաւանց և արդարութեան համեմատ խեղճ և աղքատ գաւառացի ազգայինները որկամբէ և թշուառութենէ ազատելու. ժողովոց և առաջնորդաց, ժողովրդեան և ժողովոց մէջ պատահած անհամաձայնութիւնը վերցնելով խաղաղութիւն և համաձայնութիւն գոյացնելու, և նաև Քաղաքական ժողովը միայն գործադրութեան որոշող ու վճռող մարմին մը ըլլալով՝ ազգին ընդհանուր թէ բարոյական և թէ նիւթական յառաջդիմութեան վերաբերեալ գործոց համար Տեսուչ խորհուրդներ և Հոգաբարձութիւններ սահմանուած էր. ուստի Քաղաքական ժողովս անմիջապէս իւր ուշադրութիւնը Տեսուչ խորհրդոց և Հոգաբարձութեանց վրայ դարձնելով նախորդ Վարչութեան օրով սահմանադրապէս կազմեալ Խորհուրդներն ու Հոգաբարձութիւնները վերահաստատեց, և պակասները լրացուց, և Սահմանադրական տարեգլուխն՝ այսինքն 1874 մայիս 1 ին կխափչուի նորոգեց ըստ կանոնի։

### Վ. ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ

Ժողովս ազգային պատասխանատուութեան խնդիրը զանազան նամակներու մէջ նկատողութեան առաւ և Ուսումնական խորհրդոյ հետ շատ անգամ խորհրդակցելով հետևեալ կարևոր որոշումները տուաւ ։

Ա. Պարտաւորեց այն ամէն Թաղական խորհուրդները՝ որք տակաւին դպրոցական հոգաբարձութիւն կազմած չէին, փութով կազմել և Ուսումնական խորհրդոյ հետ յարաբերութիւն հաստատել ։

Բ. Նորոգեց Սահմանադրութեան գործադիր յանձնաժողովը՝ որ պաշտօն մը դադրած էր գործելէ, որպէս զի գաւառաց մէջ Սահմանադրութիւնը գործադրուի և գաւառական Ուսումնական խորհուրդները կազմուին ։

Գ. Կեդրոնական սնտուկի պիւտճէին մէջ առ այժմ ամսական 3000 ղրուշի գումար մը սահմանեց յանուն Ուսումնական խորհրդոյ, որպէս զի Թոշակեան կերպով 2 կամ 3 ուսումնական ձեռնհաս պաշտօնեաներ ընտրուին և տեսչութիւն ընեն ազգային վարժարանաց վըրայ և Ուսումնական խորհրդոյ հրահանգին գործադրութեանը հսկեն ։ Վերոյիշեալ գումարէն 1500 ղրուշ Ուսումնական խորհրդոյ առաջարկութեան համեմատ առայժմ Պոլսոյ ազգային վարժարանաց համար ընտրուած տեսչին վճարել որոշեց ։

Դ. Ուսումնական խորհրդոյ առաջարկած Ակադեմիայի հաստատութիւնն ալ պատեհ ժամանակի մը ձգեց ։

Ե. Նաև որոշեց որ Ուսումնական խորհուրդն աշխատի սահմանել միօրինակ ուսուցման եղանակ մը և զայն գործադրել տալ վարժարանաց մէջ նախակրթարանի դրութեան վերածելով զանոնք, ի բաց առեալ միայն այնպիսիները որք հաստատուն և գոհացուցիչ եկամուտներ ունենալով կարող են երկրորդական վարժարան ըլլալ ։

Զ. Նաև առաջարկեց Ուսումնական խորհըրդոյ՝ որ վարժապետներն երեք կարգի զատէ, և իւրաքանչիւր կարգի համար զատ ամսական որոշէ ։

Է. Բարեգործական ընկերութեան գործադիր ժողովոյն ատենապետն ըստ հրաւիրանաց ժողովոյս գալով յայտնեց որ տակաւին նոյն ընկերութիւնը գոյութիւն ունի և թէ հաւաքեալ 3350 լիրայի գումարն ապահովեալ տեղ մը կը կենայ և անոր տոկոսը կը բանի ։ Եւ եթէ նոյն ընկերութեան Ընդհանուր ժողովոյն մէջ որ այս օրերս պիտի գումարի, այդ գումարն իւր նպատակին համեմատ գործածել որոշուի, պիտի առաջարկուի որ այդ գումարը յանձնուի Արմաշու վանից, որ հոգաբարձութեան դպրոց մ՚ունենալու ամէն յարմարութիւններն ունի ։ Եւ խօսք տուաւ նոյն Ընդհանուր ժողովոյ որոշումը Վարչութեան հաղորդելու ։

Ը. Վարժապետանոցի մասին Վարչութիւնն անոր կարևորութիւնն ընդունելով հետ գործադրութիւնն ալ որոշեց. միայն ուզեց գիտնալ ուսկից հաստատ կերպով թէ անոր շինութեան համար Ղալաթիոյ Եկեղեցին ո՞րչափ պարտական պիտի ըլլայ և այդ պարտքը պիտի կարենա՞յ վճարել Ուսումնական խորհրդոյ ցուցած հաշուոյն համեմատ. անոր համար յանձնաժողով մը կազմեց որ Ղալաթիոյ կալուածական հոգաբարձութեան և Ուսումնական խորհրդոյ հետ միանալով մէկ քանի հմուտ ճարտարապետներու հետ խորհրդակցին, և անոնց թէ շինութեան և թէ պարտուց վճարման տեղեկագրին համեմատ գործադրուի ։

Թ. Մայրաքաղաքիս Թաղական խորհրդոց հասոյթը հասկնալու և իրենց դպրոցներուն ամսական տուելիք գումարներն որոշելու համար յանձնաժողով մ՚ալ կազմուեցաւ, որոյ անդամ որոշուեցան Քաղաքական ժողովէն մէկ քանի անձ, Տնտեսական խորհուրդէն մէկ անձ և Ուսումնական խորհրդոյ դիւանը, որ ամէն Թաղական խորհրդոյ տարեկան հասոյթն ստուգելով և դպրոցին տեղեկութիւն ընելով՝ թէ Եկեղեցին դպրոցին վճարելիք ամսական գումարը և թէ ուսմանց յայտագիրն որոշեն ։

Այս Ուսումնական խորհրդոյ այն ամէն առաջարկութիւններն՝ որ գործադրելի կրնային ըլլալ ։ Վարչութիւնս նկատողութեան առնելով յարմար որոշումներ տուած է ի գործադրութիւն։

Իսկ դաստիարակութեան համար պիւտճէին մէջ աւելի գումար մը սահմանելու կարեւորութիւնը հասկցած և պէտքն զգացած է, բայց պարտաւորուած է սպասելու թէ Նոր կանոնադրութեան համեմատ ազգային ընդհանուր տուրքն ո՞րչափի պիտի կարենայ հասնիլ ։

## Զ · ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ ԵԼԵՒՄՏԻՑ ԵՒ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Ազգային հաստատութեանց Տնտեսական և Ելմտական վիճակը կարեւորագոյն և էական խնդիր մ՚ըլլալով Վարչութիւնս իւր պաշտօնավարութեան սկիզբէն Տնտեսական խորհրդոյ, Ելեւմտից և Հիւանդանոցի Հոգաբարձութեանց առաջարկութիւնները նկատողութեան առնելով՝ անոնցմէ գործադրութիւններն կարելի և կարեւոր եղածներն որոշեց, որք են՝

### Ա · Ազգային կալուածոց ապահովութիւնք

Կառավարութեան կողմէն բոլոր անշարժ ստացուածներն արձանագրուելու առթիւ ազգային կալուածներն ապահովութեան տակ դընելու համար Վարչութիւնը յատուկ կալուածական մասնաժողովի մը ձեռամբ մէկ կողմէն ազգային կալուածոց կալուածագրերը Պատրիարքարան բերելով զանոնք արձանագրել տուաւ դիւանատան մէջ. և միւս կողմէն կալուածներն արձանագրող արքունի պաշտօնէից ձեռօք իրենց տումարներուն մէջ ազգային կալուած ըլլալը նշանակել տուաւ, ինչպէս նաև Տէֆթէրխանէի տումարներուն լուսանցքին մէջ ։ Որով ազգային կալուածները թէ Պատրիարքարանի մէջ արձանագրուեցան և թէ կառավարութեան տումարներուն մէջ արձանագրուելով՝ այլեւայլ կորստեան վտանգներէ ապահովուեցան ։

### Բ · Գաւառաց մէջ Ազգային կալուածոց Արձանագրութիւնք

Տնտեսական խորհրդոյ առաջարկութեանը համեմատ գաւառաց մէջ ազգային կալուածոց սէնէտները գաւառային Վարչութիւններէն արձանագրուելով անոնց օրինակը Կեդրոնական Վարչութեան տումարներուն մէջ ալ արձանագրուելու որոշում եղաւ ։

### Գ · Պատրիարքարանի հին պարտուց վճարումը ։

Մէկ կողմէ Պատրիարքարանի հին պարտքըն՝ շատ տարիներէ ի վեր ազգին բեռ մ՚եղած ըլլալով և միւս կողմէ Կեդրոնական Սընտուկին հասոյթն իւր ծախքին չբաւելով յոյս չը կար սնտուկին սովորական հասոյթովն այս պարտքը վճարելու ։

1871 ի Վարչութեան որոշմամբն Նախորդ Պատրիարք Ամեն · Խրիմեան Սրբազան ազգային հանգանակութեան դիմելով կարող եղած էր մէկ մասը վճարելու, ինչպէս որ նոյն հանգանակութեան և անով վճարուած պարտուց գործողութեանց արդիւնքն երկու տեղեկագրերով արդէն հրատարակուած է ժամանակին ։ Իսկ Ներկայ Վարչութեանս օրով երկու բարերար ազգայինք՝ Բարձր · Աբրահամ փաշա Երամեան և Վսեմ · Սարգիս Պէյ Պալեան, յիշատակաց արժանի նուէր մ՚ընելով Ազգն իւր հին պարտքէն բոլորովին ազատեցին, որոց հետ նաև Վարչութիւնս կարող եղաւ Նորին Վեհափառ Կայսրութեան կամացը համաձայն Պէշիկթաշի ազգային գերեզմանատունը կարգադրելու, Ամենապատիւ Սրբազան Պատրիարքին ընտրութեան Բ · Դռնէն վաւերացման ծախքը հոգալու, Պատրիարքարանը և իւր կարասիքը նորոգելու ։ Երամեան Բարձրապատիւ Աբրահամ փաշա 3000 ոսկի և Պալեան Վսեմաշուք Սարգիս պէյ 1500 ոսկի, ընդամենը 4500 ոսկի նուիրեցին, որոց հաշիւը հոս կը դնենք ։

## ՄՈՒՏՔ

| | | |
|---|---|---|
| Նուէր. Բարձր. Իբրահիմ Աբրահամ Փաշայէ Լրյ. Օսմ. . . . | 3000 | |
| Վսեմ. Պալեան Սարգիս Պէյէ Լրյ. Օսմ. . . . . | 1500 | |
| | | 4500 |
| | | 4500 |

## ԵԼՔ

| | | |
|---|---|---|
| Վճարեալ Կեդր. Մնասեկի հին պարտատերաց Լրյ. Օսմ. . . . . . . . | 2586 | |
| Պատրիարքարանի նորոգութեան ծախուց և կարասեաց համար . . . . . | 415 | |
| Ս. Պատրիարքի Գահակալութեան առթիւ Դրան և ծախք զանազանք . . . | 615 | |
| Պէշիկթաշի գերեզմանատան ծախուց համար . . . . . . . . . . | 284 3/5 | |
| Ս. Պատրիարքի գործածութեան համար կառք մը իւր կազմուածքով . | 217 | |
| Յանձնեալ Կեդր. Մնասեկին . . . . | 386 2/5 | |
| | | 4500 |

Ա. 500 ղրուշ որոշեալ, և աւելորդն իբրև նուէր.
Բ. 300 »
Գ. 200 »
Դ. 150 »
Ե. 100 »
Զ. 75 »
Է. 50 »
Ը. 25 »

3. Տրոց բաշխումը կատարելու համար ամեն Թաղական խորհուրդ իւր մէջէն և դրսէն այս մասին յարմարութիւն ունեցող անձինքներէ բաղկացեալ Յանձնաժողով մը կը կազմէ, որն որ կը հրաւիրէ նոյն Թաղին մէջ բնակութիւն հաստատող և տուրք տալու կարողութիւն ունեցող ազգայինները և հետևելին համաձայնութեամբ կ'որոշէ տալու տուրքին որքանութիւնը, զորն որ պիտի հաստատէ նոյն ազգայինը իւր ստորագրութեամբը:

Յիշեալ Յանձնաժողովը 15 օր պայմանաժամ կուտայ իւրաքանչիւր ազգայնոց 'ի Խորհրդարան ներկայանալու համար, և պայմանաժամուն լրանալէն ետքը չ'ներկայացողներուն իրենց աստիճանին համեմատ վճարելու տուրքին քանակութիւնը Յանձնաժողովը կորոշէ և մասնաւոր նամակաւ իրեն կը հաղորդէ, որ եթէ դիտողութիւն մ'ունի, 15 օրուան մէջ հաղորդէ Յանձնաժողովին, այս պայմանաժամը լրանալէն ետքը, եղած դիտողութիւնները չ'պիտի ընդունուին այն տարուան համար:

5. Տարեկան տուրքն երկու անգամով կը վճարուի, վեց ամիսն անգամ մը. ուզողն ազատ է անմիջապէս մէկ անգամէն ալ վճարել ամբողջ տարեկանը:

6. Քաղաքական գործոյ մը համար Պատրիարքարան կամ Թաղական խորհուրդներուն դիմող ազգայինէ մը տարին լրացած և երեք անգամ ուղղուած բայց տակաւին անվճար ձգուած ու դիզուած տուրքերը պիտի առնուին, և ետքը նոյն անձին գործը պիտի տեսնուի:

7. Տուրքին տրուած ըլլալը պիտի հաստատուի Պատրիարքարանի սնտուկի տոմարաց արձանագրութենէն, և վճարողին քովը գտնուած ընկալագրէն, որ ստորագրեալ պիտի ըլլայ Կեդրոնական սնտուկին գանձապահէն և հաւաքիչէն եթէ հաւաքչի ձեռօք է առնուած, և Պատրիարքարանի կնքով վաւերացեալ:

8. Պատրիարքարանի ազգահամարի գրասենեակը պարտաւորեալ է ըստ Սահմանադրութեան ամէն տարի Թաղական խորհուրդներէն ստուգել իրենց Թաղին մէջ նոր եկողները և ուրկէ գալերնին, գացողները և ուր երթալնին, նոր հասու եղողները, իրենց աստիճանին փոփոխութիւն ունեցողները և վերջապէս վախճանողները և ծնունդները:

9. Տուրքը Վարչութեան կողմէ ընտրեալ և վարձատրեալ յատուկ հաւաքիչներու ձեռօք պիտի հաւաքուի. իսկ երբ ուղղակի Պատրիարքարանի մէջ առնուի, որ և է ծախք տեղի պիտի չունենայ:

10. Զանազան տեղեր պանդխտող ազգայինը ընտանեօք բնակութիւն հաստատած տեղին ազգային սնտուկին կը վճարէ իւր տարեկան տուրքը:

11. Գաւառներու կողմէն Կեդրոնական սնտուկին տրուելու տուրքը մինչև որ Ազգային ժողովը սահմանէ, գաւառները հինը պիտի շարունակեն վճարել:

## ՀՐԱՀԱՆԳ

## ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՍՆՏՈՒԿԻ ՏՐՈՑ



### ԲԱՇԽՈՒՄՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏՐՈՑ

1°. Կեդրոնական. Ընդհանուր տրոց Կանոնագրութեան 3րդ յօդուածին համեմատ տրոց բաշխումը Թաղական խորհրդոց միջոցաւ կը կատարուի:

Ամեն Թաղական խորհուրդ իւր մէջէն և դրսէն այս մասին յարմարութիւն ունեցող անձինքներէ բաղկացեալ Յանձնաժողով մը կը կազմէ, որոյ կը նախագահէ Եկեղեցւոյն Քարոզիչը և 'ի բացակայութեան նորա Աւագերէցը կամ Աթոռակալը:

Իւր հաղորդութիւնը անմիջապէս կը ծանուցանէ Կեդրոնական Վարչութեան 'ի տեղեկութիւն ։

2º. Սոյն Յանձնաժողովը նախ կը պատրաստէ ցուցակ մը, ուր պիտի գտնուին այն ամեն Ազգայնոց անունները՝ որք չափահաս և վաստակի ու չահու տէր ըլլալով իրենց բնակութիւնը նոյն Թաղին մէջ հաստատած են ։

Այս ցուցակը ութ սիւնակներ պիտի ունենայ .

Ա. Ին մէջ պիտի գրուի տրոց մասնակցողին հականունը այբուբենի կարգաւ,

Բ. Ին մէջ պիտի գրուի անունը

Գ. Ին մէջ պիտի գրուի բնակութեան փողոցը տանը թիւը .

Դ. Ին մէջ պիտի գրուի արուեստը .

Ե. Ին մէջ պիտի գրուի գործին տեղը, փողոցը և թիւը .

Զ. Ին մէջ պիտի գրուի տուրքի սակարկանքը .

Է. Ին մէջ պիտի գրուի ստորագրութիւնը

Ը. Ին մէջ պիտի գրուի դիտողութիւն կամ ծանօթութիւն եթէ կայ ։

3º. Յանձնաժողովը այս ցուցակը պատրաստելէն անմիջապէս ետքը տրոց մասնակցողները նամակաւ կը հրաւիրէ շաբթու մէջ որոշեալ օրեր 'ի Թաղական խորհրդարան մինչև 15 օր, հրաւիրակ նամակին հետ ղրկելով տրոց կանոնագրութեան մէկ օրինակը ։

Հրաւէրին մէջ նշանակեալ ըլլալու է որ՝ Թաղական խորհրդարանը անձամբ չներկայացողը, նամակաւ իմացնելու է իւր սակարկանքը ։

Անձամբ 'ի ներկայացողին հետ համաձայնութեամբ սակարկանքը կորոշէ Յանձնաժողովը, գրելով իր անուան դիմացի սիւնակին մէջ սակարկանքը և ստորագրութեան սիւնակին մէջ ալ իւր ստորագրութիւնը ։ Եթէ տուրքի մասնակցող մը իր սակարկանքը նամակաւ իմացուցած է, և Յանձնաժողովին կողմէն նոյնին իր կարողութեան համեմատ ըլլալը ստուգուած է, ստորագրութեան տեղը « նամակաւ » բառը կը գրուի ։

4º. Այս առաջին հրաւէրին մինչև 15 օր անձամբ կամ նամակաւ չի պատասխանողներուն կամ նամակաւ իրենց կարողութենէն վար սակարկան նշանակողներուն երկրորդ հրաւէր մը և ընելու է գրաւոր, ուր նշանակուած ըլլալու է որ՝

Ա. Ընդհանուր տրոց ցանկին մէջ իրենց սակարկանքը որոշելու համար այս անգամ անպատճառ ներկայանալու են 'ի Թաղական խորհրդարան ։

Բ. Կամ նամակաւ իմացնելու են իրենց սակարկանքը .

Գ. Եթէ՝ ոչ անձամբ ներկայանան և ոչ նամակաւ պատասխանեն, իրենց սակարկանքին համար պիտի նշանակուի Ընդհանուր տրոց ցանկին մէջ . . . . ղրուշ ըստ կանոնագրութեան ։

5º. Յանձնաժողովք ջանալու են այս հրաւիրագիրը մասնակցողաց ձեռքն հասցնել ժամանակին ։ Ուստի նամակները ցրուողները հասցէին տիրոջմէն կամ նամակը յանձնուած տեղէն ստորագրութիւն առնելու են ։

6º. Թաղական խորհուրդներին ամեն տարի տրոց Թաղական Յանձնաժողովներ կ'ընտրեն և անոնց պաշտօնը յունվար 1 էն մինչև ապրիլ 1 կը տևէ ընդ ամենը 3 ամիս ։

7º. Այս Յանձնաժողովները իրենց թաղին վերաբերեալ տրոց ցուցակները կը սրբագրեն, նշանակելով սակարկանաց փոփոխութիւնքը պակասները և ուրիշ թաղ գնացողները, ընտանութեան, գործի տեղերու վերաբերեալ փոփոխութիւնքը և աւելցնելով նոր եկողները և նորէն տուրքի մասնակցողները ։

8º. Թաղին մէջ նոր բնակութիւն հաստատողները և նորէն տուրքի մասնակցողները, ինչպէս նաև անոնք՝ որոց սակարկանքը դէպ 'ի վեր փոխուիլ պէտք է, 3րդ, 4րդ և 5րդ յօդուածներուն համեմատ 'ի Թաղական խորհրդարան կը հրաւիրուին և ըստ այնմ կը կարգադրուի ցուցակը ։

9º. Անոնք որ սակարկանքնին դէպ 'ի վար փոխել կուզեն, պէտք է որ իրենց ներկայանան տրոց Յանձնաժողովին և սակարկանքնին փոխել տան ։

10º. Յանձնաժողովը այս սրբագրեալ ցուցակէն երկու օրինակ կը պատրաստէ, մէկը առ Քաղաքական ժողովն կը ղրկէ իր անդամոց բո-

ըորին տարագրութեամբը, ուր նաև պիտի գըտնուի Թաղական խորհրդոյ Ատենապետին և Ատենադպրին ստորագրութիւնքը և Թաղական խորհրդոյ կնիքն ալ, և միւսը Թաղական խորհրդարանը կը պահուի։

Այս ցուցակը առ առաւելն մինչև ամսին 1 Ազգային Վարչութեան գրկուած ըլլալու է։

Գ.

### ՀԱՒԱՔՈՒՄՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏՐՈՑ

11º. Տնտեսական խորհուրդը և Ելմտական Հոգաբարձութիւնը միանալով Կեդրոնական տրոց համար երաշխաւորեալ պաշտօնեայ մը կը սահմանեն, որ պատասխանատու պիտի ըլլայ Ընդհանուր տրոց հաւաքմանը, և վարձք պիտի ընդունի իր ձեռօք հաւաքած դրամներուն վրայ 15 առ 100։

12º. Ելմտական Հոգաբարձութիւնը Թաղական խորհուրդներէն եկած ցուցակաց համաձայն իւրաքանչիւր աստիճանի թիւերը կ'որոշէ, և այս թիւերուն չափովը իւրաքանչիւր աստիճանի համար ընկալագիրներ կը պատրաստէ։

13º. Իւրաքանչիւր ընկալագիր երկուքի բաժնուած ըլլալու է, երկու վեցամսեայ վճարման համար. այս ընկալագիրները բանաւոր և թուագրեալ և Ելմտական Հոգաբարձութեան կնիքն կնքեալ և ստորագրեալ ըլլալու են։

14º. Թաղական խորհուրդներէն եկած ցուցակներէն օրինակելով Ելմտական Հոգաբարձութեան կամ Համարակալին քով ուրիշ երկու ցուցակներ գտնուելու են, մէկը մականուանց այբուբենից կարգաւը Թաղական խորհուրդներէն եկած ցուցակներուն ձեւովը, և միւսը իւրաքանչիւր աստիճանի համար զատ զատ տեղեր բանալով, նոյնպէս այս ալ մականուանց այբուբենից կարգաւ։

15º. Ելմտական Հոգաբարձութիւնը այս պատրաստեալ ընկալագիրներէն տրոց պաշտօնէին կը յանձնէ մէկառ եղածին չափ և անկէ անդորրագիր մը կ'առնէ։ Նմանապէս երբ տրոց պաշտօնեայն հաւաքեալ դրամները կը յանձնէ, կընդունի Համարակալէն Ելմտականին կնքովը կնքեալ անդորրագիր մը։ Եւ ժամանակ ժամանակ կողմնակի տրուած անդորրագիրներուն համեմատ հաշիւը կը գոցուի։

16º. Տրոց պաշտօնեայն իր կողմէն կարգեալ երաշխաւորեալ հաւաքիչներու ձեռամբ ալ հաւաքումները կրնայ կատարել, պահելով իր պատասխանատուութեան առկ։

• ❧ •

Զ. Խրիմեան Սրբազանին նուիրական խնդիրները։

Նախորդ Պատրիարք Ամեն. Խրիմեան Սրբազան Առաջնորդութենէն վրայ առաջուց 'ի վեր սահմանեալ մուրհաթաներն իւր ձեռամբ հաւաքելուն համար կնճռոտ հաշիւներու ենթակայ եղած էր, որով ազգային մնացկին պարտական կը թուէր։ Ահա այս մասին Ելևմտից Հոգաբարձութեան առ Վարչութիւնս տուած հաշիւը։

Խրիմեան Սրբազան 1869 նոյեմբեր 9 ին Պատրիարքական աթոռը բարձրացաւ. Ելևմտից Հոգաբարձութիւնը կըսէ որ այս թուականէն մինչև 1871 մայիս 1, որ 18 ամիս կընէ, 1871ի Քաղաքական ժողովոյ որոշմամբ այն ատենուան Տնտեսական խորհուրդը հաշիւը գոցած և վերջացուցած է նոյն իսկ Խրիմեան Սրբազանին հաճութեամբն ու հարցաքննութեամբը։ 1871 մայիս 1 էն մինչև 1873 հոկտեմբերի վերջն որ է 30 ամսուան միջոց, Նորին Սրբազնութեան հաշիւն հետևեալ կերպով կը ներկայացնէ Ելևմտից Հոգաբարձութիւնը.

# ՀԱՇԻՒ ԽՐԻՄԵԱՆ ՄՐՑԱՁԱՆԻ

1871 մայիս 1 էն մինչև 1873 հոկտեմբերի 31։

## ՊԱՐՏՔ

| | |
|---|---|
| 30 ամսուան մէջ առած դրամը | 384230 |
| Մշոյ Ս. Կարապետի վանուց անվճար մնացեալ մուքաթաները | 34600 |
| | 418830 |

## ՊԱՀԱՆՋՔ

| | |
|---|---|
| Իւր 30 ամսականը 10000 էն | 300000 |
| Միքայէլ Ճիզմէճեանին տուածը Կեդր. Սնտուկի հաշուոյն | 360 |
| | 300360 |
| Մնացեալ պարտքը | 118470 |
| | 418830 |

Խրիմեան Արքազան այս հաշուոյն դէմ դիտողութիւններ ընելով կըսէ որ նախորդ 18 ամսուան մէջ ամսական 5000 ական ղուրուշ բռնած է, պէտք է 10000 ականէն բռնել. վասն զի Պատրիարք մը չէ թէ 5000 ղուրուշ ամսականով՝ այլ 10000 ղուրուշ ամսականով ալ չը կրնար ապրիլ։ Նաև Մշոյ Վանուց մուքաթայի տարեկանը բնաւ չընդունիր ըսելով թէ Վանքին պարտքն է այն։ Գործակալ, Պատրիարքութեան եկած ատենը Մուշէն մինչև Կ. Պոլիս 16000 ղուրուշ ծախք ըրած ըլլալով՝ Կեդրոնական սնտուկէն զայն կը պահանջէ, և ուրիշ առարկութիւններ ալ ընելով ազգ. սնտուկէն պահանջ ունենալը կը յայտնէր։

Վարչութիւնս այս կնճռոտ հաշուոյն կարգադրութիւնն իրաւարարաց միջոցաւ թէև կը պատրաստուէր կարգադրել. սակայն գործն ամենայն արդարութեամբ կարենալ գլուխ հանելու համար արժան զատեց պահ մ'ալ սպասել և պէտք եղած տեղեկութիւնները հաւաքել։

Է. ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆԸ տեղեկագրով մը 30 հազար բաժինի վրայ ամսական 1 ղուրուշ առնելով հանգանակութիւն մը բանալ կառաջարկէր, որով Հիւանդանոցի բացը գոցել կը խոստանար։

Վարչութիւնս այս առաջարկութիւնը նըկատողութեան առնելով նոյն Հոգաբարձութեան ատենապետ Էֆէնտիին խորհրդակցութեամբ Հիւանդանոցի ծախուց և մուտից Պիւտճէն սահմանեց հետևեալ կերպով.

## ԱԶԳԱՅԻՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ԱՄՍԱԿԱՆ ՊԻՒՏՃԷՆ 1874 — 75 Ի ՀԱՄԱՐ

### ՄՈՒՏՔ

| | |
|---|---|
| Կալուածոց հասոյթ . . . . . . . | 7500 |
| Պատարագելոյ թոշակք . . . . . . | 4000 |
| Մոմէի . . . . . . . . . | 3030 |
| Պէյլիկի մի 900 հոխայ . . . . . | 4500 |
| » հաց 6000 » . . . . . . | 12000 |
| Նշանտուքի կէս հասոյթ . . . . | 5000 |
| Անցագրատան կէս հասոյթ . . . . | 5000 |
| Գանձանակ, եկեղեցիք, ողորմութիւն | 3500 |
| | 44530 |
| Ամսական բացը . . . . . . | 7220 |
| | 51750 |

### ԵԼՔ

| | |
|---|---|
| Ուտեստ 480 անձանց համար, օրը 2 ղրուշէն . . . . . | 27000 |
| Հանդերձազին ամսական . . . . | 5000 |
| Կարօտեալ համար ամսական ծախք | 1500 |
| Դեղօրէից » » » | 1250 |
| Պաշտօնէից ամսականք . . . . | 10000 |
| Կալուածական նորոգութիւնք . . | 2000 |
| Այլևայլ ծախքեր . . . . . . , | 4000 |
| Դպրոցի ծախք . . . . . . , | 1000 |
| | 51750 |

Այս 7220 ղրուշի բացը գոցելու համար Հոգաբարձութեան առաջարկած 1 ղրուշ բաժնի վրայ ամսական հանգանակութեան սկզբունքն ընդունեց ժողովս ։

Հիւանդանոցի կալուածներէն Եէտի Գուլէի ղուրբը գտնուած հիւանդանոցին կից ընդարձակ մեկ պարտէզը և անոր յարակից ինձիրլիք ըլլուած ընդարձակ գետինը, որոց առաջինոյն համար 500 ղրուշ և վերջինոյն համար 150 ղրուշ գալըմէ գալով տարեկան մուքթի վարձք կառնուի եղեր մինչև հիմայ, այս անգամ Հիւանդանոցի Հոգաբարձութիւնը քննութեամբ և հաստատութեամբ ստուգած է որ նոյն գետինները թէ մուլք և թէ կէտիք Հիւանդանոցին սեփականութիւնն են և տարեկան 1800 ղրուշ առնուազն վարձք կը բերեն, և Հոգաբարձութիւնը յաջողեր է ինձիրլիկը Հիւանդանոցին յանձնելու մինչև յառաջիկայ գալըմ' վարձակալին հետ հարկաւոր եղած պայմանները ընելով ։ Իսկ պարտէզին վարձակալն ամենայն զօրութեամբ կը մերժէ եղեր որ պարտէզին կէտիքն իւրն է, խարճական աճէմի մը զօրութեամբ' որ ամենևին այն պարտէզին հետ վերաբերութիւն չունի ։ Ուստի Հոգաբարձութիւնը նկատելով որ յիշեալ պարտէզը տասնեակ 1250 թուականէն ի վեր տարեկան 500 ղրուշով վարձու տրուած է, մինչդեռ առնուազն տարեկան 1800 ղրուշ վարձ կրնայ բերել, և նկատելով որ 1872 թուականին վարձակալը 127000 ղրուշ առեր է Երկաթուղոյ ընկերութենէն, հարկ կտեսնէ դատ բանալ յիշեալ վարձակալին դէմ ։

Ժողովս այս կարևոր խնդիրը պատշաճ դատեց ներկայ Հոգաբարձութեան յանձնել որ ուշադրութեան առնելով արժանը տնօրինէ ։

Ը. Զանազան թաղական խորհուրդներէն եկած խնդրագրերուն համեմատ ազգային կալուածոց վրայ կառավարութեան կողմէն դրուած տուրքերը բառնալու համար արժան դատուեցաւ Ցուցակ Պատրիարքարանին հետ խորհրդակցելով հարկ եղածը տնօրինել ։

### 3°. ՎԱՆՕՐԷԻՑ ԽՈՐՀՈՒՐԴ

Վանօրէից խորհուրդը վանքերէն շատերուն հետ յարաբերութիւն հաստատելով հետզհետէ զանոնք սահմանադրութեան սկզբանց համաձայն բարեկարգելու, անոնց մէջ տօրէն խորհուրդներ կազմելու և վարժարաններ հաստատելու ջանացիր եղած է. բայց տակաւին կան վանքեր որ մինչև այսօր Վարչութեան գրերն անպատասխանի թողած են ։

## Զ.

## ՏԵՂԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

### 1 · Ժողովրդական հանրագրութիւնք

1873 Հոկտեմբեր 17 Թուականաւ տարագրեալ նոյն օրինակ քանի մը հանրագրութիւններ եօթն պատգամաւորաց ձեռօք ներկայացուելով, Ժողովս գիտնալ որ անոնց մէջ պարունակուածներէն Խրիմեան Սրբազանին և Նախորդ Քաղաքական Ժողովին հրաժարմանց կէտերն արդէն կատարուած իրողութիւններ են, և միայնակ կէտերն ալ Ազգային Ժողովոյ տնօրէնութեանը կը պատկանին։ Ուստի նոյն հանրագրութիւնները զանոնք ներկայացնող պատգամաւորաց դարձնելով յայտարարեց որ երբ լուծեալ և կատարուած իրողութիւնները դուրս հանելով միայն խնդրոց համար զատ հանրագրութիւն մը ներկայացուի, այն ատեն Ժողովս ընդունելով զայն Ազգային Ժողովոյ տնօրէնութեանը կրնայ յանձնել, վասն զի նորին նման խնդրոց վըրայ տնօրէնութիւն ընել իր ձեռնհասութենէն վեր է։

### 2 · Նոր Թաղական խորհրդոց ընտրութիւնք

Թաղական խորհուրդներէն մէկ քանիին հըրաժարման վրայ անոնց տեղ նորեր ընտրուելով, վաւերացման կոնդակները տրուեցան, ինչպէս են Գումգաբուի Մայր եկեղեցւոյ համար։

Եէնի Գաբուի
Գուզկունճուքի
Քարակէօմրիւկի
Պօյաճի Գիւղի
Թօբգաբուի
Գալըմ Փաշայի
Էյիւպի
Պէշիկթաշի

Խասգիւղի Թաղական խորհրդոյ մասնակի ընտրութեան համար։

Այսպէս զատ նաև Գատը Գիւղի և Գում Գաբուի դրսի Թաղական խորհուրդներն ալ հրաժարելով անոնց տեղ առժամանակեայ Թաղական խորհուրդներ դրուեցան։

### 3 · Գատը Գիւղի Թաղական խնդիրը

Նախորդ Քաղաքական Ժողովին օրով Գատը Գիւղի Թաղական խորհրդոյ անդամոց մէջ անհամաձայնութիւն ծագելով վէճի առիթ կը գտնուէր նոյն խորհուրդը։ Վարչութիւնս փորձ մը ըներէն ետքը բոլորովին լուծեց նոյն Թաղական խորհուրդը և անոր տեղ առժամանակեայ Թաղական խորհուրդ մը հաստատեց։ Այս առժամանակեայ խորհուրդը նախորդ խորհրդոյ օրով նորոգ հաստատեալ Թաղին երկսեռ վարժարանաց չվճարուած հաշիւն առաւ, պարտքերը վճարեց, դպրոցներուն պակասը լրացուց և դպրոցական կարասիները պատրաստելով դըպրոցները բացաւ։

Գատը Գիւղի Թաղական խորհրդարանին սնտուկը պահուած շըմէնտիֆէրներու թղթերը, որ ընկերութեան մը կը վերաբերէր և դեռ պահուած էր հոն, առժամանակեայ Թաղական խորհրդոյն միջոցաւ նոյն ընկերութեան յանձնել տրուեցաւ։

### 4 · Զանազան տեղական խնդիրներ

Վերոյիշեալ տեղական խնդիրներէն զատ 20 էն աւելի ալ մանր տեղական խնդրոց կարգադրութիւնն եղած է Ժողովիս ներկայ շրջանին մէջ, որք հանրական կարևորութիւն չունենալով մանրամասնաբար նշանակել հարկ չդատուեր։

## Է.

## ԱՆՀԱՏԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Ժողովս իւր պաշտօնավարութեան առաջին տարուան շրջանի միջոցին 28 անհատական խնդիրներով զբաղած է, որոց ամէնն ալ լուծուած են, սակայն հարկ չը տեսնէր անոնց մանրամասնութիւնը նշանակելով ստուարացնել ներկայ համարատուութիւնը։

# ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

### ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

### 1875 — 76 ԱՄԻ

### ԱՌ

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՆ

### Ա.

### ՆԱԽԱԲԱՆ

Քաղաքական Ժողովս՝ իւր պաշտօնավարութեան 74 - 75 ամի շրջանն աւարտելէն ետև, իւր միամեայ համարատուութեան տեղեկագիրը մատուցանելու առթիւ, որչափ Ազգային Ժողովոյդ յայտարարել թէ Քաղ. Ժողովս իւր պաշտօնավարութեան շրջանը 1875 Մայիս 1 ին լրացած կ'համարի և կ'խնդրէ Ազգային Ժողովէն՝ իւր յաջորդին ընտրութիւնը փութացնել, որպէս զի Վարչական գործերն անտես չմնան: Առ այս Ազգային Ժողովդ իւր Մայր Դիւանին միջոցաւ պատասխանելով թէ Ազգ. Ժողովը Քաղ. Ժողովոյ պաշտօնաժամը լրացած չհամարիր և հրաժարականը չընդունիր, կը հրաւիրէր զՔաղ. Ժողովս իւր պաշտօնը շարունակել մինչև 1876 Մայիս 1:

Հետևաբար՝ Քաղ. Ժողովս Ազգային Ժողովոյդ այս հրաւէրն ընդունելով և իւր դիւանը նորոգելով՝ մինչև ցարդ պաշտօնաժամ իւր պաշտօնը շարունակեց, և այսօր 1876 Մայիս 1 իւր պաշտօնաժամը լրացած սեպելով ըստ օրինի իւր հրաժարականը և միանգամայն առաջին միամեայ համարատուութեան կցելով նաև այն երկրորդ և վերջին ամեկան համարատուութիւնը կը մատուցանէ Ազգային Ժողովոյդ:

### Բ.

### ՏԵՍՈՒԻՉ ԽՈՐՀՐԴՈՑ ԵՒ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆՑ ՎԵՐԱԿԱԶՄՈՒԹԻՒՆԸ

Ժողովս՝ Տնտես. խորհրդոյ և Հոգաբարձութեանց անդամներէն Ուսումնադրական տարեգլխուն՝ այսինքն 1875 Մայիս 1 ին՝ պայմանաժամին լրացածներուն և վիճակաւ փոփոխելոցներուն տեղ նոր ընտրութիւն կատարելով, վերակազմեց հետևեալ խորհուրդներն ու Հոգաբարձութիւնները.

Ուսումնական Խորհուրդ
Վանօրէից »
Տնտեսական »
Ելևմտից Հոգաբարձութիւն.
Հիւանդանոցի »

Իսկ Դատաստանական խորհրդոյ և Կտակաց Հոգաբարձութեան վերակազմութիւնը Խառըն Ժողովոյ վերապահեց:

ընդունելի գտնէր նոյն աւքաֆատուն, և յատուկ թագրիրով մը բողոքեր և բարձումը խնդրեր ։ Միանգամայն ուրիշ թագրիրով մը նոյն աւքաֆատունին պատճառ համարուած փոփոխի վարժարանին պարտքն ազգին անընդունելի ըլլալն ալ ծանոյց Բ․ դրան ։

## Ց․

### ԲԵՐԱՅԻ ԿԱԼՈՒԱԾԱԿԱՆ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ա․ Հանգուցեալ Տատեան Պօղոս Պէյին վրայ գտնուած Բերայի ազգային կալուածներն եկեղեցւոյ վրայ դարձնելու առաջարկութիւնը նկատողութեան առնլով Ժողովս նոյն Հոգաբարձութեան յանձնարարեց Հանգուցելոյն ժառանգորդաց թաքրիրներն առնելու համար պէտք եղած միջոցներն ի գործ դնել ։

Բ․ Բերայի կալուածոց մասունքին Անգղիոյ դեսպանատան նախորդ առաջին թարգման Միսաք Բիզանդի պարտքն եղած գումարին և տոկոսներուն հաշիւը տեսնելով կալուածական Հոգաբարձութիւնը նոր պարտագիր մը ստորագրած և իր տեղեկագիրը ղրկած էր Սրբազան Պատրիարք Հօր վաւերացման համար ։ Ժողովս նոյն տեղեկագրին համաձայն յիշեալ պարտագրին մէջ Հոգաբարձութեան անդամոց ստորագրութիւններն ու Հոգաբարձութեան պաշտօնական կնիքը վաւերացնել արտօնեց ։

## Ձ․

### ԲԵՐԱՅԻ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ ՀԱՄԱՐ ԹԱՂԱՅԻՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՈՑ ԿԱԶՄՈՒԹԻՒՆ

Բերայի Թաղ․ Խորհուրդը Թաղին վարժարանաց բարեկարգութեան և անոր անմիջական յարակցութիւն ունեցող ինչ ինչ խնդիրներն ի գլուխ հանելու պաշտօնով Թաղին պատուաւորներէն 7 անձինքէ Թաղային յանձնաժողով մը ընտրած ըլլալը յայտնելով՝ հաստատութիւնը կը խնդրէր ։ Ժողովս Ուսումն․ Խորհրդոյ կարծիքն առնելէ ետև նկատողութեան առնլով նաև այն բացառիկ վիճակն, որու մէջ գտնուած է Բերայի Թաղն իւր համեմատական հրկիզութենէն ի վեր և որ պարտաւորուած է գլխաւորապէս Բերայի եկեղեցւոյ պարտուց կարգադրութեան խնդիրն և կալուածոց տեսչութիւնը Թաղ․ Խորհրդէն զատելով անկէ անկախ յատուկ Հոգաբարձութեան մը յանձնելու, ձգելով Թաղ․ Խորհրդոյ միայն եկեղեցւոյ ներքին հասոյթներով թէ եկեղեցին և թէ Թաղին դպրոցները մատակարարել, ընդունեց և հաստատեց Թաղ․ Խորհրդէն առաջարկեալ յանձնաժողովը Օժանդակ յանձնաժողով անունով ։ Ժողովս Բերայի Թաղ․ Խորհրդոյ և իր օժանդակ յանձնաժողովոյն առաջարկութեան վրայ նաև Ս․ Յարութիւն Եկեղեցւոյ յարակից կալուածները պարպելու հաւանութիւն և որոշում տուաւ․ որպէս զի նոյն կալուածները նորոգուելով՝ Թաղին դպրոցաց եկամուտ բերելու ծառայեն, այն պայմանաւ որ Թաղ․ Խորհուրդը յիշեալ կալուածոց մէջ պատսպարեալներէն չքաւոր և աղքատ եղողներուն բնակարանի համար մէկ մէկ փոքր վճարէ ։

## Ճ․

### ՂԱԼԱԹԻՈՑ ԿԱԼՈՒԱԾԱԿԱՆ ՇԻՆՈՒԹԵԱՆՑ ԽՆԴԻՐԸ

Ղալաթիոյ հրկիզեալ ազգային կալուածոց շինութեան խնդրոյն վրայօք Ղալաթիոյ կալուածական Հոգաբարձութեան և Տնտ․ Խորհրդոյ տեղեկագիրներն առնելէ ետև Ժողովս իր մէջէն յանձնաժողով մը կարգեց շինութեան յատակագիծը տեսնելու, մանրամասն քննութիւնները կալուածական Հոգաբարձութեան և ճարտարապետ Ազնաւուրեան Էֆէնտիին հետ ընելու, և անոնց ամենուն արդիւնքը Ժողովիս բերելէ ետև, շինութեան ձեռնարկութեան որոշում տալու համար ։ Այս նախապատրաստութիւնք կատարուելէ ետև․ Ժողովս Ներկայացեալ յատակագծին համեմատ և Ազնաւուրեան Էֆ․ ի ճարտարապետական պատասխանատուութեան տակ, բոլոր ծախքը 2200 ոսկին չանցնելու պայմանաւ շինութեան ձեռնարկութեան որոշում տուաւ, Վարչութենէն և Տնտ․ Խորհրդէն ալ մէյմէկ անդամ կարգելով, որպէս զի Ղալա-

թիոյ կալուածական Հոգաբարձութեան հետ միանալով հանեն նոյն շինութեան գործոց, և այսպէս ձեռնարկեալ շինութիւնք լրացան և հաշուեցոյցն ի վերջոյ ներկայացաւ Տեառ. Խորհրդոյ, որ գոհացուցիչ գտած էր զայն :

Այն ձեռնարկութիւնը յաջողութեամբ ՚ի գլուխ հանել ետև, Գալաթիոյ կալուածոց Հոգաբարձութիւնն այս անգամ՝ նոր շինութեանց ուրուագիծ մ'ալ ներկայացուց, որու համեմատ կառաջարկուէր այն նոր շէնքը հիմնել Գալաթիոյ Աւքբուլուր փողոցին մէջ եկեղեցւոյն յարակից 950 կանգուն տարածութեամբ գետնին վրայ, եռայարկ և քարաշէն, որուն գետնայարկը 7 ը մեծ ու փոքր մթերանոց պարունակէ, 210 ոսկի տարեկան եկամուտ բերող. և երկրորդ յարկն ունենայ Վարչութեան ժողովոց համար 3 ընդարձակ և 3 փոքր սենեակներ. նոյնպէս քարոզչի քահանայից և Թաղ. Խորհրդոյ համար սենեակներ և վարժարանի շէնքին կցուելու բանի մը դասարաններ : Իսկ երրորդ և վերին յարկն իր ամբողջ տարածութեամբը Ազգային Փողոցին համար խորհրդարան յատկանայ : Այն ուրուագծին համեմատ շինութիւնք կառուցանելու համար տուաւելն 3 հազար լիրայի ծախուց պէտք նշանակուած է, մէն մի կանգունին համար 3 լիրա հաշուելով, և 2000 լիրայի փոխառութեամբ %ին 12 տոկոսով, պակասը՝ շինութեան տեսն կալուածներէն հետզհետէ գոյացած արդիւնքով վճարելու պայմանաւ : Տնտես. Խորհուրդն այս շինութեան ուրուագիծըն և յարակից պայմանները քննելով տեսեր է որ թէ՛ նախորդ և թէ՛ առաջարկուած նոր շինութեան պատճառաւ Գալաթիոյ կալուածոց սնտուկին պարտքը 3000 օսմ. ոսկոյ պիտի յանգի և վճարելի տարեկան տոկոս պիտի ունենայ 450 ոսկի, 360 լիրա նախորդ և վերջին շինութեանց փոխառութիւններուն և 90 լիրա նախկին 1000 ոսկւոյ պարտուց համար. Իսկ փոխարէն կալուածոց սնտուկն ընդունելով 210 լիրա կառուցանելի 7 մթերանոցէն, 840 լիրա ևս արդէն կառուցեալ մեծ կալուածէն, ընդ ամենն 1050 լիրա, պիտի կարենայ հատուցանել այս գումարէն 450 լիրայի տոկոսաց գումարը, և աւելցած 600 լիրան տարուէ տարի մայր պարտուց գլխաւորին թեթեւցուցիւ. հատուցանելով՝ հինգ վեց տարէն այն պարտքն ամբողջապէս մաքրել ու բառնալ : Գալով վարժարանին ծախուց՝ կալուածական նորոգութեանց և այլոց, այս աղբիւրից պիտի յատկանան միւս կալուածոց տարեկան 400 ոսկւոյ հասոյթն և ընդ նմին եկեղեցւոյն վագֆոց տարեկան 300 ոսկւոյ արդիւնքն, ընդ ամենն 700 լիրա Օսմանեան :

Քաղաքս Տնտ. Խորհրդոյ հետ համաձայնօրէն՝ կալուածոց Հոգաբարձութեան այս նոր շինութեանց առաջարկն ու յատակագիծը՝ յարակից կարգադրութեանց հետ օգտակար և ընդունելի գտնելով, ձեռնարկելու համար իր հաւանութիւնը տուաւ, դարձեալ բառ առաջնոյն Վարչութենէն և Տնտ. Խորհրդէն տեսուչներ կարգելով, և որոշեց նաև կալուածական Հոգաբարձութեան առաջարկութեան համաձայն՝ որ Գալաթիոյ ի Թօփճուլար ճատտէ, ի Պայազիտ ի Աւքբուլուր փողոց նորոգ կառուցեալ ընդարձակ կալուածոց հասոյթն ամբողջապէս առանց որ և է բացառիկ աղբիւրից ծառայելու յատկանայ անխափան կալուածոց շինութեան պարտուց տոկոսին և գլխաւորին :

Յ.

ՍԱՄԱԹԻՈՅ ՀՐԿԻԶԵԱԼ Ս. ԳԷՈՐԳ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՇԻՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐ

Սամաթիոյ Թաղ. Խորհրդոյ կողմէ գրով և բանիւ հրկիզեալ եկեղեցւոյ շինութեան համար եղած առաջարկութիւնը, որ էր՝ ազգին երևելի անհատներէն յանձնաժողով մը կազմել վերաշինութեան գործը հանգամանութեամբ յաջողցնելու համար, յանձնուեցաւ Տնտեսական Խորհրդին, որպէս զի Սամաթիոյ եկեղեցւոյ սընտուկին պիւտճէն քննէ և անոր վրայ լիուլի տեղեկութիւն հաղորդէ Վարչութեան : Տնտ. Խորհուրդն ալ յիշեալ եկեղեցւոյ սնտուկին ընդհանուր հաշուեցոյցը քննելով Վարչութեան տեղեկագրեց թէ Թաղային սնտուկն 340000 ղրուշ

մէկ վերադիր ընել տալու իւրև հոգալն ։ Այս տնօրէնութեան արդիւնքը Պատրիարքարանի ծախքէն աւելի 2500 ղուրուշ պակսեցաւ ։

5º Տնտեսական Խորհրդոյ և Ելևմտից Հոգաբարձութեան միաբանական յօդուածին համաձայն Կեդրոնական Վարչութեան դրամական ներկայ տագնապին մէջ խնայողութեան միջոց մը ի գործ դնելու նպատակաւ Պատրիարքարանի պաշտօնէից ամսականաց մասին եղած ընդհանուր զեղչի առաջարկութիւնն ալ նկատողութեան առնելով Ժողովս, և արդէն փափաքուած խնայողութիւնը ձեռք բերելու նպատակաւ Պատրիարքարանի մատակարարութեան և հասարակաց սեղանի ծախքը ջնջելու համար ըրած կարգադրութիւնը բաւական համարելով, պաշտօնէութեան թոշակին դպչիլն աւելորդ գըտաւ և որոշեց պաշտօնէից ամսականքն անփոփոխ պահել մինչև ի նոր տնօրէնութիւն ։

Զ. Ակնցի Փախաղեան Յարութիւն աղայի կողմէն Ակնոյ Ապուշեխ գիւղի վարժարանին նուիրեալ և աւանդապահ Համամճեան Սարգիս աղային յանձնուած ակրկիի մը գումարին հաշուոյ խնդիրը Տնտեսական Խորհուրդն յանձնաժողովի մը ձեռօք քննած և Համամճեան Սարգիս աղան հրաւիրելով արդիւնքն իրեն ծանուցած ըլլալով, Սարգիս աղան հաւանած է եղեր պէտք եղած գումարը հատուցանել. և այս նըպատակաւ իւր պարտագիրը խնդրած է, որ Ապուշեխի Թաղ. Խորհրդոյ քով ի պահեստի կըմնայ ։ Տնտեսական Խորհուրդն այս դրամական գործողութիւնը կարգադրելու համար Համամճեանի պարտագրոյն հոս բերուիլն առաջարկելով, Ժողովս ընդունեց և Ակնոյ Առաջնորդին գրել որոշեց ։

Է. Ժողովս Տնտեսական Խորհրդոյ մէկ յօդուածը նկատողութեան առնելով, որով կյայտնէր թէ Թաղ. Խորհրդներէն շատերն թէ պայմանեալ ժամանակին և թէ անժամանակ հրաժարելով հաշուեցոյցներն ալ միատեղ չեն ղրկեր, և նոր ընտրութեան հրահանգ կխնդրեն, մինչդեռ Թաղ. Խորհրդոց համար նախորդ Վարչութեան օրով հրատարակուած Սահմանադրական հրահանգին 14դ յօդուածը կպահանջէ որ հրաժարեալ Թաղ. Խորհրդէն հաշիւ չառած նոր ընտրութեան հրահանգ չտրուիր և Վարչութիւնը կհարկադրուի առժամանակեայ Թաղ. Խորհուրդ կարգել մինչև որ հրաժարեալ խորհրդէն հաշիւները գան, այն դիտողութեանց վրայ բոլոր Թաղ. Խորհրդոց շրջաբերականաւ ծանոյց որ երբ հրաժարին պաշտօնէ, հրաժարագրին հետ նաև իրենց հաշուեցոյցը ղրկեն, եթէ ոչ չպիտի կրնայ Վարչութիւնը նոր ընտրութեան հրահանգ տալ ։

Ը. Տնտեսական Խորհրդոյ յօդուածին վըրայ Ժողովս Կէտիկփաշայի հրկիզեալ եկեղեցւոյ վերանորոգման խնդիրը նկատողութեան առնելով, Թաղ. Խորհրդոյ առաջարկութեան համեմատ շինութեան ձեռնարկելու հաւանութիւն տուաւ, ըլլալիք ծախուց գումարն որոշելով և բաց մնացած ծախուց տեղը լեցնելու համար հանգանակութեան դիմելու խնդիրնին ընդունելով ։

Թ. Տնտեսական Խորհրդոյ յօդուածին վըրայ, Ժողովս Ղալաթիոյ կալուածոց հոգաբարձութեան այն առաջարկութիւնն՝ որ է նորակառոյց կալուածներէն 231 թիւ խանութին ուրիշի սեպհականութիւնն եղած էնֆիյէճիի կէտիկը գնոյ առնուլ 184 լիրայի և դարձնել յանուն եկեղեցւոյն Ղալաթիոյ՝ որ միւլքին տէրն է արդէն, ընդունելի գտաւ և գործադրութեան հրահանգ տալ որոշեց ։

Ժ. Տնտեսական Խորհրդոյ յօդուածին վրայ, Ժողովս՝ մայր Աթոռոյ սովելոց օգնութեան Մասնաժողովոյ ձեռամբ կատարուած հանգանակութեանց և բաշխմանց հաշուեցոյցը խնդրեց և ստացաւ նոյն Մասնաժողովէն, իւր համարատուութեան միջոցաւ Ազգային պատկառելի Ժողովոյդ ի գիտութիւն հաղորդելու համար ։

Հետևապէս՝ յիշեալ Մասնաժողովոյ նամակին հետ իւր ղրկած հաշուեցոյցը նոյնութեամբ աստ կդնեմ ․

## ՆԱՄԱԿ

Բարձրաշնորհ Սրբազան Պատրիարք Հայր
Նախագահ Ազգ · Քաղ · Ժողովոյ

Ձեր բարձր Սրբազնութեան թիւ 659 և 1 Ապրիլ թուով հրամանագրին համեմատ ներփակեալ կմատուցանեմք Ձեր Սրբազնութեան, մեր յանձնաժողովոյ ձեռամբ կատարուած հանգանակութեանց և բաշխմանց 1875 Դեկտեմբեր 31 դադարեալ հաշուեցուցակին մի պատճէնը՝ զոր մի առ մի հրատարակած եմք արդէն լրագրաց միջոցաւ ։

Թէպէտև յիշեալ թուականէն ի վեր քանի մը գործողութիւնք ևս տեղի ունեցած են, բայց տակաւին հրատարակուած չըլլալուն երբ լրագրաց միջոցաւ հրատարակեմք, անոնց ևս հաշիւն Ձեր Սրբազնութեան ներկայացնելու պատիւը կունենամք ։

Մնամք Ձեր բարձր Սրբազնութեան խոնարհ ծառայք .

Ի դիմաց յանձնաժողովոյ փոքր Ասիոյ սովելոց .

Ատենադպիր — Ատենապետ
Յ · ՄԷՐՃԷՄ-ԳՈՒԼԻ — Յ · Գ · ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆ

Գանձապետ
Յ · ԿԻՒՄԻՒՇԵԱՆ

10 Ապրիլ 1876
Կ · Պոլիս

## ԺԶ ·

### ՎԱՆՕՐԷԻՑ ԽՈՐՀՐԴՈՑ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ա · Արմաշու Վանուց Նալօվլայի ագարակներէն ունեցած հին առնելիքի խնդիրը կարգադրելու համար Վանօրէից խորհրդոյ և Արմաշու Վանահօր ստէպ թախանձանացը վրայ, ժողովս Երուսաղէմայ Սրբազան Պատրիարքին հետ բանակցելով, նոյն ագարակաց հասոյթէն՝ որոյ վերատեսչութիւնը Երուսաղէմայ աթոռին վրայ էր, յիշեալ պարտքը վճարուելու համար ըրած որոշումն Երուսաղէմայ Սրբազան Պատրիարքին ընդունել տալով, վերջացուց սոյն հինաւուրց խնդիրը ։

Բ · Վանօրէից խորհրդոյ մատուցած ուրիշ զանազան խնդիրներն ըստ մեծի մասին խառն ժողովոյ վերաբերելուն և սոյն ժողովոյ համարատուութեան պատկանելուն, ներկայ համարատուութեանս մէջ նշանակել զանց առնուեցաւ ։

## Գ ·

### ԳԱՒԱՌԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

#### Ա.

#### ԱՂԹԱՄԱՐԱՑ ՎԱՆՈՒՑ ԱՐՔՈՒՆԻ ՏՈՒՐՔԸ

Աղթամարայ վանքէն եկած խնդրագրին համեմատ՝ ժողովս ըստ նախնի հրովարտակաց նոյն վանուց արքունի տուրքէ ազատ ըլլալու համար թագրիր գրել որոշեց ։

#### Բ.

#### ԵԿԵՂԵՑԱԿԱՆԱՑ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՏՐՈՑ ԽՆԴԻՐԸ

Առաջնորդաց ոմանց կողմէ եկած տեղեկութեանց համեմատ կուսակալութեանց հրամանագիր գրկուեր է որ եկեղեցականներէն ալ զինուորական տուրք առնուի, որ մինչև հիմա չկար և այս անսովոր տրոց բարձումը կխնդրէին ։

Սրբազան Պատրիարքը զարուքեհեասի Աբրահամ Էֆէնտիին միջոցաւ Շուրայի Տէվլէթէն տեղեկացեր է այս բանին պատճառն, որ է Յունաց կղերականաց վարուցած ընթը . բայց ըստ որում Հայ եկեղեցականք այս բանը չեն ընէր, ուստի Հայ եկեղեցականաց համար այդ տուրքին բարձումը խնդրելու միօք թագրիր գրուեցաւ ։

#### Գ.

#### ԵԿԵՂԵՑԵԱՑ ՇԻՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐ

Ա · Երզնկայէն մէկ ժամ հեռաւորութեամբ Ս · Օհան անուն գիւղին մէջ Գարաբուրս եկեղեցւոյ և անոր կից վարժարանի մը շինութեան համար թագրիր գրուեցաւ ։

# ՀԱՇՈՒԵՑՈՒՑԱԿ Մ

## ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԵԱՆ ՑԱՆՁՆԱԺՈՂՈՎՈՅ

### ՄՈՒՏՔ

| | Ղր. | Պ. |
|---|---|---|
| 75 Մարտ 20 թուականաւ Մասիս լրագրոյ 1655 թուոյն մէջ Ա. անգամ հրատարակուած նուիրատուաց ցանկը | 4440 | 85 |
| » Մայիս 18 » » » 1678 » » երկրորդ » » | 614 | 72 |
| » Նոյ. 20 » » » 1756 » » երրորդ » » | 714 | 30 |
| Հինգ հազար եօթն հարիւր վաթսուն և վեց ղր. Օսմանեան և ութսունևեօթը պարա | 5766 | 87 |

31 Դեկտեմբեր 1875

Բ. Պրուսայի կուսակալութեան տակ գըտնուած Էսկիշէհիրի ազգայնոց բնակութեան համար տուն և եկեղեցի շինել տալու համար թագրիր գրուեցաւ ։

Գ. Այնթապի եկեղեցւոյ հնութեան և փոքրկութեան համար ըստ թախանձանաց տեղւոյն նորէն շինուելու և մեծցնելու համար թագրիր գրուեցաւ ։

Դ. Տիգրանակերտի կուսակալութեան տակ գտնուած Ջերմուկ գիւղաքաղաքի եկեղեցւոյ շինութեան դէմ արգելք կըլլային տեղւոյն տաճիկները, և արդէն գանձն շնորհուած հրովարտակն ալ կորսուած ըլլալուն նոր հրովարտակ կխնդրէին տեղւոյն ազգայինք ։

Ժողովս խնդրուած հրովարտակը ձեռք բերելու համար թագրիր գրեց ։

Ե. Կարնոյ Առաջնորդին և Քաղ. Ժողովին յայտագրոյն համեմատ, տեղւոյն գոլստան շինութեան հրամանագիրն առնելու համար Ժողովս թագրիր գրեց ։

Զ. Մշոյ Վանահօր և միաբանութեան խնդրագրոյն վրայ, Վանուց ուսումնարանի շինութեան հրամանագիրն առնելու համար Ժողովս թագրիր գրեց ։

Է. Խարբերդու Եդեմիկ գիւղի քայքայեալ եկեղեցւոյ նորոգ շինութեան համար թագրիր գրուեցաւ ։

Թ.

Մարաշի միւթասարիֆ Սայիտ փաշային անվայել ընթացից համար եկած գանգատները նկատողութեան առնելով Ժողովս, անոր պաշտօնանկութեան համար թագրիր գրեց, որ անմիջապէս գործադրուելով՝ յիշեալ միւթասարիֆն ինկաւ իւր պաշտօնէն ։

Ժ.

Տիգրանակերտի կուսակալութեան ընդհանուր զեղծմանց դէմ բողոքոյ հեռագիր մը եկած ըլլալով, զոր ստորագրած էին տեղւոյն բոլոր քրիստոնեայ ազգապետները, Բ. Դրան հաղորդուեցաւ, և հետզհետէ միևնոյն բողոքները կրկնուելուն վրայ Բ. Դուռը հարկադրուեցաւ յատուկ քննիչ մը ղրկել հոն, և կուսակալն ալ ձգեց իւր պաշտօնէն ։

Ի.

Եգիպտոսի Գաւառական վարչութիւնք տեղւոյն կառավարական ժողովոյ տաճիկ անդամոց թուոյն հաւասար քրիստոնեայ անդամ չգտնուիլը յայտնելով, տէրութեան օրինաց այս կէտին վերաբերեալ տրամադրութեան գործադրութիւնը կխնդրէր ։ Ժողովս նկատելով որ այս խնդիրը միայն Եգիպտոսի խնդիր չէ, այլ գաւառական արքունի ժողովոց ամենուն ալ կվերաբերի, ընդհանուր կերպով խնդիր ընելու համար թագրիր մը գրել և Եգիպտոսի վարչութեան ալ ըստ այսմ պատասխանել արժան դատեց ։

Լ.

Շիրակի Վանուց Հոգւոյն կալուածներն նախկին Վանահայր վարդապետին վրայ թափօ եղած ըլլալով և յիշեալ վարդապետին ալ վախճանելով, կառավարութիւնն իբր մնացորդ յանուրդ հանելով ծախել կուզէր, որուն դէմ Ժողովս քանի մը անգամ թագրիր գրելով և Սըրբազան Պատրիարքն ալ անձամբ Մեծ Եպարքոսին հետ բանակցելով, վերջապէս հաճեցոյց նոյն կալուածներն իբր սեփականութիւն վանքին դարձուելու համար խնդիրը Նախարարաց Խորհրդին յանձնել ։

Խ.

ՋԱՐՇԱՄԲԱՑԻ ԳԻՒՂԱԿԱՆ ՀԱՅ

ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ՎԻՃԱԿԸ

Սամսոնի Թաղ. Խորհրդոյ մէկ նամակը Չարշամպայի գիւղական Հայ ժողովրդեան թըշուառ վիճակը նկարագրելով, որոնք հարստահարութեանց անտանելի բազմութեամբ Սամսոն գաղթելու համար ճամբայ ելած ըլլալով և ճանբան արգիլուելով Սամսոն դարձած ու ամեն օգնութենէ զուրկ՝ մերկ և անօթի հոն մնացած են, նիւթապէս և բարոյապէս

պաշտպանութիւն կխնդրէր ։

Զուրչամկայի առաջնորդը Պօլիս գտնուելով նոյն միջոցին, անկէ պաշտօնապէս տեղեկագիր մը առնուելէ ետև Բ. Դրան Թագրիր մը գըրուեցաւ յիշեալ գիւղականաց կրած հարստահարութեանց դարմանը խնդրելու համար ։ Միանգամայն անկելոց օգնութեան մասնաժողովէն ալ Յիսուն Օսմանեան ոսկի անմիջապէս Սամսոն ղրկել տրուեցաւ յիշեալ գիւղականաց բաշխուելու համար ի ձեռն Թաղական խորհրդոյն Սամսոնի ։

## Թ.

Մշոյ Ս. Կարապետի վանաց հողային կալուածոց հին հրովարտակին պատճէնն արքունի տէֆթէրխանայի արձանագրութենէն հանել տալու խնդրանօք Թագրիր գրուեցաւ ։

## Ժ.

Վանայ հոգւոց վանաց երբեմն կողոպտեալ անօթոց խնդրոյն համար, ըստ որում Վանայ Պօղոս վարդապետը Պօլիս գտնուելուն առթիւ նոյն վանքը կողոպտող գողերէն միոյն հետ դատի բռնուած էր ոստիկանութեան դուռը, Ժողովս անմիջապէս Թագրիր գրեց նոյն կողոպտուածներէն մինչև ցարդ երևան չելածները պահանջելու համար ։

## ԺԱ.

Ժողովս նախորդ վարչութեան օրէն կախ մնացած Չէյթունի Ազգային գետնի խնդրոյն նկատմամբ ըստ Թախանձանաց տեղւոյն Թագրիր գրեց խնդրելով որ նոյն գետինն Ազգին յանձնուի, և դեռ ևս պատասխանը չառուեցաւ բարձրագոյն դռնէն ։

## ԺԲ.

### ԲՈՂՈՔ ՏԻՎՐԻԿԵՑԻՈՑ

Տիվրիկցւոց բողոքը երկու կէտ կպարունակէր, մէկն Առաջնորդական խնդիրն, որ խառն ժողովոյ վերաբերելուն խառն ժողովոյ համարատուութեան մէջ պիտի անցնի, իսկ միւսն Տիվրիկի կառքի խնդրոյն կվերաբերի, որուն համար Տիվրիկցիք երկու կողմ բաժնուելով, իրարու հակառակ պահանջումներ կընէին, Ժողովս իր մասնաժողովին յանձնեց այս խնդրոյն անաչառ քննութիւնն ։

## ԺԳ.

Ժողովս տեղեկանալով Կարնոյ առաջնորդէն և Մշոյ գաւառական վարչութենէն Մշոյ ժողովրդեան կրած վերջին հարստահարութիւնք որոց չդիմանալով 6-7 հարիւր ազգայինք մահմէտականութեան գիրկը հալածին մէջ ինկած են, և թէ ներկայ կառավարչին օրով անձնար է բնաւորաց զեղծմանց չափ և սահման դնել և ժողովրդեան համար ապահովութիւն մը գտնել, միւթոց Սրբազան Պատրիարք Հօր միջոցաւ Մեծ Եպարքոսին խնամքն ու գթութիւնը խնդրեց, որով անմիջապէս կառավարիչը փոխուեցաւ և ազդու հրամաններ ղրկուեցան հոն ժողովրդեան ցաւերը բառնալու և բարեկարգութիւն հաստատելու համար ։ Այս անօրէնութեանց վրայ յուսադրական նամակներով տեղեկութիւն հաղորդուեցաւ Պատրիարքարանէն Մշոյ ազգային վարչութեան ։

## ԺԴ.

### ԳԱՒԱՌԱՑՒՈՑ ՀՈՂԱՅԻՆ ԽՆԴՐՈՑ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎ

Ժողովս Սրբազան Պատրիարքէն տեղեկանալով որ Մեծ Եպարքոսն Նորին Սրբազնութեան մատուցած ընդհանուր գաւառայնոց հողային խնդրոյն վերաբերեալ Թագրիրին կարեւորութիւն տալով հրաման ըրեր է դուռը քոմիսիոն մը գրուիլ և քննութեան առնուլ այս խնդիրը, և թէ նոյն քօմիսիօնին դրուելիք հայ անդամներն ալ Նորին բարձրութեան հրամանաւ Սրբազան Պատրիարքն ինք ընտրեր և ցոյց տուեր է, որք են՝ Վսեմ. Օտեան և Ապրօ Սահակ էֆէնտիներն և Վարչութեան Ատենա-

կերպով այս Հիմնատուրց խնդիրն ալ վերջացաւ ի նպաստ Ասորւոց ազգին :

### Ե.

### ՀՐԱՀԱՆԳ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՏՐՈՑ

Քաղաքական ժողովս Ազգային ժողովէդ վաւերացեալ Կեդրոնական տրոց կանոնադրութիւնն առանձին եւս, անոր գործադրութեան համար պէտք եղած հրահանգն ամփոփաւէս պատրաստելով և տպագրել տալով, յատուկ շրջաբերականաւ մայրաքաղաքիս Թաղական խորհրդոց ղրկեց, որպէս զի ըստ այնմ Կեդրոնական տրոց բաշխման ցուցակները մինչև մէկ ամիս պատրաստել և Պատրիարքարան ղրկել փութան :

Ցաւ է ըսել որ Թաղական խորհուրդք՝ բաց ի մէկ երկու փոքր Թաղերէ այլ և այլ պատճառներով վարչական հրահանգին գործադրութիւնը չկատարելով անտարբեր կերպով յետաձգեցին և բաշխման ցուցակները չղրկեցին ցարդ, որով այս տարւոյն համար կեդրոնական տրոց կանոնադրութիւնը չկրցաւ գործադրուիլ և Պիւտճէին մէջ կարևոր տեղ բռնելու յատկացեալ այն տրոց տարեկան գումարն անհնար եղաւ հաստատօրէն նշանակուիլ : Ժողովս տեսնելով որ տրոց բաշխման ցուցակաց պատրաստութիւնն այսպէս երկարաձգուելովն ըստ նոր կանոնադրութեան կեդրոնական տրոց հաւաքումն ընդ երկար պիտի յապաղի և տրոց հաւաքումն ալ առաւել մայիս և յունիս ամիսներուն մէջ կարգադրուի, Տնտեսական խորհրդոյ և Ելևմտից հաշուարդութեան առաջարկութեանց վրայ պատուիրեց 75 և 25 ղուրուշի թերհաշիւ տրոց հաւաքումը շարունակել տալ նաև այս տարի, և միանգամայն Թաղական խորհուրդներն ալ կրկին և երեքկին շրջաբերականաւ հրաւիրեց բաշխման ցուցակները փութացնելու, որպէս զի գոնէ մինչև տարեգլուխ պատրաստ լինին ցուցակները և յառաջիկայ 1876 տարւոյ մայիս մէկէն սկսեալ գործադրութեան մտնէ Ազգային ժողովէդ քուէարկեալ տրոց նոր օրէնքը :

### Զ.

### ԿԱՆՈՆԱԳԻՐ ՆԵՐՔԻՆ ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ ԵՒ ՊԻՒՏՃԷ ԿԵԴՐ · ՍՆՏՈՒԿԻ 1875—76 ԱՄԻՆ

Քաղաքական ժողովս իւր մէջէն ընտրեալ յանձնաժողովի մը ձեռօք պատրաստուած Պատրիարքարանի բարեկարգութեան կանոնագրի ծրագիրն և ըստ նմին 75—76 տարւոյն համար շինուած Պիւտճէն առանձին եւս, որոնց այն Պիւտճէն Ազգային ժողովոյդ հաւանութեան ներկայացնել և վաւերացուելէն եւս ըստ այնմ Պատրիարքարանի բարեկարգութեան կանոնագիրն ալ գործադրել : Սակայն այս ընելէ առաջ սահմանադրական հարկ զատեց նաև Տնտեսական խորհրդէն ալ պահանջել որ իւր Պիւտճէն ներկայացնէ, և յատուկ նամակ մը մէջ թէ Ժողովոյս ըստ նոր բարեկարգական կանոնագրի շինած պիւտճէն և թէ Տնտեսական խորհրդոյ բերած սովորական պիւտճէն քննելով բաղդատելով հարկ եղած փոփոխութիւններն ընելէ եւս, Ազգային ժողովէդ մատուցեալ Վարչութեան պիւտճէն յատուկ տեղեկագրով մը : Իսկ Ազգային ժողովդ ինչպէս յայտնի է, այս տարւոյն համար պիւտճէ սահմանել զանց առնելով յանձնարարած էր ժողովիս մինչև առաջիկայ սահմանադրական տարեգլուխ ազգային մնացեալ Ելևմտից անորոշութիւնն ըստ առաջնոյն շարունակել առանց տարեգլխին սպառ ձգելու, և առաջիկայ 1876—77 տարւոյ համար նոր պիւտճէի մը պատրաստութիւնը և մինչև տարւոյս վերջ ներկայացումը խնդրած էր, որպէս զի նոր տարւոյ սկիզբը զայն միաձայնութեան ենթարկէ և վաւերացնելով յանձնէ նոր ընտրելի Քաղաքական ժողովին ի գործադրութիւն : Ըստ այսմ հրահանգի Ժողով-

մըս Տնտեսական խորհրդոյ և Ելևմտից հաշուեքննութեան միջոցաւ Պատրիարքարանի և վարչութեան ծախքերը մինչև առաջիկայ Սահմանադրական տարեգլուխ հնար եղածին չափ խնայողութեամբ մատակարարուելուն հոգ տարաւ, միտ դնելով որ տարեգլխին բաց սպառք չթողուի, և իւր այս նպատակին հասած ըլլալը կրնայ հասկցուիլ Տնտեսական խորհրդոյ համարատուութեամբ Ազգային Ժողովիդ ներկայացուելիք ելևմտական վիճակացոյց պատկերէն, որ մինչև յառաջիկայ Սահմանադրական տարեգլուխ կեդրոնական սնտուկին ճիշդ վիճակը կպատկերացնէ.

Իսկ դալով Ազգային Ժողովոյդ յառաջիկայ տարւոյ Պիւտճէի պատրաստութեան համար ըրած յանձնարարութեանը, Ժողովս որչափ որ ջանաց այս մասին արդեամբ պատասխանել և օրինաւոր Պիւտճէ մը ներկայացնել, սակայն քանի որ կեդրոնական արկղոյ համար Թաղերէն ստացուած բաշխման ցուցակներն անկարելի եղաւ տարեգլխէն առաջ ձեռք բերել, որով միայն արկղոյ քանակութեան տարեկան ճիշդ գումարն իմանալով կարող պիտի ըլլար յառաջիկային մէջ կեդրոնական առուքէն գոյանալիք հասութից գումարին վրայ ծախուց բաղը չափելով հաւասարակշռութիւն մը յառաջ բերել, ուստի և իրաց այս վիճակին մէջ նկատելով Ժողովս որ եթէ պատկառելի Ժողովոյդ յանձնարարութիւնը կատարելու փափաքէն մղեալ պիւտճէ մը պատրաստելու ջանայ, մինչև ցարդ ներկայացեալ պիւտճէներէն տարբեր բան մը չպիտի ըլլայ, ուրեմն պատշաճ դատեց ձեռնթափ լինիլ և թողուլ՝ այս կարևոր և փափուկ գործն իւր յաջորդին, որոյ յաջողութիւն կմաղթէ Ժողովս, որպէս զի այսօրուան մեր դէմը գտնուած դժուարութեան նա կարող ըլլայ ժամանակին հանգամանաց ներելովը յաղթել և պատկառելի Ժողովոյդ ակնկալած օրինաւոր պիւտճէն պատրաստել և ներկայացնել ի վաւերացումն։

Ժողովս կարևոր կհամարի աստ յիշատակել նաև Ազգային Ժողովէդ քանի մը ամիս յառաջ առ Քաղաքական Ժողովս յղեալ այն երկու հարցումներն ալ, որոց մէկն էր Ալիքսանեան Մատթէոս էֆ. երեսփոխանին հարցումն Պոլիս գտնուող գաւառացի ազգայիններէն տուրք առնելուն համար, և երկրորդն էր Պէշիկեան Ալիքսան էֆ. երեսփոխանին հարցումն կեդրոնական սնտուկի պիւտճէին առանց Ազգային Ժողովիդ վաւերացման գործադրութեանն սկսելուն համար։ Ինչպէս յայտ է արդէն, Ժողովս այն երկու կէտերուն նկատմամբ մանաւորապէս պատասխանելը պատեհութիւն չհամարելով արժան դատած էր նոյն ատեն այժմ եղած տեղեկութիւններն իւր համարատուութեան պահուն վերապահել։ Սակայն պիւտճէի գործադրութեան սկսելուն մասին եղած հարցման կէտն Ազգային Ժողովդ ինք ստանձնելով՝ անոր պատասխանն իբրև առձեռակարևոր պնդելուն վրայ Ժողովս ասկէց առաջ նոյն մասին այժմ եղած տեղեկութիւնը մանրամասն կերպով հաղորդած ըլլալուն համար, համարատուութեանս մէջ կրկնել աւելորդ կդատէ, և միայն գաւառացի ազգայիններէն կեդրոնական տուրք առնելու մասին եղած հարցման վրայ հարկ կհամարի այժմ տեղեկացնել Ազգային Ժողովոյդ թէ՝ որովհետև Ազգային Ժողովէդ քուէարկեալ կեդրոնական արկղոյ նոր օրէնքին գործադրութիւնն առաջիկայ տարւոյն Մայիս հարկ եղած էր արկղոյ բաշխման ցուցակները Թաղական խորհուրդներէն չկրնալ գալուն պատճառաւ, ուստի Ժողովս ստիպուեցաւ արկղոյ հասոյթն ըստ նախորդ դրութեան շարունակել, որով Պոլիս գտնուող շահու տէր գաւառացի ազգայինք ևս պարտաւոր էին մասնակցիլ կեդրոնական արկղոյ վճարման, երբ անձնական գործոց համար Պատրիարքարան դիմէին։

## Է.

## ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԵԱՆՑ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ

Յունաց Պատրիարքին փոխադարձ այցելութեան եկած ըլլալով ի Պատրիարքարան, Սրբազան Պատրիարքն այս լուրը Ժողովիս տալու ատեն առաջարկեց նաև որ այսպիսի պաշտօնական այցելութիւնք արձանագրութեան յատուկ տումարի մը մէջ իբրև նշանաւոր դէպքեր ազ-

պային պատմութեան համար, և այս մասին Ժո-ղովէս տնօրէնութիւն խնդրեց ։

Ժողովս Պատրիարքական փոխանորդ Հօր յանձնեց սոյն արձանագրութեան գործը, հրահանգ տալով որ ներկայ Սրբազան Պատրիարք Հօր գահակալութեան օրէն սկսեալ անդի ունեցած այցելութիւններն արձանագրէ և հետըզհետէ շարունակէ ։

## Ը.

## ՓԱՐԻԶԻ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԽՆԴԻՐԸ

Սոյն խնդիրն Ազգային ժողովէդ վարչութեան յանձնուելուն վրայ, Քաղաքական ժողովս 5 հոգիէ բաղկացեալ մասնաժողով մը յանձնեց քննել և տեղեկագրել թէ Ազգն ի՞նչ իրաւունք ունի Մուրատեան կտակին մէջ, և ի՞նչ միջոց գործադրել հարկ է Ազգին իրաւունքը ձեռք բերելու և կտակին իր նպատակին հասցնելու համար ։ Սակայն մասնաժողովն մի քանի անգամ հրաւիրուելէ եւ տակաւին չըկրցաւ գումարուիլ և իր պաշտօնին սկզբնաւորութիւն ընել, որով խնդիրը դեռ անլոյծ կը մնայ ։

## Թ.

## ԿՏԱԿ ՔԱՐԱԿԷՕԶԵԱՆ ԵՂԲԱՐՑ

Քարակէօզեան Կարապետ Էֆէնտիի մահուանէն եւ մեծ կտակի մը խնդիրն երեւան ելած ըլլալով, Ժողովս Սրբազան Պատրիարքէն և Կիւմիւշեան Յովհաննէս Էֆէնտիէն տեղեկացաւ պաշտօնապէս թէ Քարակէօզեան եղբարք իրենց հանգուցեալ եղբօր Բիւզանդ Էֆէնտիի ժառանգական հարստութենէն հրաժարելով, 5 ժառանգորդք միաբանութեամբ Ազգին թողած են վաճառականութեան դպրոց մը հաստատուելու համար, և թէ նոյն իսկ հանգուցեալ Քարակէօզեան Կարապետ Էֆէնտի ալ իրենց հետ համաձայն և համախոհ գտնուելով իւր կենդանութեան նա եւ իւր բաժինը թողած է յիշեալ վարժարանին հիմնարկութեան և յարատեւութեան համար ։ Յիշեալ ժառանգորդք իրենց այս կտակի դիտաւորութիւնը Կարապետ Էֆէնտիի մահուանէն եւ գրի առնելով՝ ստորագրեր և յանձներ են Կիւմիւշեան Յովհաննէս Էֆէնտիի, որպէս զի ընդ պաշտպանութեամբ Սրբազան Պատրիարք Հօր այնոր եղած կարգադրութիւններն ի գործ դնէ կտակն յարդիւնս ածելու և մասնաւորեալ վարժարանը Բերայի Բանկալթիի ազգային գերեզմանատան մէջ շինուելուն հրամանը Բ. Դրանէն առնելու համար ։ Հանգուցեալ Քարակէօզեան Կարապետ Էֆէնտիի որդւոց խնամակալ Փափազեան Միհրան Էֆէնտի ալ համաձայնեցաւ Քարակէօզեան եղբարց այս ազգօգուտ դիտաւորութեան, և այսպէս յիշեալ կըտակին գործնականապէս հաստատութիւն տրուելով, Ժողովս իւր ԻԴ. Նիստին մէջ (3 սեպտեմբեր 1875) մասնաւորապէս իւր շնորհակալութիւնը յայտնեց թէ՛ Սրբազան Պատրիարք Հօր և թէ Կիւմիւշեան Յովհաննէս Էֆէնտիին, որ անդուլ ջանասիրութեամբ աշխատած և յաջողած էին այս մեծ գործն ի գլուխ հանելու ։ Եւ միաժամանայն խնդրեց որ երթան Ազգային վարչութեան շնորհակալութիւնը յայտնեն նոյն ազգասէր գերդաստանին ։

## Ժ.

## ԿՏԱԿ ՍՐԲՈՒՀԻՒՈՅ ՄԱՅՐԱՊԵՏԻՆ

Սրբազան Պատրիարք յայտնեց թէ Սրբուհի մայրապետն՝ որ իւր աշխատութեամբ որբանոց մը հիմնած է ի Խասգիւղ, այժմ Ազգին կկտակէ նոյն որբանոցը մասնաւոր պայմաններով և կտակագիրն ալ մասնաւոր խնամով Պ. սեմ. Ստեփան փաշան խմբագրած է, և թէ առ ի չգոյէ կտակաց հաստատութեան, Տնտեսական խորհուրդն այդ կտակագիրը քննելով օրինաւոր գտած և հաստատած և ինքն ալ ըստ այնմ վաւերացուցած է, զոր և ներկայացնելով իբրև կատարուած գործողութիւն արձանագրուիլը խնդրեց ։

Ժողովս նոյն կտակագիրը աչքէ անցնելով և տեսնելով որ Ազգային վարչութեան միջամտութիւնն ապահովուած է, ընդունեց և արձանագրել որոշեց ։

թղթակցութիւններ տեղի ունեցած են, ինչպէս Ժողովոյս արձանագրութիւնք կցուցնեն, հանրական կարևորութիւն մը չունենալով համառօտութեանս մէջ անցնել աւելորդ դատուեցաւ: Անոնցմէ զատ կան նաև Ժողովս զբաղեցնող ուրիշ բազմաթիւ խնդիրներ ալ, որոնք խառն ըլլալով՝ Խառն Ժողովոյ մէջ քննուած և լուծուած են, և ներկայ համառօտութեանս մէջ չեն անցած, այլ վերապահուած են Խառն Ժողովոյ համառօտութեան:

Ժողովս բարեբաղդ կհամարի զինքն եթէ իւր պաշտօնավարութեան մէջ կրցած է ազգասիրութեան և Սահմանադրութեան իւր վրայ դրած պարտաւորութիւններն անթերի և ճշդիւ կատարել, ինչպէս իւր փափաքն էր, և՛ եթէ անկարող գտնուեցաւ մեծամեծ ծառայութիւններ մատուցանել, գոնէ իւր դոյզն ծառայութիւններն Ազգին ճշմարիտ օգտին և յառաջադիմութեան նուիրելու ջանքը չզլացաւ ի բովանդակն, և լիայոյս է որ իւր այս ջանից ապացոյցն ու երաշխաւորութիւնը պիտի գտնէ Պատկառելի Ժողովդ այն երկամեայ համառօտութեան մէջ, զոր պատիւ ունի Ժողովս մատուցանել և ընդ նմին հրաժեշտ տալ Ազգային վարչութեան ասպարէզին, շնորհակալութիւն յայտնելով Ազգային Ժողովոյդ այն համակրանաց և քաջալերութեան համար, որոց հանդիպեցաւ Ժողովս իւր պաշտօնավարութեան ընթացքին մէջ:

| Ատենապետ | Փոխ Ատենապետ |
|---|---|
| Ս · ՄԱՔՍՈՒՏԵԱՆ | Կ · Գ · ՓԱՓԱԶԵԱՆ |
| Ատենադպիր | Փոխ Ատենադպիր |
| Մ · ՄԱՄԻԿՈՆԵԱՆ | Ս · ՄԻՔԱՅԷԼԵԱՆ |
| Խ · Յ · ԱԼԵԱՆԱԳԵԱՆ | Ս · ԱՐԱՊԵԱՆ |
| Ա · ԻԿԻՖՊԱՇԸԵԱՆ | Յ · ԳԱՓԱՄԱՃԵԱՆ |
| Ս · Խ · ՓԱՓԱԶԵԱՆ | |



ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՔ
ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

# ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

## ԱԶԳԱՅԻՆ

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

1874 — 75 ԵՒ 1875 — 76 ԱՄԱՑ

ԵՒ

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՈՅՆ




1876

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Մ. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

[illegible] 13

# ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

## ԱԶԳԱՅԻՆ

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

1874—75 *ԵՒ* 1875—76 *ԱՄԱՑ*

ԵՒ

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՈՅՆ




*ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ*

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Ս. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

ՈՒԶՈՒՆ – ՉԱՐՇԻՒ ԳԼՈՒԽ ՇԷՐԻՖ ՓԱՇԱ ԽԱՆ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎ

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1. | Ասլանեան | Ստեփան | փաշա | Հրաժարեալ |
| 2. | Մաքսուտեան | Սիմոն | Պէյ | |
| 3. | Տատեան | Առաքել | » | Հրաժարեալ |
| 4. | Արզումանեան | Ստեփան | էֆէնտի | Հրաժարեալ |
| 5. | Մամիկոնեան | Միքայէլ | » | |
| 6. | Քափքամաճեան | Յարութիւն | » | |
| 7. | Մանուկեան | Մանուկ | » | Հրաժարեալ |
| 8. | Խանտանեան | Յակոբ | » | Հրաժարեալ |
| 9. | Արապեան | Սարգիս | » | |
| 10. | Նորատունկեան | Սիմոն | » | |
| 11. | Իկիազաշեան | Ասափիա | » | |
| 12. | Խնդիրեան | Ստեփան | » | |
| 13. | Միքայէլեան | Սիմոն | » | |
| 14, | Ճամճակոչեան | Պօղոս | » | Հրաժարեալ |

## ՀՐԱԺԱՐԵԼՈՑ ՏԵՂ ԸՆՏՐՈՒԱԾՆԵՐԸ

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1. | Կոստանդեան | Յակոբ | էֆէնտի | Բացակայ |
| 2. | Փափազեան | Կարապետ | » | |
| 3. | Ալեանաքեան | Խաչիկ | » | |
| 4. | Աբրահամեան | Սարգիս | » | |
| 5. | Էսաեան | Մկրտիչ | » | Բացակայ |
| 6. | Հարէնց | Աբրահամ | » | Հրաժարեալ |

# ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

## 1874 — 75 ԱՄԻ

## ԱՌ

# ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՆ

## Ա.

### Կազմութիւն

Քաղաքական ժողովս Ազգային Ժողովոյ քուէովն ու վստահութեամբը պատուեալ իւր վաւերագիրը Բ. Դրանէն ընդունելէն ետև, Ազգային Ժողովոյ Նախագահ և Կրօնական Ժողովոյ Ատենապետ Սրբազանին հրաւիրանօքն 'ի Պատրիարքարան իւր առաջին նիստն ըրաւ 'ի 27 Նոյեմբերի 1873։

Այս առաջին նիստին մէջ նախ իւր դիւանը կազմելով և ապա Կրօնական ժողովոյ հետ միացեալ Խառն ժողովով Պատրիարքական Տեղապահն ընտրեց, որ 73—74 ի Խառն ժողովոյ համարատուութեան մէջ արդէն տեղեկագրուած է։

Քաղաքական ժողովս Ազգին անդորրութիւնն ալեկոծեալ ժամանակի մը մէջ Վարչութեան տաժանելի և կնճռներով ծանրացեալ բեռը իւր վրայ առած էր։

Իրաց այս վիճակին մէջ նորընտիր Վարչութիւնն ազգին խաղաղութիւնը վերահաստատելու և ազգային գործոց յառաջդիմութեան ու բարւոքման առջև հակառակ կուսակցութիւններն ի մի ձուլելու համար պարտք համարեց խիստ անկողմնակալ և գործունեայ ընթացք մը բռնել, և իւր այս ընթացքին նախագիծը ծանոյց հասարակութեան հետզհետէ յետագայ երկու յայտարարութիւնները հրատարակելով,

### Պատճէն յայտարարութեանց Քաղ. Ժողովոյ

#### Ա.

Ազգային Վարչութեան Քաղ. Ժողովս 'ի պաշտօնավարութիւն կոչուած միջոցին նախ՝ իւր շնորհակալութեան պարտաւորութիւնը կը մատուցանէ Ազգ. Ընդհ. Ժողովոյ, որ իւր վստահութեան քուէովը պատուեց ժողովոյս անդամները և անոնց յանձնեց Ազգ. գործադիր իշխանութեան ղեկը. ուստի նորա վստահութեան արժանաւոր կերպով պատասխանելու և Ազգային Սահմանադրութեան տրամադրութեանը համաձայն վարուելու համար իւր ջանքն ու անձնուիրութիւնը ցուցնելու ամեն կերպով տրամադիր և պատրաստ ըլլալը յայտնելէ ետև, կը յայտարարէ նաև հանրութեան ազգիս թէ ժողովս անկողմնակալութիւնն ու արդարասիրու-

# ԿԱՆՈՆԱԳԻՐ

## ՆԵՐՔԻՆ ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ

## ԱԶԳ. ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻՆ

### ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ ԵՒ ՊԱՇՏՕՆԵԱՅՔ

Ա.

Սրբազան Պատրիարքն Ազգային Ժողովոյ Նախագահն է և անոնց որոշմանց գործադիրը, միանգամայն Պատրիարքարանի գործոց ընթացքին բարեկարգութեան հսկող և պատասխանատու է՝ խորհրդական ունենալով իւր փոխանորդն։

Բ.

Պատրիարքական Փոխանորդը խորհրդական է Սրբազան Պատրիարքին, և իւր յատուկ պաշտօններէն զատ փոխանորդաբար կը հսկէ նաև Ազգային Ժողովոյ որոշմանց գործադրութեան։ Միանգամայն պատասխանատու է Պատրիարքարանի ներքին բարեկարգութեան։

Պատրիարքական Փոխանորդը ներկայ կը գտնուի Կրօնական, Քաղաքական և Խառն Ժողովոց նիստերուն։

Գ.

Պատրիարքարանն ունի նաև երկու գլխաւոր պաշտօնեայ, Գաւառաքննչապետն և Դիւանապետն։

Դ.

Պատրիարքական Փոխանորդին, Գաւառաքննչապետին և Դիւանապետին ընտրութիւնը Սրբազան Պատրիարքին առաջարկութեամբ Քաղաքական Ժողովը նկատողութեան կառնու և պէտք եղածը կը տնօրինէ։

Ե.

Գաւառաքննչապետն Կառավարութեան և Պատրիարքարանի մէջ եղած յարաբերութեանց գործակատար պաշտօնեայն ըլլալով, պարտական է Սրբազան Պատրիարքին և Փոխանորդ Հօր կողմէն իրեն յանձնուած գործերը կանոնաւոր կերպով կատարել և ամեն օր արդիւնքը գրով հաղորդել, որպէս զի ժողովոց ներկայացուի։

Գաւառաքննչապետն ներկայ կը գտնուի Քաղաքական և Խառն Ժողովոց նիստերուն։

Գաւառաքննչապետն ունի մէկ օգնական մը թէ՛ Բ. Դրան և թէ՛ Ոստիկանութեան վերաբերեալ գործոց համար։

Զ.

Դիւանապետը դիւանական գործոց կարգադրութեան գործադիր և պատասխանատու պաշտօնեայն ըլլալով, պարտական է իր իրաւասութեան տակ գտնուած գրասենեակներուն մէջ եղող պաշտօնէից պարտքերն անթերի և անյապաղ գործադրել տալ։

Դիւանական պաշտօնէից փոփոխութիւնն ու յաւելումը Դիւանապետին առաջարկութեամբ Քաղաքական Ժողովը նկատողութեան կառնու և պէտք եղածը կը տնօրինէ։

Է.

ԴԻՒԱՆԱՏՈՒՆ

Կեդրոնական Դիւանատունն երեք գրասենեակներէ կը բաղկանայ, որք են՝ Խմբագրութեան, Արձանագրութեան և Վիճակագրութեան գրասենեակ, ընդ հսկողութեամբ և պատասխանատուութեամբ Դիւանապետին։

### ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԴՐԱՍԵՆԵԱԿ

Այս դրասենեակին մէջ կը խմբագրուին այն ամեն Հայերէն Տաճկերէն և Գաղղիերէն գրութիւնք, որ կը պատկանին Երեսփոխանական, Կրօնական և Քաղաքական ժողովոց որոշմանց։

Դիւանապետն ունի իրեն հետ երեք խմբագիր դիւանադպիրներ, մէկը Կրօնականի, մէկը Հայերէնի և Գաղղիերէնի և երրորդը Տաճկերէնի յատկացեալ, որոց պաշտօնն է գլխաւորապէս դիւանապետին կողմէ յանձնարարեալ խմբագրական գործոց պարապիլ։

Նոյնպէս ունի ուրիշ երեք դիւանադպիրներ, որոց երկուքին պաշտօնն է Հայերէն խմբագրութեանց ընդօրինակութեան և ուրիշ գրութեանց պարապիլ։

### ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ԴՐԱՍԵՆԵԱԿ

Այս դրասենեակին մէջ կարձանագրուին Պատրիարքարան եկած այն ամեն թղթերը, զորս Սրբազան Պատրիարքը կամ իւր Փոխանորդը կարդալէ ետև գալուան թուականը և որ ժողովոյ որ անկ են, վրան նշանակելով կը ղրկեն Արձանագրութեան դրասենեակը։

Արձանագրութեան պաշտօնեայն նոյն թղթոց համառօտութիւնն ընդհանուր տոմարի մը մէջ կարգաւորապէս արձանագրելէ ետև կը ղրկէ իրենց պատկանեալ տեղերն՝ անոնցմէ ստացագրութիւն առնելով. և երբ պատասխաններն ալ Խմբագրութեան դիւանէն առնու, արձանագրութեան տոմարին մէջ այնտեղ եղած գործողութիւնները կատարելէ ետև կը յղէ իրենց տեղերը։

Վերջապէս Արձանագրութեան պաշտօնեայն պատասխանատու է Դիւանապետին առջև Պատրիարքարան մտած ու ելած ամեն թղթոց համար, որոց պահպանութիւնն իրեն յանձնեալ է։

Արձանագրութեան պաշտօնեայն ունի իրեն հետ մէկ օգնական մը։

### ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԵԱՆ ԴՐԱՍԵՆԵԱԿ

Այս դրասենեկին պաշտօնն է

Ա. Վանօրէից, եկեղեցեաց, և ազգային որ և է հաստատութեանց թէ՛ շարժական և թէ անշարժ ստացուածոց վիճակը մանրամասն տեղեկութիւններ հաւաքել և կանոնաւոր տոմարներու մէջ արձանագրել։

Բ. Ընդհանուր ազգահամար մ'ունենալ, որ պիտի պարունակէ ամեն ազգայնոց արձանագրութիւնը, հանդերձ վիճակագրութեամբ պատահած ծննդոց, վախճանմանց և ամուսնութեանց։

Վիճակագրութեան պաշտօնեայն այս տեղեկութիւնները պիտի հաւաքէ վանահայրներէն, գաւառական վարչութիւններէն և Սահմանադրական Թաղական խորհուրդներէն, այնտեղ եղած հրահանգներն ու ցուցակներն անոնց հաղորդելով։

## Ը.

### ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԺԻՒՂԵՐԸ

Դատաստանական Խորհուրդն ունի օրէնսգէտ և ատենագէտ պաշտօնեայ մը, որ [illegible] նոյն Խորհրդին գործողութեանց օրինական և խմբագրական մասերը պիտի կատարէ, և մէկ ալ Թարգման դիւանադպիր մը՝ որոց պաշտօնն է դատական և ամուսնական արձանագրութեանց պարապիլ և փոխանորդագրանք դիւանադպրութիւնք կատարել։

Տնտեսական Խորհուրդը և Ելմտական Հոգաբարձութիւնը միանալով՝ ունին մէկ դիւանադպիր, մէկ համարակալ, մէկ գանձապահ և մէկ Անցագրատան պաշտօնեայ, որ Վարչութեան հրահանգին համեմատ իրենց պաշտօնը պիտի վարեն։

Ուսումնական և Վանօրէից Խորհուրդները և Կտակաց Հոգաբարձութիւնը միանալով, ունին մէկ դիւանադպիր մը, որոյ պաշտօնն է նոյն երեք ճիւղերուն վերաբերեալ գրական բոլոր գործողութիւնները և մանաւանդ Ուսումնական խորհրդոյ արձանագրութիւնները և վանական կալուածոց ու Ազգին նուիրեալ կտակաց արձանագրութիւնները կատարել յատուկ տոմարներու մէջ։

Այս խորհրդոց և Հոգաբարձութեանց պաշտօնէից ընտրութիւնն անոնց առաջարկութեա

Քաղաքական ժողովը նախագահութեան կանոնաւ և այնպէս եղածը կը տնօրինէ ։

## Թ.

Պատրիարքարանի խոհանոցը բոլորովին վերցուած ըլլալով, ամեն պաշտօնեայք իրենց յատկէն պիտի ընեն ու տեսուչ ծախքերնին, և քարտուղարներուն ու սենեկապաններուն զատ ուրիշ մէկը չ'պիտի կենայ գիշերներն 'ի Պատրիարքարան ։

Ուսկի Եւէտի Գուլէի Ս. Յակոբայ վանուց մէջ Հիւրանոց անուամբ յարկ մը յատկացուած է, ուր պիտի երթան Արքաղան Պատրիարքին յանձնարարականով 'ի Պատրիարքարան հիւր մնալու ստիպեալ անձինքը ։

Այս Հիւրանոցի ծախուց համար եկեղեցական սնտուկէն ամսական հազար ղրուշ յատկացուած է Հիւանդանոցի սնտուկին ։

## Ժ.

Պատրիարքարանն ունի փոխանորդ Հօր հսկողութեան տակ ընդհանուր վերակացու մը, որուն յանձնուած է Պատրիարքարանի բոլոր կահկարասիքը, և որ պատասխանատու է Ներքին մաքրութեան և կարգապահութեան, և իր հսկողութեան տակ պիտի ունենայ

Մէկ սենեկապան Դիւանատան համար
Մէկ » Փոխանորդարանի »
Երկու սպասաւոր ծառայութեան և մաքրութեան համար.

Հինգ վեց բարապան (կաւաս), որոց մէկը գլուխ պիտի ըլլայ, և ամենքը մէկէն ընդհանուր վերակացուին հսկողութեան տակն են ։

Մէկ ալ դռնապան ։

Վերոյիշեալ սպասաւորաց փոփոխութիւնը Փոխանորդ Հայրը տնօրինէ եւ' պատճառները Քաղաքական ժողովոյ կը հաղորդէ ։

## ԺԱ.

### ԿԱՆՈՆՔ ՎԱՆՑ ՊԱՇՏՕՆԷԻՑ

Վանաց բանաւոր-պատճառի որ և է պաշտօնեայ չ'պիտի զրկուի իւր պաշտօնէն ։

Ազգին ծառայութեան յատկացեալ պաշտօնեաներն երբ երկար ծառայութենէ եւ ծերութեան կամ ցաւագարութեան պատճառաւ անկարող լինին այլ եւս իրենց պաշտօնը շարունակելու, ըստ հետեւեալ հրահանգի դադարման ամսական պիտի առնեն մինչեւ ցմահ Ազգային Սնտուկէն ։

Անոնք' որ 10 տարի շարունակ առանց բարոյական արատաւորութեան եւ հաւատարիմ ծառայութեամբ անկարող գտնուին, պիտի առնեն իրենց ամսականին հարիւրին երեսունը, իսկ 10 տարիէն աւելի ծառայողներուն դադարման ամսականը համեմատաբար տարուէ տարի հարիւրին մէկ պիտի յաւելուի, այնպէս որ ամբողջ երեսուն տարի ծառայողները իրենց ամսականին հարիւրին յիսուն եւ քառասուն տարի ծառայողները հարիւրին վաթսուն դադարման ամսական պիտի առնեն ։

## ՀՐԱՀԱՆԳՔ ԿԱՄ ԿԱՆՈՆՔ ՀԱՄԱՐԱԿԱԼՈՒԹԵԱՆ ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ

## Ա.

### ՀԱՄԱՐԱԿԱԼ

1. Պատրիարքարանի համարակալը մասնաւոր ձեռնատետր մը կամ յիշատակարան մը պիտի բռնէ և ամեն դրամական գործողութիւնները պատահածին պէս հոն պիտի արձանագրէ թէ' մուտք ըլլայ և թէ ելք ։

2. Ձեռնատետրէն անմիջապէս գլխաւոր օժանդակ տետրակներու մէջ պիտի անցնէ պատահած գործողութիւնները, օժանդակ տետրակներուն երեսաչափերը ձեռնատետրին մէջ և ձեռնատետրին երեսաչափը օժանդակներուն մէջ նշանակելով ։

3. Ամեն օր ձեռնատետրին մէջէն նման գործողութիւններն ամփոփելով գումարները կրկնատումարի ձեւով օրինաւորապէս օրհաշիւը փոխադրելու և անկէց ալ մայր հաշիւն անցընելու է ։

4. Ամեն ամսագլուխ Տնտեսական խոր-

հուրդ և Ելմտական Հոգաբարձութիւնք սնտուկի տետրակը պիտի վաւերացնեն իւրաքանչիւր գործողութիւն իր հակակշռոյն հետ բաղդատելով ։

5. Նաև հաշուակալը արձանագրութեան տետր մը պիտի ունենայ Պատրիարքարանի սընտուկը աւանդ ձգուած գոյից համար, ուր իւրաքանչիւր աւանդին մուտքն ու ելքը կանոնաւորապէս պիտի արձանագրուի մինչ պատճառովը և ելլին հրամանովը, և այս աւանդները ծրարեալ և Պատրիարքարանի կնքովը կնքեալ պիտի ըլլան և ազգային սնտուկին մէջ պիտի պահուին ։

Նաև պիտի ունենայ առկախ վճարեալ գումարներու համար տետրակ մը, ուր ամեն առկախ վճարմունքներ թէ հաշուոյ մը մէջ իրարու տակ նշանակուած պիտի ըլլան և թէ զատ տեղերու մէջ և իւրաքանչիւր առկախ վճարմունք լրանալուն պէս գոցուելու են, քովը նշանակելով իրենց բուն արձանագրութեան տեղերը ։

6. Հաշուակալը պարտաւոր պիտի ըլլայ ամեն երեկոյ թղթի մը վրայ նշանակել սնտուկին մուտքն ու ելքը և անոնց տարբերութիւնը նաև առկախ վճարմունքները. այս թուղթը պիտի ցուցնէ Պատրիարքարանի սնտուկին մէջ գտնուած պատրաստ գումարը, զոր ինքն ստորագրելով և գանձապահին կնքել տալով պիտի յանձնէ Սրբազան Պատրիարքին ։

7. Առնուելու եկած բոլոր գումարները նախ Հաշուակալը պիտի հաշուէ յատկապէս պատրաստուած թղթի մը վրայ անոր համեմատ պիտի ընդունի գանձապահը և պիտի կնքէ նոյն թուղթը. այս թուղթը դարձեալ հաշուակալին գալով պիտի արձանագրէ և անդորրագիրը հաշուակալը պիտի տայ և Ելմտական Հոգաբարձութեան կնքովը վաւերացնելէն ետքը այնպէս եղած գործողութիւնները պիտի կատարուին ։

8. Նաև վճարման համար եկած հրամանագիրը նախ Հաշուակալը պիտի արձանագրէ և նոյն հրամանագրերուն վրայ արձանագրեալ ըսելով պիտի ստորագրէ և ետքը գանձապահը պիտի վճարէ, վճարման թղթերն ալ յատկապէս պատրաստուած ըլլալու են ։

9. Ամեն տարեգլուխ մայր հաշիւէն քաղելով պիտի պատրաստէ տարեկան հաշուեցոյցը և Տնտես. Խորհրդոյ և Ելմտական Հոգաբարձութեան պիտի ներկայացնէ և անոնց ստուգել տալով նոյնը պիտի յղէ առ Քաղ. Ժողովն.

Բ.

ԳԱՆՁԱՊԱՀ

10. Գանձապահը միայն սնտուկի տետրակ մը պիտի բռնէ որուն մէջ մուտքն ու ելքը կանոնաւոր կերպով պիտի նշանակէ ։

11. Մտից համար միշտ իրեն կնիքը պիտի գտնուի Հաշուակալին քովը և ելից համար ալ իր քով հրամանագրերը պիտի գտնուին Հաշուակալէն ստորագրեալ ։

12. Ամեն երեկոյ իր տետրակը Հաշուակալին սնտուկին տետրին հետ պիտի բաղդատէ և առ Սրբազան Պատրիարքն տրուած հաշուեթուղթը պիտի կնքէ ։ Գանձապահը պիտի ունենայ նաև երկու տետրակներ ալ, մին Պատրիարքարան աւանդ ձգուած գոյից համար և միւսը առկախ վճարմանց համար ։

Այս տետրակներուն ձևերը հաշուակալին այս մասին բռնած տետրակներուն ձևովը պիտի ըլլան ։

13. Գանձապահը ինքնին մէկուն բան մը չ'պիտի վճարէ, բայց միայն իրեն յղուած հրամանագրերու վրայ՝ որք արձանագրեալ և ստորագրեալ են Հաշուակալէն ։

Գ.

ԱՆՑԱԳՐԱՑԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՅ

14. Անցագրատան պաշտօնէոյն իրեն եկած գործերը նախ Հաշուակալին պիտի զրկէ, որ Թաղ. Խորհրդէն տրուած ծանուցագրին համեմատ Պատրիարքարանէն առնուելիք տուրքը հաշուէ և պաշտօնական թղթի մը վրայ նշանակէ ստորագրելով, որուն համեմատ գանձապահը կընդունի դրամը և կը կնքէ թուղթը, գանձապահէն կնքեալ թուղթը հաշուակալը պահելով պաշտօնական անդորրագիրը կուտայ և ատոր վրայ Անցագրատան պաշտօնեայն պաշտօնական ծա-

Նուիրագիրը կը գրէ և համապատասխանն ալ զայն կը կնքէ պաշտօնական կնքով ։

15. Ազգագրատան Պաշտօնէին բոլոր գործողութիւնները այս կերպով կը կատարուին ։

16. Ազգագրատան պաշտօնէութեան տետրակ մը պիտի բանէ ուր պիտի նշանակէ իր գրած ծանուցագրերը իրենց տեսակով, թուովը և անձանց անուններովը, այս տետրակը այնպիսի ձևով մը պիտի ըլլայ որ ամեն առեն կարող ըլլայ մէկը դիւրութեամբ յայտնապէս տեսնելու որ քանի տեսակ ծանուցագիր գրած է և գանձապահը իւրաքանչիւր տեսակին համար ո՞րչափ դրամ ընդունած է և համագումարը ո՞րչափ է ։

## Դ.

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿԱՆՈՆՔ ԵԼՄՏԱԿԱՆ

Պատրիարքարանի անտուկին մուտքերն են հետևեալ հասոյթները.

Ա. Կալուածական ծանուցագրերը.

Բ. Ճանապարհորդաց անցագրի և արհեստաւորաց հրամանագրի վկայականք ։

Գ. Նշանտուութեան և հրամանի հասոյթ.

Դ. Գաւառական մուքաթա ըսուած և մայրաքաղաքիս եկեղեցիներէն առնուած քանչլէր ըսուած տուրքերը.

Ե. Կեդրոնական տուրք.

Զ. Զանազան հասոյթներ,

Եւ անտուկին ելքն են,

Ա. Պատրիարքարանի պաշտօնէից ամսականք.

Բ. Յատկացեալ ամսականք.

Գ. Նշանտուրի ծախք.

Դ. Զանազան կամ ընդհանուր ծախք.

18. Կալուածական ծանուցագրերու համար յատկապէս Ելմտական Հոգաբարձութեան կողմէն թուագրեալ և ստորագրեալ 50, 110, 160 և 260 դրուշնոց անդորրագրեր պէտք են, որք համրանքով Համարակալին տրուելու են իրմէ ստորագրութիւն առնելով, այս ստորագրութիւնը Տնտեսական Խորհրդոյ և Ելմտական Հոգաբարձութեան դիւանը պիտի մնայ և այս գործողութիւնը պիտի կատարուի ըստ 14 րդ յօդուածի ։

19. Ճանապարհորդաց անցագրի և արհեստաւորաց հրամանագրի վկայականի հասոյթը ամբողջապէս Հիւանդանոցի վերաբերելով, Հիւանդանոցի Հոգաբարձութեան կողմէն թուագրեալ և ստորագրեալ անդորրագրեր պէտք են, որք համրանքով համարակալին տրուելու են իրմէ ստորագրութիւն առնելով, այս ստորագրութիւնը Հիւանդանոցի Հոգաբարձութեան քով կը մնայ և այս գործողութիւնը կը կատարուի ըստ 14 րդ յօդուածի և շաբթէ շաբաթ կամ ամսէ ամիս համարակալը Հիւանդանոցի Հոգաբարձութեան հրամանին վրայ հաշիւը կատարելով և ստորագրելով և ստորագրել տալով Հիւանդանոցի Պաշտօնէին գանձապահը. կը վճարէ Հիւանդանոցի վերաբերեալ այս հասոյթը ։

Համարակալը Հոգաբարձութեան հրամանագիրը ստորագրել կուտայ տոմսին ընդունող Պաշտօնէին գումարը մէջը նշանակել տալով ։

20. Նշանտուութեան հասոյթին համար փոխանորդ Հօր և Հիւանդանոցի Հոգաբարձութեան կողմէն կարգեալ պաշտօնէին ստորագրութեամբը տարիձանը, նշանտուողներուն անունը, մականունը և ուրիշ պարագաները նշանակեալ թուղթ մը տալ պէտք է համարակալին, որ ըստ կանոնի հաշուելու է և հաշիւը նոյն թղթին վրայ նշանակելով ստորագրելու է. այս թղթին համեմատ գանձապահը դրամը առնելու և ստորագրելու է, այս թուղթը Համարակալը պահելով պաշտօնական անդորրագիրը կնքեալ և ստորագրեալ յանձնելու է և անկէ ետքը Փոխանորդ Հօրը ուրիշ պաշտօնական արձանագրութիւնները և գործողութիւնները կատարելու է ։

Հրամանագրի համար ալ այս ձևը բռնելու է ։

Հիւանդանոցի բաժինն ալ պիտի վճարուի 19 րդ յօդուածին համեմատ ։

21. Գաւառական մուքաթա և մայրաքաղաքիս եկեղեցիներէն քանչլէր անուամբ տարեկան յատկացեալ տուրքի համար յատուկ անդորրագրեր շինել պէտք է, որք համարակալին քով կը մնան և երբ վճարուի և գանձապահը համարակալին շինած հաշուեթուղթը կնքէ, հա-

մարմինը վաւերացնել և կնքել անդորրագրերին կուսայ:

Մուգաւթայի վերաբերեալ անդորրագրերը թէ՛ Սրբազան Պատրիարքը և թէ Ելմտական Հոգաբարձութիւնն ստորագրած ըլլալու է:

Իսկ քանչէլէրի անդորրագիրը միայն Ելմտական Հոգաբարձութիւնը կստորագրէ:

22. Կեդրոնական տուրքը՝ տրոց Պաշտօնէին ձեռք կը հաւաքուի համապատասխան ընդունուած անդորրագրերուն վրայ: Տրոց անդորրագրերը Ելմտական Հոգաբարձութեան կողմէն կը պատրաստուին, որք թուագրեալ և ստորագրեալ ըլլալու են և համրանիշով յանձնուելու են համարակալին իր ստորագրութեան վրայ. այս ստորագրութիւնը Տնտես. Խորհրդոյ և Ելմտական Հոգաբարձութեան դիւանը պիտի մնայ:

Երբ տրոց պաշտօնեայն հաւաքած գումարները կեդրոնական սնտուկին կը յանձնէ, համարակալը գանձապահին ստորագրութիւն մը առնելով տրոց պաշտօնէին անդորրագիր կուտայ:

23. Զանազան հասոյթներն են.

Ա. Եկամուտ համար Պատրիարքարանի՝ դիմումներէն առնուած մէկ մէկ մէճիտիէն՝ իբրև ծախք գրուած թէզքէրէին.

Բ. Որ և իցէ ստորագրութեանց և մկրտութեան վաւերացմանց համար առնուած մէկ մէկ մէճիտիէն:

Գ. Փոխանորդագրի վաւերացման համար առնուած երկուքական մէճիտիէն:

Դ. Գաւառաց Առաջնորդաց և գաւառական ազգային ժողովոց վաւերացման համար ղրկուած Պատրիարքարանի կոնդակներէն իրենց մուգաւթային վրայ 10 առ % նմանօրէն մայրաքաղաքիս քարոզիչներուն և 'ի վաւերացումն Թաղ. Խորհրդոց տրուած կոնդակներուն համար իրենց քանչէլէրին վրայ 10 առ % առնուած տուրքը:

Ե. Մայրաքաղաքիս Թաղ. Խորհուրդներէն տրուած կալուածական վկայագրերուն համար յատուկ դրոշմաւոր և բանով (քօչան) թղթեր կը պատրաստուին Ելմտական Հոգաբարձութեան կողմէն կնքեալ, որոց համար 10 ական փարայ կառնուի Թաղ. Խորհուրդներէն:

Զ. Պաշտօնատանական հաշիւ.

Ասոնց համար դիւանական հաշիւ առնելով անդորրագրեր ըլլալու են Ելմտական Հոգաբարձութեան կողմէ ստորագրեալ և թուագրեալ որք համրանիշով յանձնուելու են Համարակալին իրմէ ստորագրութիւն առնելով և իր ստորագրութիւնն ալ Տնտեսական և Ելմտականի դիւանը պահելով պէտք եղած առենը ստուգմէ կարող վերայիշեալ կանոնաց համեմատ բունին մէջ թէ՛ առնուած դրամը և թէ ինչպէս նշանակելով, իսկ տրուած մասին վրայ միայն լատակը նշանակելով բայց պէտք է որ բունին մէջ նաև վճարողն ալ ստորագրէ:

24. Ամէն ամսագլուխ համարակալը կը պատրաստէ պաշտօնէից ամսականները պարունակող թուղթ մը, որ պիտի նշանակուած ըլլան բոլոր պաշտօնէից անունները դիմացը իրենց ամսականը, այս թուղթը Ելմտական Հոգաբարձութենէն վաւերացեալ պիտի ըլլայ և Սրբազան Պատրիարքը տեսնելով հրաման կընէ 'ի վճարումն ամբողջապէս կամ մասամբ % այսչափ ըսելով սնտուկին դրամական վիճակին համեմատ, այս թուղթը համարակալն ալ ստորագրելէ ետև գանձապահին կը յանձնուի և իւրաքանչիւր պաշտօնեայ իր առած դրամը իր անուանը դիմացը գրելով կստորագրէ:

Ամէն ամիս բոլոր Պաշտօնէայք հաստատապէս պիտի ընդունին իրենց ամսականները և երբ ամսականք թերհաս վճարուին, ամենուն ալ նոյն համեմատութեամբ թերհաս պիտի տանեն:

25. Ուրիշ ամէն ամսական ծախքերու համար Տնտեսականին ու Ելմտականին հաճութիւնն առնելով և անոնց քննութեամբը ստորագրեալ հաշուեցուցակներու վրայ Ս. Պատրիարքը հրաման կընէ և Համարակալը արձանագրած ըլլալուն համար ստորագրութիւնը դնելէն ետքը գանձապահը կը վճարէ առնողին նոյն թուղթը ստորագրել տալով:

26. Տնտես. Խորհուրդն և Ելմտական Հոգաբարձութիւնն ամենուն անձամբ ծախք չը

ալխոյ ընեն, այլ Պատրիարքարանի Պաշտօնեայք ալխոյ ընեն իրենց հրամանաւը և մինչ ինչ բան որ առնուլ կամ չինուի առաջին կամ չինողէն իբրև հատուցանելի տուրքդրութիւն առնելու է տրուած նուէրները կամ չինուած բանը մէջը գրուած ըլլալու պայմանաւ ։

27. Թէ Պատրիարքարանի և թէ Թաղ. Խորհուրդներէ և մասնաւորներէ տրուած ծանուցագրերը պէտք է որ ուղղութեան յատուկ դրոշմը ունենալէն զատ նաև թուահամար և Պատրիարքարանի կնիքէ տրուած ըլլան պէտք եղած տեղերը, և այս ամեն ծանուցագրերը որ յիշեալ կերպով չեն, ապօրինաւոր կը համարուին, և այս ազգային կարգադրութիւնը հարկ եղած տեղերը պէտք է ծանուցանել ։



Ժողովս նկատելով որ մինչև այժմ Թաղական խորհրդներուն և երեսփոխանութեան ընտրութեանց առեն մինչ խառնակութիւնը և գժտութիւնը պակաս չէ, այս խառնակութեանց առջևն առնելու նպատակաւ ընտրական գործողութեանց համար հետևեալ հրահանգը պատրաստեց ։

# ՀՐԱՀԱՆԳ

## ԸՆՏՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹԵԱՆՑ

### ԸՆՏՐՈՂԱԿԱՆ ԺՈՂՈՎ

1. Թաղական խորհուրդը Ընտրողական ժողով կը կազմէ ընդ նախագահութեամբ Թաղին Քարոզչին կամ անոր չեղած ատեն՝ Աւագերիցուն ։

2. Թաղական խորհուրդը գումարի բաւականութեամբ երկրէն մինչև վեց Թաղեցիներ կընտրէ, որք Թաղական խորհրդոյ հետ ի միասին կը կազմեն Ընտրողական ժողովը ։

3. Ընտրողական ժողովոյ անդամք ընտրողութեան իրաւունք և հանգամանք ունեցող պատուաւոր Թաղեցիներէն պիտի կազմուին ։

4. Ընտրողական ժողովը ընդ նախագահութեամբ Քարոզչին կամ Աւագերիցուն կը կազմէ իր Դիւանը, որ կլլայ Թաղական խորհրդոյ դիւանին մէջէն կամ դուրս կրնայ ըլլալ ըստ հաճութեան ժողովոյն ։

5. Ընտրողական ժողովը Թաղին մէջ ըստ Սահմանադրութեան ընտրողութեան իրաւունք ունեցողներուն ստուգելով, այսուհետև կարգաւ ընտրողաց ցանկ մը կը պատրաստէ, նշանակելով ըստ կարելւոյն ընտրողաց անունը, մականունը, արհեստը, փողոցը և տանը թիւը ։ Այս ցուցակը առ նուազն ութ օր կը կախէ Թաղական խորհրդարանին ժողովրդեան տեսանելի կերպով, հրաւիրելով ծանուցմամբ որ դիտողութիւն ունեցող անձինք կամ անձամբ Ժողովոյն ներկայացնեն իրենց դիտողութիւնը, կամ բանկը դրուած յատուկ տուփի մը մէջ գրութեամբ, որ պիտի անուննին ստորագրեն, և իրենց բնակութեան փողոցն ու տանը թիւը նշանակեն ։ Անանուն դիտողութիւնք ընդունելի չեն ։

6. Ընտրողական ժողովոյ դիւանը՝ ներկայացեալ դիտողութիւնները քննութեան կ'առնու, և Ընտրողական ժողովոյն գիտութեամբը յաւելուած կամ ջնջել կրնայ ընտրողաց ցուցակին վրայ, ըստ ընկալեալ օրինաւոր տեղեկութեանց կամ դիտողութեանց ։

7. Ով որ մինչև քուէարկութեան նախընթաց օրուան երեկոյ դիտողութիւն մը չէ ներկայացուցեր Ընտրողական ժողովոյն ընտրողաց և ընտրելեաց ցանկերուն վրայ, քուէարկութեան օրը կամ յետոյ այս մասին իրաւունք չունենար դիտողութիւն կամ բողոք ներկայացնելու ։

### ԸՆՏՐՈՂՔ

8. Ընտրողութեան իրաւունք ունին Թաղին այն բնակիչները միայն որոնք Կեդրոնական տուրքը Թաղային տետրին մէջ անուննին արձանագրել տուած են ։

9. Թաղականի ընտրութեան մասնակցելու համար Սահմ. 55 դ. յօդուածոյն համեմատ իրաւունք ունի ամեն անձ որ 25 տարին լրացուցած է և ըստ 67 դ. յօդուածոյ Սահմ. ընտրողական իրաւունքէ զրկուած չէ ։

10. Երեսփոխանական ընտրութեան համար ըստ Սահմ. 65-66 և 67 դ. յօդուածոց ընտրողութեան իրաւունք ունին այն Թաղեցիք որ 25 տարին լրացուցած, Օսմանեան հպատակ և

տարեկան 75 ղրուշ տուրք տուող են. և որ յրէական յանցանօք դատապարտեալ չեն. Ազգային գործոց մատակարարութեան մէջ նենգութեամբ բռնուած չեն, Ազգային Ժողովոց մէկուն կողմէն Ազգային գործոց չգործածուելու վճիռ ընդունած չեն, Տէրութեան դատարաններուն կողմէն զգաստացուցիչ պատժոյն պայմանաժամը լրացուցած են, վերջապէս խելագարութեամբ անբաւական ճանչցուած չեն օրինաւոր կերպիւ ։

## ԸՆՏՐԵԼԻՔ

11 . Թաղական խորհրդոյ համար ընտրելի են անոնք՝ որ Թաղական խորհրդոյ ընտրող ըլլալու իրաւունք ու հանգամանքներ ունին ։ Իսկ Երեսփոխանութեան համար ընտրելի են ըստ Սահմ. 68 դ. յօդուածոյ անոնք՝ որ 30 տարին լրացուցած են, Օսմանեան հպատակ են, Տէրութեան օրինացը տեղեակ, և ազգային գործոց հմուտ են և ընտրողութեան իրաւունքէն զրկուած չեն, ըստ 67 դ. յօդուածոյ Սահմանադրութեան ։

12 . Ընտրողական Ժողովը գաղտնի քուէարկութեամբ ընտրելեաց եռապատիկ թուով ցանկ մը կը պատրաստէ, զոր կը կախէ Եկեղեցւոյն բանկայի՝ առ նուազն 3 օր, ի տես Ժողովրդեան, ծանուցանելով որ ընտրողք ազատ են այն ցանկէն դուրս ալ ընտրելեաց քուէ տալ ։

## ՔՈՒԷԱՐԿՈՒԹԻՒՆ

13 . Ընտրողական Ժողովոյ Նախագահը քուէարկութեան որոշեալ օրէն առաջ հրատարակել կուտայ ի լրագիրս և Եկեղեցւոյ ու Թաղին դպրոցներուն դռները ծանուցում փակցնելով, և յիշելով հրաժարեալ երեսփոխանաց կամ Թաղականաց անունը, անոնց փոխընտրելի ըլլալը, ընտրուելիք երեսփոխանաց կամ Թաղականաց թիւն և ընտրելութեան պայմանները, և քուէարկութեան և քուէհաւաքի որոշեալ օրն ու ժամը. և թէ՝ մինչ ի քուէարկութեան ուրբաթ երեկոյ ընտրողաց և ընտրելեաց ցանկին վրայ հարկ է դիտողութիւննին ներկայացնեն, և թէ յիշեալ պայմանաժամէն ետքը ոչ ոք իրաւունք ունի դիտողութիւն ներկայացնելու ։

14 . Եթէ ընտրողն իր քուէն անձամբ չկրնալով բերել, պէտք է ստորագրեալ նամակաւ մը զայն ղրկել, կամ պահարանի մը մէջ դնել և պահարանին վրայ իր անունը ստորագրել. Նամակաբերն եւ պարտաւոր է միանգամայն նոյն պահարանին վրայ ստորագրել այս կերպով. «այս ինչ անձին կողմանէ նամակաբեր» (ստորագրութիւն)։ Եթէ նամակաբերը գրել չգիտեր՝ Ատենադպիրը կը գրէ պահարանին վրայ անոր անունը, և ան ալ խաչ նշան մը կը քաշէ անուանը ներքև ի ներկայութեան Ընտրողական Ժողովոյ ։

15 . Եթէ քուէն որոշեալ ժամանակէն ետքը գայ՝ ընդունելի չէ ։

16 . Եթէ քուէթուղթին մէջ ընտրելեաց թիւէն աւելի անուններ գտնուին՝ քուէն կարգաւ ընդունելի է բայց աւելորդ անունները և ստորագրեալ քուէթուղթերը ընդունելի չեն ։

17 . Ընդունելի չէ այն քուէն՝ որ ընտրելութեան հանգամանքներէ զուրկ անձի մը տրուած է ։

18 . Քուէարկութիւն կատարուելիք կիրակուան նախընթաց շաբաթ առտու Ընտրողական Ժողովը կը գումարուի, եղեալ դիտողութիւնները ի նկատ կառնու, վերջնական կերպով ընտրողաց ցուցակին վրայ ուղղութիւններ կընէ՝ եթէ նոր հարկ կայ. ատենագրութեան մէջ կը նշանակէ. և քուէարկութեան ժամանակ ներկայ գտնուելիք քննիչներն ու անդամները կորոշէ ։

19 . Քուէարկութեան ժամանակ Ընտրողական Ժողովոյ անդամք Ներկայութեան տաճարին մէջ անուններին նախ կստորագրեն, և յետոյ մեծագոյն մասամբ ստուգելով քուէատուփին դատարկ ըլլալը, կը կնքեն զայն պաշտօնապէս և քուէարկութեան սկիզբէն մինչև վերջը կը հսկեն քուէատուփին վրայ ։

20 . Քուէարկուք կը ներկայացնեն իրենց քուէն Ընտր. Ժողովոյն կամ՝ անոր քննչացը, որ ստուգելով մէկ քուէթուղթէ աւելի չըլլալը՝

պարունակութիւնք չը կարդացուելու եղանակաւ քուէատուփին մէջ կը ձգեն առաջի քուէարկուին, կամ նորա ստորագրել կուտան ընտրողաց տոմարին մէջ։ Իսկ եթէ քուէարկուն գիր գրել չը գիտեր, Ատենադպիրը ի ներկայութեան քուէարկուին կամ նորա նամակաբերին կը նշանակէ քուէարկուին կամ նամակաբերին գրել չը գիտնալուն պատճառաւ ստորագրած չըլլալը, և նա խաչ նշան մը կը քաշէ ներքևը։

21. Նամակաւ եկած քուէները կը նշանակուին ընտրողաց տոմարին մէջ ընտրողին անուանին առջև, յիշատակելով թէ՝ նամակաւ եկած է քուէն ի ձեռն այս ինչ անձին (14)։

22. Եթէ քուէի մը վրայ կասկած յայտնուի, քննիչք կը պահեն այն քուէն և Նախագահին կը ներկայացնեն, որ Ընտրողական ժողովոյ մեծագոյն մասամբը կորոշէ ընդունելի կամ անընդունելի լինելը։

23. Քուէներն եկած միջոցին նոյն քուէներուն վրայ ներկայ ժողովուրդը իրաւունք ունի քուէատուփը ձգուելէն առաջ դիտողութիւն ընել Ընտրողական ժողովոյն, որ պարտաւոր է ի նըկատի առնուլ և ըստ այնմ ընդունիլ կամ մերժել նոյն քուէները պատասխանատուութիւնը իր վրայ առնելով. իսկ քուէատուփը ձգուելէն ետքը ո՛չ ոք իրաւունք ունի բողոքելու։

## ՔՈՒԷՀԱՄԱՐ

24. Քուէհամարի որոշեալ ժամը երբ կը հասնի, քուէարկութիւնը կը դադրի. և Նախագահը քուէատուփը բանալէն առաջ ներկայութեան տոմարին մէջ քուէարկութեան հսկող անդամոց անուանները նշանակել կուտայ, նոյնպէս նաև քուէհամարի ներկայ գտնուելիք անդամոց և քննչաց անունները։ Այս քննիչք կարող են նաև հանդիսատես ժողովրդեան մէջէն ընտրուիլ ի Նախագահէն ըստ պիտոյից։

25. Նախագահը կը ծանուցանէ թէ քուէհամարի որոշեալ ժամը հասած ըլլալով, քուէարկութիւնը դադրած է։ Այնուհետև քուէատուփին կնիքները քննելէն յետոյ բանալ կուտայ զայն, և կը յանձնէ քուէները համրել մի առ մի ի տես ժողովրդեան։

26. Յետոյ կարձանագրուի ի ձեռն Ատենադպրին քուէարկուաց և քուէից թիւը։ Եթէ երկու թիւք անհամաձայն գան, Նախագահը Ընտրողական ժողովոյ հետ կը քննէ (եթէ հարկ գտնէ՝ առանձնանալով) և եթէ ապօրինաւորութեան կասկած տեսնուի, իսկոյն կը հրատարակէ թէ քուէարկութիւնը իբրև չեղեալ կը նկատուի, և առաջիկայ կիրակի նորէն քուէարկութիւն ընել կորոշուի ըստ 77 դ. յօդուածոյ Սահմանադրութեան։

27. Երբ քուէներուն համրանքը քուէարկուաց թուոյն հետ ճիշդ գայ՝ կը նշանակուի. և յետոյ մէկ կամ քանի մը գրասեղանի վրայ կը բաշխուին քուէթուղթերը, նոյնպէս և զոյգ զոյգ քննիչներ ըստ թուոյ գրասեղանոց, կըսկըսին գրել քուէթուղթերուն պարունակութիւնը ի տես ժողովրդեան։ Երբ աւարտի՝ քննիչք կստորագրեն այն թղթերը. յետոյ մէկ թղթի մը վրայ արդիւնքը կը միացնեն քուէթղթոց հետ և կը յանձնեն Նախագահին։ Քննիչք իրենց կարդացած քուէթղթերը զատ պահարանի մէջ կը դնեն, վրան կստորագրեն, և գոցելով Դիւանին կը յանձնեն։

28. Նախագահը կը հարցնէ թէ՝ դիտողութիւն ունեցող կա՞յ քուէհամարի գործողութեանց վրայ։ Եթէ օրինաւոր դիտողութիւն մը լինի՝ քուէհամարը կրկին կատարել կուտայ միևնոյն նիստին։ Իսկ եթէ օրինաւոր դիտողութիւն բնաւ չլինի՝ Ընտրողական ժողովոյ տոմարին մէջ քուէհամարին արդիւնքը՝ քննչաց տուած քուէհամարի թղթոցը համեմատ կարձանագրուի ի ձեռն Ատենադպրին. որոյ ներքև կստորագրեն Նախագահ և Ընտրողական ժողովոյ անդամք։

29. Եթէ քուէն հաւասար թուով տուացուի՝ տարիքով երիցագոյնն է ընտրելի։

30. Եթէ բացարձակ առաւելութիւն չը գոյանայ, երկրորդ անգամ քուէարկութիւն կըլլայ։ Եւ այս անգամ Ընտրողական ժողովը քուէհամարի գործողութեան մէջ յաջորդաբար առաւելագոյն երկու քուէ ստացողներէն կրկնապատիկ թուով ցանկ մը կը պատրաստէ, և ընտրողք՝ այս ցանկէն դուրս անձանց քուէ չեն կըրնար տալ։

31 . Ընտրութիւնը աւարտելէն յետոյ՝ Նախագահը պարտի ընտրելոց հաւանութիւնն ընդունիլ գրով ։ Եթէ հրաժարողք գտնուին՝ Ընտրողական ժողովը ի ձեռն Նախագահին համեմատական քուէարկութեան միջէն քուէից յաջորդ առաւելութիւն ստացողները հետզհետէ կը հրաւիրէ ի նոյն պաշտօն, մինչև որ ընտրելոց թիւը լրանայ ։ Այս պարագան հարկ է որ յատկապէս նշանակուի Քաղաքական ժողովոյ ընկալեալ տեղեկագրին մէջ ։

32 . Նախագահը քուէատուփին մէջ պահել կուտայ քուէթղթերը, եղած նամակները, արձանագրութիւնները և ամէն այն թղթերը՝ որ նոյն քուէհամարին կը վերաբերին, և կը կնքէ քուէատուփը իւր և Թաղական խորհրդոյ կնքով ։ Այս թղթերը կը պահուին մինչև ցվաւերացումն ընտրելոց Ազգ. Քաղաքական ժողովէն ։ Այնուհետև արձանագրութեանց տոմարը կը պահուի Թաղական խորհրդոյ դիւանատան մէջ, իսկ քուէթուղթք և նամակք կը ջնջուին ։

33 . Նախագահը իւրեն պաշտօնական ստորագրով մը քուէարկութեան արդիւնքը կը հաղորդէ Ամեն. Ս. Պատրիարքին՝ նշանակելով ընտրելոց անունը, մականունը, արհեստը, անոնց յանձնառութիւնը և քուէարկութեան բոլոր պարագաները ։ Այս տեղեկագիրը կստորագրեն Նախագահը և Ընտրողական ժողովոյ Դիւանը, և կը կնքուի Նախագահին և Թաղական խորհրդոյ կնքով ։

34 . Քուէարկութեան մասին Քաղաքական ժողովը չը պիտի ընդունի այն բողոքը որ մինչև քուէհամարի սկիզբը կանխաւ Թաղին Ընտրողական ժողովոյն ներկայացուած չէ, բայց եթէ ներկայացուած է կանխաւ՝ Քաղաքական ժողովը նկատողութեան կառնու ։ Նոյնպէս քուէհամարի մասին եղած բողոքը կընդունի՝ ու նախ բացատրութիւն կուզէ Ընտրողական ժողովէն ։ Այնուհետև եթէ հարկ տեսնէ՝ իր կողմէն կարգեալ քննիչի մը ներկայութեանը կնքեալ քուէատուփը բանալ և քուէհամարի գործողութիւնը կրկին կատարել կուտայ և արդիւնքը ճշդելէն յետոյ հրատարակել կուտայ ի լրագիրս ։

35 . Վաւերացման վարչական որոշումը Նախագահին հանելէն յետոյ Ընտրողական ժողովը լուծուած կը համարուի ։

36 . Սոյն հրահանգէն մէյմէկ օրինակ չըմոռնալու պիտի տեսնեն իւրաքանչիւր Թաղական խորհուրդք ։ Իսկ ընտրական գործողութեանց ժամանակ պիտի կախուի ի տես ժողովրդեան ։

Թ.

## ՏԵՍՈՒՉ · ԽՈՐՀՈՒՐԴՔ ԵՒ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆՔ

Սահմանադրութիւնն արդէն նախատեսելով որ Ազգային Կեդրոնական Վարչութեան Քաղաքական ժողովը բեռնաւորած էր տեղական, պաշտօնական և անհատական խնդիրներով և հազիւ կարող կըլլար անոնց մէջ պատահած գժտութեանց պատճառները վերցնելով խաղաղութիւնը վերահաստատելու, գաւառացւոց անհամար ցաւերը մտիկ ընելով թէ Բ. Դրան և թէ Կուսակալութեանց հայրական խնամքին ու գթութիւնն անոնց վրայ հրաւիրելով իրաւանց և արդարութեան համեմատ խեղճ և աղքատ գաւառացի ազգայինները գրկանքէ և թշուառութենէ ազատելու. ժողովոց և առաջնորդաց, ժողովրդեան և ժողովոց մէջ պատահած անհամաձայնութիւնը վերցնելով խաղաղութիւն և համաձայնութիւն զօրացնելու, և նաև Քաղաքական ժողովը միայն գործադրութիւնն որոշող ու վճռող մարմին մը ըլլալով՝ ազգին ընդհանուր թէ բարոյական և թէ նիւթական յառաջադիմութեան վերաբերեալ գործոց համար Տեսուչ խորհուրդներ և Հոգաբարձութիւններ սահմանած էր. ուստի Քաղաքական ժողովս անմիջապէս իւր ուշադրութիւնը Տեսուչ խորհրդոց և Հոգաբարձութեանց վրայ դարձնելով նախորդ Վարչութեան օրով սահմանադրապէս կազմեալ խորհուրդներն ու Հոգաբարձութիւնները վերահաստատեց, և պակասները լրացուց, և Սահմանադրական տարեգլխուն՝ այսինքն 1874 մայիս 1ին կիսով չափ նորոգեց ըստ կանոնի ։

### Ժ. ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ

Ժողովս ազգային դաստիարակութեան խընդիրը զանազան նախերու մէջ նկատողութեան առաւ և Ուսումնական խորհրդոյ հետ շատ անգամ խորհրդակցելով հետևեալ կարևոր որոշումները տուաւ :

Ա. Պարտաւորեց այն ամէն Թաղական խորհուրդներն՝ որք տակաւին դպրոցական հոգաբարձութիւն կազմած չէին, փութով կազմել և Ուսումնական խորհրդոյ հետ յարաբերութիւն հաստատել :

Բ. Նորոգեց Սահմանադրութեան գործադիր յանձնաժողովը՝ որ սրաց մը դադրած էր գործելէ, որպէս զի գաւառաց մէջ Սահմանադրութիւնը գործադրուի և գաւառական Ուսումնական խորհուրդները կազմուին :

Գ. Կեդրոնական սնտուկի պիւտճէին մէջ առ այժմ ամսական 3000 դրուշի գումար մը սահմանեց յանուն Ուսումնական խորհրդոյ, որպէս զի Թեմական կերպով 2 կամ 3 ուսումնական ձեռնհաս պաշտօնեաներ ընտրուին և տեսչութիւն ընեն ազգային վարժարանաց վըրայ և Ուսումնական խորհրդոյ հրահանգին գործադրութեանը հսկեն : Վերոյիշեալ գումարէն 1500 դրուշ Ուսումնական խորհրդոյ առաջարկութեան համեմատ առայժմ Պօլսոյ ազգային վարժարանաց համար ընտրուած տեսչին վճարել որոշեց :

Դ. Ուսումնական խորհրդոյ առաջարկած Ակադեմիայի հաստատութիւնն ալ պատեհ ժամանակի մը ձգեց :

Ե. Նաև որոշեց որ Ուսումնական խորհուրդն աշխատի սահմանել միօրինակ ուսուցման եղանակ մը և զայն գործադրել տալ վարժարանաց մէջ Նախակրթարանի գրութեան վերածելով զանոնք, ի բաց առեալ միայն այնպիսիներն որք հաստատուն և գոհացուցիչ եկամուտներ ունենալով կարող են երկրորդական վարժարան ըլլալ :

Զ. Նաև առաջարկեց Ուսումնական խորհըրդոյ՝ որ վարժապետներն երեք կարգի զատէ, և իւրաքանչիւր կարգի համար զատ ամսական որոշէ :

Է. Բարեգործական ընկերութեան գործադիր ժողովոյն ատենապետն ըստ հրաւիրոյ ժողովոյս գալով յայտնեց որ տակաւին նոյն ընկերութիւնը գոյութիւն ունի և թէ հաւաքեալ 3350 լիրայի գումարն ապահովելով տեղ մը կենայ և անոր տոկոսը կը բանի. և եթէ նոյն ընկերութեան Ընդհանուր ժողովոյն մէջ որ այս օրերս պիտի գումարի, այդ գումարն իւր նպատակին համեմատ գործածել որոշուի, պիտի առաջարկուի որ այդ գումարը յանձնուի Արմաշու վանից, որ հոգևորականութեան դպրոց մ՚ունենալու ամէն յատկութիւններն ունի : Եւ խօսք տուաւ նոյն Ընդհանուր ժողովոյ որոշումը Վարչութեանս հաղորդելու :

Ը. Վարժապետանոցի մասին Վարչութիւնն անոր կարևորութեանն ընդունելովն հետ գործադրութիւնն ալ որոշեց. միայն ուզեց գիտնալ աւելի հաստատ կերպով թէ անոր շինութեան համար Ղալաթիոյ Եկեղեցին ո՞րչափ պարտական պիտի ըլլայ և այդ պարտքը պիտի կարենա՞յ վճարել Ուսումնական խորհրդոյ ցուցած հաշուոյն համեմատ. անոր համար յանձնաժողով մը կազմեց որ Ղալաթիոյ կալուածական հոգաբարձութեան և Ուսումնական խորհրդոյ հետ միանալով մէկ քանի հմուտ ճարտարապետներու հետ խորհրդակցին, և անոնց թէ շինութեան և թէ պարտուց վճարման անղեկագրին համեմատ գործադրուի :

Թ. Մայրաքաղաքիս Թաղական խորհրդոց հասոյթը հաշուելու և իրենց դպրոցներուն ամսական տրուելիք գումարներն որոշելու համար յանձնաժողով մ՚ալ կազմուեցաւ, որոյ անդամ որոշուեցան Քաղաքական ժողովէն մէկ քանի անձ, Տնտեսական խորհուրդէն մէկ անձ և Ուսումնական խորհրդոյ դիւանը, որ ամէն Թաղական խորհրդոյ տարեկան հասոյթն ստուգելով և դպրոցին այցելութիւն ընելով՝ թէ Եկեղեցւոյն դպրոցին վճարուելիք ամսական գումարը և թէ ուսմանց յայտագիրն որոշեն :

Ահա Ուսումնական խորհրդոյ այն ամէն առաջարկութիւններն՝ որ գործադրելի կրնային ըլլալ. Վարչութիւնս նկատողութեան առնելով յարմար որոշումներ տուած է ի գործադրութիւն

Իսկ դաստիարակութեան համար պիւտճէին մէջ աւելի գումար մը սահմանելու կարեւորութիւնը հասկցած եւ պէտքն զգացած է, բայց պարտաւորեալ է սպասելու թէ նոր կանոնադրութեան համեմատ ազգային ընդհանուր տուրքն ո՞րչափի պիտի կարենայ հասնիլ:

## Զ. ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ ԵԼԵՒՄՏԻՑ ԵՒ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Ազգային հաստատութեանց Տնտեսական եւ Ելմտական վիճակը կարեւորագոյն եւ էական խնդիր մ'ըլլալով Վարչութիւնս իւր պաշտօնավարութեան սկիզբէն Տնտեսական խորհրդոյ, Ելեւմտից եւ Հիւանդանոցի Հոգաբարձութեանց առաջարկութիւնները նկատողութեան առնելով՝ անոնցմէ գործադրութիւններին կարելի եւ կարեւոր եղածներն որոշեց, որք են՝

### Ա. Ազգային կալուածոց ապահովութիւնը

Կառավարութեան կողմէն բոլոր անշարժ ստացուածներն արձանագրուելու առթիւ ազգային կալուածներն ապահովութեան տակ դնելու համար Վարչութիւնը յատուկ կալուածական մասնաժողովի մը ձեռամբ մէկ կողմէն ազգային կալուածոց կալուածագիրերը Պատրիարքարան բերելով պատճէնք արձանագրել տուաւ դիւանատան մէջ. եւ միւս կողմէն կալուածներն արձանագրող արքունի պաշտօնէից ձեռօք իրենց տումարներուն մէջ ազգային կալուած ըլլալը նշանակել տուաւ, ինչպէս նաեւ Տէֆթէրխանէի տումարներուն լուսանցքին մէջ: Որով ազգային կալուածները թէ Պատրիարքարանի մէջ արձանագրուեցան եւ թէ կառավարութեան տումարներուն մէջ արձանագրուելով՝ այլեւս կորստեան վտանգներէ ապահովուեցան:

### Բ. Գաւառաց մէջ Ազգային կալուածոց Արձանագրութիւնը

Տնտեսական խորհրդոյ առաջարկութեանը համեմատ գաւառաց մէջ ազգային կալուածոց սենէտները գաւառային Վարչութիւններէն արձանագրուելով անոնց օրինակը Կեդրոնական Վարչութեան տումարներուն մէջ ալ արձանագրուելու որոշում եղաւ:

### Գ. Պատրիարքարանի հին պարտուց վճարումը:

Մէկ կողմէ Պատրիարքարանի հին պարտքերն՝ շատ տարիներէ ի վեր ազգին բեռ մ'եղած ըլլալով եւ միւս կողմէ Կեդրոնական Սնտուկին հասոյթն իւր ծախքին չբաւելով յոյս չը կար սնտուկին սովորական հասոյթովը այս պարտքը վճարելու:

1871 ի Վարչութեան որոշմամբն Նախորդ Պատրիարք Ամեն. Խրիմեան Սրբազան ազգային հանգանակութեան դիմելով կարող եղած էր մէկ մասը վճարելու, ինչպէս որ նոյն հանգանակութեան եւ անով վճարուած պարտուց գործողութեանց արդիւնքն երկու տեղեկագրերով արդէն հրատարակուած է ժամանակին: Իսկ ներկայ Վարչութեանս օրով երկու բարերար ազգայինք՝ Բարձր. Աբրահամ փաշա Երամեան եւ Վսեմ. Սարգիս Պէյ Պալեան, յիշատակաց արժանի նուէր մ'ընելով Ազգն իւր հին պարտքէն բոլորովին ազատեցին, որոյ հետ նաեւ Վարչութիւնս կարող եղաւ Նորին Վեհափառ Կայսրութեան կամացը համաձայն Պէշիկթաշի ազգային գերեզմանատունը կարգադրելու, Ամենապատիւ Սրբազան Պատրիարքին ընտրութեան Բ. Դրանէն վաւերացման ծախքը հոգալու, Պատրիարքարանը եւ իւր կարասիքը նորոգելու: Երամեան Բարձրապատիւ Աբրահամ փաշա 3000 ոսկի եւ Պալեան Վսեմաշուք Սարգիս պէյ 1500 ոսկի, ընդամենը 4500 ոսկի նուիրեցին, որոյ հաշիւը հոս կը դնենք:

| Մուտք | | | Ելք | |
|---|---|---|---|---|
| Նուէր Բարձր. Երամեան Աբրահամ փաշայէ Լրյ. Օսմ. . . . | 3000 | | Վճարեալ Կեդր. Սնտուկի հին պարտատերց Լրյ. Օսմ. . . . . . . | 2586 |
| վսեմ. Գալեան Սարգիս Պէյէ Լրյ. Օսմ. . . . . | 1500 | | Պատրիարքարանի նորոգութեան ծախուց և կարասեաց համար . . . . . | 415 |
| | | 4500 | Ս. Պատրիարքի Գահակալութեան տա-թիւ Դրան և ծախք զանազանք . . . | 645 |
| | | | Պէշիկթաշի գերեզմանատան ծախուց համար . . . . . . . . . . | 284 3/5 |
| | | | Ս. Պատրիարքի գործածութեան համար կառք մը իւր կազմուածքով . | 217 |
| | | | Ցանձնեալ Կեդր. սնտուկին . . . . | 386 2/5 |
| | | 4500 | | 4500 |

Այս ազգային բարերար երկու Վսեմ անձինքը շնորհակալեաց արժանի են, ինչպէս որ Ազգային Ժողովդ ալ իր շնորհակալութեան քուէն տուաւ :

### Դ. Պատրիարքական կոնդակաց համար առնուած տրոց կարգադրութիւնը :

Ելեւմտից Հոգաբարձութեան առաջարկութեանը համեմատ Պատրիարքարանէն տրուած կոնդակներուն համար առնուած տրոց բաշխումն ու հաւաքումը Վարչութիւնս հարկ տեսաւ որ հետեւեալ կերպով ըլլան.

Ա. Ամեն գաւառական վիճակի. առաջնորդ կամ Փոխ. Առաջնորդ կամ Պատրիարքական փոխանորդ՝ իր ընտրութիւնն ու պաշտօնը վաւերող Պատրիարքական կոնդակի համար պարտաւոր է իր հովուական վիճակին տարեկան մուքաթայի տրոց քանակութեան չափով % 20 դահեկան դիւանական տուրք վճարել Կեդր. Սնտուկին :

Բ. Գաւառական Ընդհանուր, Կրօնական և Քաղաքական Ժողովոց ընտրութիւնը վաւերող Պատրիարքական մէն մի կոնդակի համար իւրաքանչիւր գաւառական սնտուկ պարտաւոր է վիճակին մուքաթայի տարեկան տրոց քանակութեան չափով % 10 դահեկան դիւանական տուրք հատուցանել Կեդր. Սնտուկին :

Գ. Նոյնպէս Կ. Պօլսոյ Թաղական Խորհուրդներն իրենց հաստատութեան կոնդակաց համար պարտաւոր են իւրաքանչիւրն թաղին եկեղեցւոյն քանչլէրի տրոց քանակութեան չափով %ին 10ը դիւանական տուրք, և եթէ զերծ են քանչլէրի տուրքէն՝ ըստ կարողութեան չափու գումար մը վճարել Կեդր. Սնտուկին.

Դ. Այն Դիւանական հասութից հաւաքման հոգն Ելեւմտից Հոգաբարձութեան վերաբերելով. Կեդրոնական դիւանատունն իւր բոլոր ճիւղերովը պարտաւոր է վաւերացմանց կոնդակները դիւանական գործողութիւնները կատարելէն ետև՝ ուղղակի յանձնել Ելեւմտից Դիւանին առանց բացառութեան :

Ե. Ելեւմտից Դիւանը նոյն կոնդակներն ստանալէ ետև սահմանեալ տուրքը կգանձէ և որոց որ կվերաբերի կյանձնէ զանոնք դիւանապետին գիտութեամբ :

Զ. Ելեւմտից դիւանը պարտաւոր է հոգ տանիլ որ թէ՛ կոնդակներն առանց յապաղման իրենց տեղերը յանձնուին և թէ՛ օրինական տուրքերն անվճար չմնան, և ասոր համար այսպէս է որ դիւանատունն երբ որ և է ընտրութեան տեղեկագիր հասնի գաւառէն կամ կեդրոնին թաղերէն, վաւերացումը կատարուելէն առաջ անմիջապէս ազդ տանէ Ելեւմտից դիւանին, որ փոյթ պիտի տանի կոնդակաց տուրքը գանձելու միջոցները անօրինել, երբ կոնդակին տէրը Կ. Պօլսոյ մէջ է և կամ իր գործակատարն ունի, անոր հետ բանակցելով, և երբ գաւառէն պիտի ղրկուի դրամը, պաշտօնական գիր ղրկել տալով և պահանջելով.

### Է. Ազգային ընդհանուր տրոց կանոնադրութիւնը :

Մինչեւ հիմայ որչափ որ ազգային տուրքը կը հաւաքուէր, բայց տակաւին անոր համար կանոն մը սահմանուած չըլլալով, Վարչութիւնս մասնաժողովի մը ձեռամբ կանոն մը խմբագրեց, և զայն Ազգային Ժողովոյդ վաւերացնել տալով, գործադրութեան ենթարկել որոշեց 1875 մայիս 1 էն սկսեալ մասնաւոր հրահանգի մը համաձայն.

Ահաւասիկ ընդհանուր տրոց կանոնադրութիւնը և գործադրութեան հրահանգը.

## ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹԻՒՆ

### ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏՐՈՑ

1. Ամէն ազգային անհատ որ չափահաս է և վաստակի ու շահու տէր և իր բնակութիւնը Պոլիս հաստատուած, պարտական է Կեդրոնական Սնտուկին տարեկան տուրք մը տալու :

2. Ազգային տուրքն ութ աստիճանի բաժնուած է.

| | | |
|---|---|---|
| Ա. | 500 | ղրուշ ոսկեայ, և աւետարան իբրև նուէր. |
| Բ. | 300 | » |
| Գ. | 200 | » |
| Դ. | 150 | » |
| Ե. | 100 | » |
| Զ. | 75 | » |
| Է. | 50 | » |
| Ը. | 25 | » |

3. Տրոց բաշխումը կատարելու համար ամէն Թաղական խորհուրդ իւր մէջէն և դրսէն այս մասին յարմարութիւն ունեցող անձինքներէ բաղկացեալ Յանձնաժողով մը կը կազմէ, որն որ կը հրաւիրէ նոյն Թաղին մէջ բնակութիւն հաստատող և տուրք տալու կարողութիւն ունեցող ազգայինները. և հետերնին համաձայնութեամբ կ'որոշէ տալու տուրքին քանակութիւնը, զորն որ պիտի հաստատէ նոյն ազգայինը իւր ստորագրութեամբը:

Յիշեալ Յանձնաժողովը 15 օր պայմանաժամ կուտայ իւրաքանչիւր ազգայնոց 'ի Խորհրդարան ներկայանալու համար, և պայմանաժամուն լրանալէն ետքը չ'ներկայացողներուն իրենց աստիճանին համեմատ վճարելու տուրքին քանակութիւնը Յանձնաժողովը կորոշէ և մանաւոր նամակաւ իրեն կը հաղորդէ, որ եթէ դիտողութիւն մ'ունի, 15 օրուան մէջ հաղորդէ Յանձնաժողովին, այս պայմանաժամը լրանալէն ետքը, եղած դիտողութիւնները չ'պիտի ընդունուին այն տարուան համար:

5. Տարեկան տուրքն երկու անգամով կը վճարուի, վեց ամիսն անգամ մը. ուզողն ազատ է անմիջապէս մէկ անգամէն ալ վճարել ամբողջ տարեկանը:

6. Քաղաքական գործոց մը համար Պատրիարքարան կամ Թաղական խորհուրդներուն դիմող ազգայինէ մը տարին լրացած և երեք անգամ ուղղուած բայց տակաւին անվճար ձգուած ու դիզուած տուրքերը պիտի առնուին, և ետքը նոյն անձին գործը պիտի տեսնուի:

7. Տուրքին տրուած ըլլալը պիտի հաստատուի Պատրիարքարանի սնտուկի տոմարաց արձանագրութենէն, և վճարողին քով գտնուած ընկալագրէն, որ ստորագրեալ պիտի ըլլայ Կեդրոնական սնտուկին գանձապահէն և հաւաքիչէն եթէ հաւաքչի ձեռօք է առնուած, և Պատրիարքարանի կնքով վաւերացեալ:

8. Պատրիարքարանի ազգահամարի գրասենեակը պարտաւորեալ է ըստ Սահմանադրութեան ամէն տարի Թաղական խորհուրդներէն առնուլ իրենց Թաղին մէջ նոր եկողները և ուրիշ գաւառներէն, գացողները և ուր երթալնին, նոր շահու տէր եղողները, իրենց աստիճանին փոփոխութիւն ունեցողները և վերջապէս վախճանեալները և ծնունդները:

9. Տուրքը Վարչութեան կողմէ ընտրեալ և վարձատրեալ յատուկ հաւաքիչներու ձեռօք պիտի հաւաքուի. իսկ երբ ուղղակի Պատրիարքարանի մէջ առնուի, որ և է ծախք տեղի պիտի չունենայ:

10. Զանազան տեղեր պանդխտող ազգայինը ընտանեօք բնակութիւն հաստատած տեղին ազգային սնտուկին կը վճարէ իւր տարեկան տուրքը:

11. Գաւառներու կողմէն Կեդրոնական սնտուկին տրուելու տուրքը մինչև որ Ազգային Ժողովը սահմանէ, գաւառները հինը պիտի շարունակեն վճարել:

## ՀՐԱՀԱՆԳ

## ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՍՆՏՈՒԿԻ ՏՐՈՑ



### ԲԱՇԽՈՒՄՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏՐՈՑ

1º. Կեդրոնական Ընդհանուր տրոց Կանոնադրութեան 3րդ յօդուածին համեմատ տրոց բաշխումը Թաղական խորհրդոց միջոցաւ կը կատարուի:

Ամէն Թաղական խորհուրդ իւր մէջէն և դրսէն այս մասին յարմարութիւն ունեցող անձինքներէ բաղկացեալ Յանձնաժողով մը կը կազմէ, որոյ կը նախագահէ Եկեղեցւոյն Քարոզիչը և 'ի բացակայութեան նորա Աւագերէցը կամ Աթոռակալը:

Իւր կազմութիւնը անմիջապէս կը ծանուցանէ Կեդրոնական Վարչութեան 'ի տեղեկութիւն ։

2°. Սոյն Յանձնաժողովը նախ կը պատրաստէ ցուցակ մը, ուր պիտի գտնուին այն ամեն Ազգայնոց անուններն՝ որք չափահաս և վաստակի ու շահու տէր ըլլալով իրենց բնակութիւնը նոյն Թաղին մէջ հաստատած են ։

Այս ցուցակը ութ սիւնակներ պիտի ունենայ ։

Ա. Ին մէջ պիտի գրուի տրոց մասնակցողին մականունը այբուբենի կարգաւ ,

Բ. Ին մէջ պիտի գրուի անունը

Գ. Ին մէջ պիտի գրուի բնակութեան փողոցը տանը թիւը ։

Դ. Ին մէջ պիտի գրուի արուեստը ։

Ե. Ին մէջ պիտի գրուի գործին տեղը , փողոցը և թիւը ։

Զ. Ին մէջ պիտի գրուի տուրքի աստիճանը ։

Է. Ին մէջ պիտի գրուի ստորագրութիւնը

Ը. Ին մէջ պիտի գրուի դիտողութիւն կամ Ծանօթութիւն եթէ կայ ։

3°. Յանձնաժողովը այս ցուցակը պատրաստելէն անմիջապէս ետքը տրոց մասնակցողները նամակաւ կը հրաւիրէ շաբթու մէջ որոշեալ օրեր 'ի Թաղական խորհրդարան մինչև 15 օր , հրաւէրի նամակին հետ ղրկելով տրոց կանոնագրութեան մէկ օրինակը ։

Հրաւէրին մէջ նշանակեալ ըլլալու է որ՝ Թաղական խորհրդարանը անձամբ չներկայացողն , նամակաւ իմացնելու է իւր աստիճանը ։

Անձամբ ներկայացողին հետ համաձայնութեամբ աստիճանը կորոշէ Յանձնաժողովը , գրել տալով իր անուան դիմացի սիւնակին մէջ աստիճանը և ստորագրութեան սիւնակին մէջ ալ իւր ստորագրութիւնը ։ Եթէ տուրքի մասնակցող մը իւր աստիճանը նամակաւ իմացուցած է , և Յանձնաժողովին կողմէն նոյնին իր կարողութեան համեմատ ըլլալը ստուգուած է , ստորագրութեան տեղը « Նամակաւ » բառը կը գրուի ։

4°. Այս առաջին հրաւէրին մինչև 15 օր անձամբ կամ նամակաւ չի պատասխանողներուն կամ նամակաւ իրենց կարողութենէն վար աստիճան նշանակողներուն երկրորդ հրաւէր մը ևս ընելու է՝ գրաւոր , ուր նշանակուած ըլլալու է որ՝

Ա. Ընդհանուր տրոց ցանկին մէջ իրենց աստիճանը որոշելու համար այս անգամ անպատճառ ներկայանալու են 'ի Թաղական խորհրդարան ։

Բ. Կամ նամակաւ իմացնելու են իրենց աստիճանը ։

Գ. Եթէ՝ ոչ անձամբ ներկայանան և ոչ նամակաւ պատասխանեն , իրենց աստիճանին համար պիտի նշանակուի Ընդհանուր տրոց ցանկին մէջ . . . . ղրուշ ըստ կանոնագրութեան ։

5°. Յանձնաժողովք ջանալու են այս հրաւիրագրերը մասնակցողաց ձեռքն հասցնել ժամանակին ։ Ուստի նամակները ցրուողները հասցէին տիրոջմէն կամ նամակը յանձնուած տեղէն ստորագրութիւն առնելու են ։

6°. Թաղական խորհուրդներն ամեն տարի տրոց Թաղական Յանձնաժողովներ կ'ընտրեն և անոնց պաշտօնը յունվար 1 էն մինչև ապրիլ 1 կը տևէ ընդ ամենը 3 ամիս ։

7°. Այս Յանձնաժողովները իրենց Թաղին վերաբերեալ տրոց ցուցակները կը սրբագրեն , նշանակելով աստիճանաց փոփոխութիւնքը պակասածները և ուրիշ Թաղ գնացողները , բընակութեան , գործի տեղերու վերաբերեալ փոփոխութիւնքը և աւելցնելով նոր եկողները և նորէն տուրքի մասնակցողները ։

8°. Թաղին մէջ նոր բնակութիւն հաստատողները և նորէն տուրքի մասնակցողները , ինչպէս նաև անոնք՝ որոց աստիճանը դէպ 'ի վեր փոխուիլ պէտք է , 3րդ , 4րդ և 5րդ յօդուածներուն համեմատ 'ի Թաղական խորհրդարան կը հրաւիրուին և ըստ այնմ կը կարգադրուի ցուցակը ։

9°. Անոնք որ աստիճանին դէպ 'ի վար փոխել կուզեն , պէտք է որ իրենք ներկայանան տրոց Յանձնաժողովին և աստիճանին փոխել տան ։

10°. Յանձնաժողովը այս սրբագրեալ ցուցակէն երկու օրինակ կը պատրաստէ , մէկը առ Քաղաքական ժողովն կը ղրկէ իր անդամոց բո-

լորին ստորագրութեամբը, որ նաև պիտի դրուին Թաղական խորհրդոյ Ատենապետին և Ատենադպրին ստորագրութիւնքը և Թաղական խորհրդոյ կնիքն ալ, և միւսը Թաղական խորհրդարանը կը պահուի։

Այս ցուցակը առ առաւելն մինչև ապրիլ 1 Ազգային Վարչութեան ղրկուած ըլլալու է։

Գ.

## ՀԱՒԱՔՈՒՄՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏՐՈՑ

11°. Տնտեսական խորհուրդը և Ելմտական Հոգաբարձութիւնը միանալով կեդրոնական տրոց համար երաշխաւորեալ պաշտօնեայ մը կը սահմանեն, որ պատասխանատու պիտի ըլլայ Ընդհանուր տրոց հաւաքմանը, և վարձք պիտի ընդունի իր ձեռօք հաւաքած դրամներուն վրայ 15 առ 100։

12°. Ելմտական Հոգաբարձութիւնը Թաղական խորհուրդներէն եկած ցուցակոց համաձայն իւրաքանչիւր աստիճանի Թիւերը կ'որոշէ, և այս Թիւերուն չափովը իւրաքանչիւր աստիճանի համար ընկալագիրներ կը պատրաստէ։

13°. Իւրաքանչիւր ընկալագիր երկուքի բաժնուած ըլլալու է, երկու վեցամսեայ վճարմանց համար. այս ընկալագիրները բունաւոր և Թուագրեալ և Ելմտական Հոգաբարձութեան կողմէն կնքեալ և ստորագրեալ ըլլալու են։

14°. Թաղական խորհուրդներէն եկած ցուցակներէն օրինակելով Ելմտական Հոգաբարձութեան կամ Համարակալին քով ուրիշ երկու ցուցակներ գտնուելու են, մէկը մականունց այբուբենից կարգաւը Թաղական խորհուրդներէն եկած ցուցակներուն ձևովը, և միւսը իւրաքանչիւր աստիճանի համար զատ զատ տետրեր բանալով, նոյնպէս այս ալ մականունց այբուբենից կարգաւը։

15°. Ելմտական Հոգաբարձութիւնը այս պատրաստեալ ընկալագրերէն տրոց պաշտօնէին կը յանձնէ պէտք եղածին չափ և անկէ անդորրագիր մը կ'առնէ։ Նմանապէս երբ տրոց պաշտօնեայն հաւաքեալ դրամները կը յանձնէ, կընդունի Համարակալէն Ելմտականին կնքովը կնքեալ անդորրագիր մը։ Եւ ժամանակ ժամանակ կողմնակի տրուած անդորրագրերուն համեմատ հաշիւը կը գոցուի։

16°. Տրոց պաշտօնեայն իր կողմէն կարգեալ երաշխաւորեալ հաւաքիչներու ձեռամբ ալ հաւաքումները կրնայ կատարել, ջանալով իր պատասխանատուութեան տակ։

Զ. Խրիմեան Սրբազանին հաշուական խնդիրները։

Նախորդ Պատրիարք Ամեն. Խրիմեան Սրբազան Առաջնորդութեանց վրայ առաջուց 'ի վեր սահմանեալ մուքաթաներն իւր ձեռամբ հաւաքելուն համար կնճռոտ հաշիւներու ենթակայ եղած էր, որով ազգային սնտուկին պարտական կը Թուէր։ Ահա այս մասին Ելևմտից Հոգաբարձութեան առ Վարչութիւնս տուած հաշիւը։

Խրիմեան Սրբազան 1869 նոյեմբեր 9ին Պատրիարքական աթոռը բարձրացաւ. Ելևմտից Հոգաբարձութիւնը կըսէ որ այս Թուականէն մինչև 1871 մայիս 1, որ 18 ամիս կընէ, 1871ի Քաղաքական Ժողովոյ որոշմամբ այն ատենուան տնտեսական խորհուրդը հաշիւը գոցած և վերջացուցած է նոյն իսկ Խրիմեան Սրբազանին հաճութեամբն ու կարգադրութեամբը։ 1871 մայիս 1էն մինչև 1873 հոկտեմբերի վերջն՝ որ է 30 ամսուան միջոց, Նորին Սրբազնութեան հաշիւն հետևեալ կերպով կը ներկայացնէ Ելևմտից Հոգաբարձութիւնը.

# ՀԱՇԻՒ ԽՐԻՄԵԱՆ ՍՐԲԱԶԱՆԻ

1871 Մայիս 1 էն մինչև 1873 Դեկտեմբեր 31:

## ՄՈՒՏՔ

| | |
|---|---|
| 30 ամսուան մէջ առած դրամը . . . . . . | 384230 |
| Մշոյ Ս. Կարապետի վանուց անվճար մնացեալ մուքաթաները . | 34600 |
| | 418830 |

## ԾԱԽԱՆՔ

| | |
|---|---|
| Իւր 30 ամսականը 10000 էն . . . . . . | 300000 |
| Միքայէլ Ծիծմէճեանին տուածը Կեդր. Սնտուկի հաշուոյն . . . . . . . . | 360 |
| | 300360 |
| Մնացեալ պարտքը . . . . | 118470 |
| | 4!8830 |

Խրիմեան Սրբազան այս հաշուոյն դէմ դիտողութիւններ ընելով կըսէ որ նախորդ 18 ամսուան մէջ ամսականս 5000 ական ղուրուշ բռնած է, պէտք է 10000 ականէն բանիլ. վասն զի Պատրիարք մը չէ թէ 5000 ղուրուշ ամսականով՝ այլ 10000 ղուրուշ ամսականով ալ չը կրնար ապրիլ. Նաև Մշոյ Վանուց մուքաթայի պարտքերը բնաւ չընդունիր ըսելով թէ Վանքին պարտքն է այն. Գործեալ, Պատրիարքութեան եկած ատենը Մուշէն մինչև Կ. Պօլիս 16000 ղուրուշ ծախք ըրած ըլլալով՝ Կեդրոնական սնտուկէն զայն կը պահանջէ. և ուրիշ առարկութիւններ ալ ընելով ազգ. սնտուկէն պահանջ ունենալը կյայտնէր:

Վարչութիւնս այս կնճռոտ հաշուոյն կարգադրութիւնն իրաւարարաց միջոցաւ թէև կը պատրաստուէր կարգադրել. սակայն գործն ամենայն արդարութեամբ կարենալ գլուխ հանելու համար արժան դատեց պահ մ'ալ սպասել և պէտք եղած տեղեկութիւնները հաւաքել:

Է. ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆԸ տեղեկագրով մը 30 հազար բաժինի վրայ ամսական 1 ղուրուշ տալով հանգանակութիւն մը բանալ կառաջարկէր, որով Հիւանդանոցի բացը գոցել կը խոստանար.

Վարչութիւնս այս առաջարկութիւնը նկատողութեան առնելով նոյն հոգաբարձութեան ատենապետ էֆէնտիին խորհրդակցութեամբը Հիւանդանոցի ծախուց և մուտից Պիւտճէն սահմանեց հետևեալ կերպով.

## ԱԶԳԱՅԻՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ԱՄՍԱԿԱՆ ՊԻՒՏՃԷՆ 1874 — 75 Ի ՀԱՄԱՐ

### ՄՈՒՏՔ

| | |
|---|---|
| Կալուածոց հասոյթ | 7500 |
| Պատսպարելոց թոշակք | 4000 |
| Մալէի | 3030 |
| Պէյլիկի միս 900 հոխայ | 4500 |
| » հաց 6000 » | 12000 |
| Նշանատուրի կէս հասոյթ | 5000 |
| Անցագրատան կէս հասոյթ | 5000 |
| Գանձանակ, եկեղեցիք, ողորմութիւն | 3500 |
| | 44530 |
| Ամսական բացը | 7220 |
| | 51750 |

### ԵԼՔ

| | |
|---|---|
| Ուտեստ 450 անձանց համար, օրը 2 ղուրուշէն | 27000 |
| Հանդերձագին ամսական | 5000 |
| Կարօտելոց համար ամսական ծախք | 1500 |
| Դեղօրէից » » » | 1250 |
| Պաշտօնէից ամսականք | 10000 |
| Կալուածական նորոգութիւնք | 2000 |
| Այլևայլ ծախքեր | 4000 |
| Դպրոցի ծախք | 1000 |
| | 51750 |

Այս 7220 ղուրուշի բացը գոցելու համար Հոգաբարձութեան առաջարկած 1 ղուրուշ բաժնի վրայ ամսական հանգանակութեան սկզբունքն ընդունեց Ժողովս ։

Հիւանդանոցի կալուածներէն Եէնի Գուլէի դուրսը գտնուած Հիւանդանոցին կից ընդարձակ մեծ պարտէզը և անոր յարակից խնծիրիկք ըսուած ընդարձակ գետինը, որոյ առաջինոյն համար 800 ղուրուշ և վերջինոյն համար 150 ղուրուշ զատ զատ տարեկան միւլքի վարձք կառնուէր եղեր մինչև հիմայ, այս անգամ Հիւանդանոցի Հոգաբարձութիւնը քննութեամբ և հաստատութեամբ ստուգած է որ նոյն գետինները թէ միւլք և թէ կէտիկ Հիւանդանոցին սեփականութիւնն են և տարեկան 1500 ղուրուշ առնուազն վարձք կը բերեն, և Հոգաբարձութիւնը յաջողեր է խնծիրիկը Հիւանդանոցին յանձնելու մինչև յառաջիկայ գարուն վարձակալին հետ համաձայն եղած պայմանները ընելով ։ Իսկ պարտէզին վարձակալն ամենայն զգուշութեամբ կը պնդէ եղեր որ պարտէզին կէտիկն իրն է խարջական անձէնք մը գոյութեամբ որ ամենևին այն պարտէզին հետ վերաբերութիւն չունի ։ Ուստի Հոգաբարձութիւնը նկատելով որ յիշեալ պարտէզը տասնեայ 1250 թուականէն ի վեր տարեկան 800 ղուրուշով վարձու տրուած է, մինչդեռ առնուազն տարեկան 1500 ղուրուշ վարձ կրնայ բերել, և նկատելով որ 1872 թուականին վարձակալը 127000 ղուրուշ առեր է Երկաթուղւոյ ընկերութենէն, հարկ կտեսնէ դատ բանալ յիշեալ վարձակալին դէմ ։

Ժողովս այս կարևոր խնդիրը պատշաճ կանոնց ներկայ Հոգաբարձութեան յանձնել որ ուշադրութեան առնելով արժանը անօրինէ ։

Ը. Զանազան թաղական խորհուրդներէն եկած խնդրագիրներուն համեմատ ազգային կալուածոց վրայ կառավարութեան կողմէն դրուած տուրքերը բառնալու համար արժան պատուիրակաւ Յունաց Պատրիարքարանին հետ խորհրդակցելով հարկ եղածը անօրինել ։

### 3ᵒ. ՎԱՆՕՐԷԻՑ ԽՈՐՀՈՒՐԴ

Վանօրէից խորհուրդը վանքերին շատերուն հետ յարաբերութիւն հաստատելով հետզհետէ զանոնք Սահմանադրութեան սկզբանց համաձայն բարեկարգելու ; անոնց մէջ տեղին խորհուրդներ կազմելու և վարժարաններ հաստատելու ջանադիր եղած է. բայց տակաւին կան վանքեր որ մինչև այսօր Ազգութեան գրերն անպատասխանի թողած են ։

Վարչութիւնս Վանօրէից խորհրդոյ անդա-մակցութեան հրաւիրեց Երկրագործութեան ար-հեստին քաջահմուտ Ամասեան Յակոբ էֆէնտին, որ վանքերուն հողերն' արդիւնաւոր վիճակի մը մէջ դնելով զանոնք, ազգային հաստատութեան աղբիւրներ ըլլան, որոց հասոյթ եկամուտովը ազգային հանրական պիտոյքները հոգացուին և բարգաւաճին ։

Ազգային Վանքերուն վրայ լաւ և ճիշդ գա-ղափար մը ունենալու համար Վանօրէից խորհըր-դոյ առ Վարչութիւնն ընելիք տարեկան համա-րատուութիւնն Ազգային Ժողովոյդ ուշադրու-թեանը կը յանձնուի ։

### 4. ԴԱՏԱՍՏԱՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ ԵՒ ԿՏԱԿԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Դատաստանական խորհրդոյ և Կտակաց Հո-գաբարձութեան խնդիրները Խառն Ժողովոյ վե-րաբերելով առ այն մատուցած համարատուու-թիւններնին Ազգային Ժողովոյդ պիտի մատուց-ուի Խառն Ժողովոյ համարատուութեան հետ ։

---

## Գ.

## ԳԱՒԱՌԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Գաւառացւոց խնդիրներն որ Ազգային Վար-չութեան ամենամեծ զբաղմունքն են, գլխաւո-րաբար հետեւեալներէն կը բաղկանան.

### 1. Հողային խնդիրներ

Բարեխնամ կառավարութիւնը գաւառացի հողագործները քաջալերելու և երկրագործութիւնը գաւառներուն մէջ բարգաւաճելու համար զանոնք հողի և գետնի տէր ընելու օրէնք մը հաստա-տած է, որով փոքր գումարներ վճարելով իրենց վարուցան ըրած գետինն իրենց վրայ թափու կընեն, այսինքն' նոյն գետնին տէրը կըլլան ։

Մեր գաւառացի ազգայինք կամ այս օրէն-քը ժամանակին լաւ չեն ըմբռնած, կամ կա-ռավարութեան անձինքը տէրութեան այս օրէն-քին արդարութեամբ չեն գործադրած, վասն զի այսօր մէկ քանի գիւղօրայ գաւառներու մէջ, ուր բազմաթիւ հայ կը գտնուին, հողերը տեղւոյն տիրող պէյերուն անցած են թափուի օրէնքով կամ կը բռնանան որ իրենց վրայ անցունեն հա-կառակ բարեխնամ կառավարութեան հրամայած սկզբանց ։

Մեր գաւառացի ժողովրդոց շատ անգամ բազմութեամբ Պատրիարքարանս լեցուիլն և Պատրիարքն ու Ժողովները զբաղեցնելն, գրեթէ լոկ այս հողային խնդրոյն համար է ։ Այդ բըռ-նաւոր պէյերը կամ երկրացի ուժաւոր ժողո-վրդէն զաւառակ անոնց հողերն իրենց վրայ թա-փու ընել տուած են, որ կառավարութեան օրի-նաց հակառակ է, վասն զի ուժաւոր ժողովրդ-եան կը պատկանին այն հողերը, և կամ զանա-զան հնարքներ բանեցնելով ժողովրդեան հողերը ձեռքերնուն առած և առնելու ետեւ են, և շատ չնչին վարձ վճարելով նոյն հողերուն վրայ կը բանեցնեն այն աղքատ ուժաւորները, որ կա-ռավարութեան հրամայած օրինաց համաձայն յիշ-եալ հողերուն տէրն էին ։

Այս հողային խնդիրը գաւառացւոց ամե-նակարեւոր խնդիրն է, և իրենց ապագայ յառա-ջադիմութեան և հարստութեան հիմը կը հա-մարուի, այս նկատմամբ Վարչութիւնս չէր կըր-նար անտարբեր մնալ ասոր վրայ. ուստի գա-ւառացւոց այս տեսակ խնդիրներն 'ի մի ամփո-փելով թագրիր մը գրեց, և Սրբազան Պատ-րիարքն այս թագրիրին գործադրութիւնը ձեռք բերելու համար ամեն ջանք 'ի գործ դրաւ ։

### 2. Ջօրպաճըի [աւէլէր պէտէլի] տուրքի վերաբերեալ խնդիրներ

Մէկ քանի գաւառաց ժողովուրդք այս տուր-քի համար բողոքելով կըսեն թէ կառավարու-թիւնը պէտէլիէ տուրքին մէկ չորրորդը բաշ-խած է ժողովրդեան, և փոխանակ բաշխումը հրամանի թուականէն գործադրել սկսելու հինգ տարի ետքն եղած թուականէն կուզեն գործադ-րել ։ Այս և ասոր վերաբերեալ ամեն խնդրոյ համար Վարչութիւնս թագրիր գրեց առ Բ. Դու-

ուլն, մինչ զի գաւառապետաց վրայ ծանրացած այս տուրքի հաւաքումն եղած հրամանաց համեմատ արդարութեամբ գործադրուի ։

3. Գաղատիոյ և ուրիշ տեղերու սովեալ Ազգայնոց օգնութեան խնդիրը

Գաղատիոյ առաջնորդին և երեսփոխաց ընտրութեանց խնդրագիր մը դրած կը յայտնէր թէ Գաղատիոյ մէջ տիրած սովին և արմտեաց սղութեան պատճառաւ 150 տուն Հայ ժողովրդեան մեծ մասն անօթութեան վտանգի մէջ ինկած է ։ Այս խնդրագրոյն վրայ Վարչութիւնը մասնաժողով մը կազմեց, որոյ անդամ եղան նաև տեղացիներէն երկու անձ որ ի նպաստ Գաղատիոյ սովեալ ազգայնոց հանգանակութիւն մը բացին և հետզհետէ բարերար անձինքներէն ընդունած օգնութիւնները սովեալ ազգայնոց ղրկեցին ։ Նոյն միջոցին նաև կառավարութեան տուրք վճարելու մասին նեղութիւն կրելնին կը յայտնէին, որոյ համար Գաղատիոյ կուսակալին գրուեցաւ որ իր հայրական խնամքն աղքատ ժողովրդեան վրայ տարածելով տուրք պահանջման մասին նեղութիւն չը տայ, նաև իրենց օգնութիւն ընէ ։

Այժմ պէտք քանի մը գումարներ ևս տարածուիլ․ Եօզղատ և և Կեսարիա սովու շրջանակին մէջ մնան, հետզհետէ ցաւալի և խղճալի լուրեր հասան հոս․ յիշեալ մասնաժողովը աւելի մեծցաւ, որոյ անխոնջ և անձնուէր աշխատութեամբը բարերար անձինքներէ հանգանակեալ գումարները սովելոց կը բաժնուէր արդար և իմաստուն կարգադրութեամբ մը․ Նաև Բ․ Դուռը կառավարութեան կողմէն կազմուած յանձնաժողովին ալ կը տրուէր, որպէս զի սովեալք կառավարութեան կողմէն բաշխուած օգնութենէն ևս չը զրկուին ։ Սրբազան Պատրիարքը դարձեալ կուսակալներուն յանձնարարականներ գրեց անոնց շնորհը խնդրելով ամէն ներելաւ խղճալեաց համար․ Նոյնպէս թագերը գրեց առ Բ․ Դուռն․ հաւատարաց գթութիւնը․ և անոնց մարդասիրութիւնը հայցելու համար ։

Յիշեալ սովելոց օգնութեան Մասնաժողովը չնորհակալութեան արժանի ջանասիրութեամբ աշխատած է մինչև այսօր, և տակաւին իր այս գովելի աշխատութիւնը կը շարունակէ ։

4. Մշոյ Ալաշ աղբիւր գիւղի աղքատաց համար եղած հանգանակութեան խնդիրը

Ամենապատիւ Խրիմեան Սրբազանի պատրիարքութեան սկիզբներն Ալաշ-Աղբիւրի ամենայն չուառ մերկ և քաղցած աղքատաց համար Սամաթիոյ Հայկական ընկերութեան միջոցաւ բացուած հանգանակութենէն 10 հազար ղուրուշի չափ գումար մը գոյացած և անմիջապէս Խրիմեան սրբազանին յանձնուած էր ։ Խրիմեան սրբազանին Պատրիարքութենէ հրաժարելէն ետև Ալաշ-Աղբիւրցիք յիշեալ գումարին դեռ իրենց չհասած ըլլալը յայտնելով և հաւատարիմ փոխանորդ մը ցոյց տալով կը խնդրէին որ անոր յանձնուի ։ Ասոր վրայ Վարչութիւնս Խրիմեան Սրբազանէն գրաւոր տեղեկութիւն պահանջելով և ստանալով վերահասու եղաւ որ Ն. Սրբազնութիւնը յիշեալ գումարին փոխարէն գրքեր ղրկած է Մշոյ Ս. Կարապետի վանքը առ նպատակաւ որ անոնք ծախուելով գոյացած դրամը մշտնջենաւորէս նոյն վանքը մնայ իբրև մայր դրամ և վանքը պարտաւոր ըլլայ տարուէ տարի հազարական ղուրուշ վճարել Ալաշ-Աղբիւրի վարժարանին տարեկան ծախուց համար ։ Խրիմեան սրբազանին այս կարգադրութիւնը Վարչութիւնս ընդունելով հաւանեցաւ գրեց Մշոյ Ս. Կարապետի վանահօր, որպէս զի ըստ այնմ հարկ եղածը տնօրինէ և գործադրէ ։

5. Կիլիկիոյ Սրբազան Կաթողիկոսին խնդիրները

Ա. Կիլիկիոյ Սրբազան Կաթողիկոսին խնդրոյն համեմատ Անտիոքայ գետնաշարժէն վնասելոց համար եղած ժողովարարութեան հաշիւն առաւ Վարչութիւնս Տիգրանակերտցի Կարապետ վարդապետէն, որ կըսէր թէ 100 էն 20 աշխատութեան վարձք խոստացեր են տեղացիք և հետն աշխարհական մ'ալ ընկեր ղրկեր են, և Կաթողիկոսի կողմէն ալ վաւերա-

## Զ.

## ՏԵՂԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

### 1. Ժողովրդական հանրագրութիւնք

1873 Նոյեմբեր 17 Թուականաւ ստորագրեալ նոյն օրինակ քանի մը հանրագրութիւններ եօթն պատգամաւորաց ձեռօք ներկայացուելով, Ժողովս դիտեց որ անոնց մէջ պարունակեալներէն Խրիմեան Սրբազանին և Նախորդ Քաղաքական Ժողովին հրաժարմանց կէտերն արդէն կատարուած իրողութիւններ են, և Մնացեալ կէտերն ալ Ազգային Ժողովոյ տնօրէնութեանը կը պատկանին։ Ուստի նոյն հանրագրութիւնները՝ զանոնք ներկայացնող պատգամաւորաց դարձնելով յայտարարեց որ երբ լուծեալ և կատարուած իրողութիւնները դուրս հանելով Միացեալ խնդրոյ համար զատ հանրագրութիւն մը ներկայացուի, այն ատեն Ժողովս ընդունելով զայն Ազգային Ժողովոյ տնօրէնութեանը կրնայ յանձնել, վասն զի նոյնատիպ խնդրոյ վերայ տնօրէնութիւն ընել իւր ձեռնհասութենէն վեր է։

### 2. Նոր Թաղական խորհրդոց ընտրութիւնք

Թաղական խորհուրդներէն մէկ քանիին հրաժարման վրայ անոնց տեղ նորեր ընտրուելով, վաւերացման կոնդակները տրուեցան, ինչպէս են Գումգափուի Մայր եկեղեցւոյ համար։

Եէնի Գաբուի
Գուզկունճուկի
Քարակիւմրիւկի
Պօյաճի Գիւղի
Թօբգաբուի
Գասըմ Փաշայի
Էյիւպի
Պէշիկթաշի

Խասգիւղի Թաղական խորհրդոյ մասնակի ընտրութեան համար։

Աստնմէ զատ նաև Գատը Գիւղի և Գում Գաբուի դրսի Թաղական խորհուրդներն ալ հրաժարելով անոնց տեղ առժամանակեայ Թաղական խորհուրդներ դրուեցան։

### 3. Գատը Գիւղի Թաղական խնդիրը

Նախորդ Քաղաքական Ժողովին օրով Գատը Գիւղի Թաղական խորհրդոյ անդամոց մէջ անհամաձայնութիւն ծագելով վէճի տակ կը գտնուէր նոյն խորհուրդը։ Վարչութիւնս փորձ մը ընելէն ետքը բոլորովին լուծեց նոյն Թաղական խորհուրդը և անոր տեղ առժամանակեայ Թաղական խորհուրդ մը հաստատեց։ Այն առժամանակեայ խորհուրդը Նախորդ խորհրդոյ օրով նորոգ կառուցեալ Թաղին երկսեռ վարժարանաց շինութեան հաշիւն առաւ, պարտքերը վճարեց, դպրոցներուն պակասը լրացուց և դպրոցական կարասիները պատրաստելով դըպրոցները բացաւ։

Գատը Գիւղի Թաղական խորհրդարանին սնտուկը պահուած [illegible] Թղթերը, որ ընկերութեան մը կը վերաբերէր և աւանդ պահուած էր հոն, առժամանակեայ Թաղական խորհրդոյն միջնորդութեանը վրայ նոյն ընկերութեան յանձնել որոշուեցաւ։

### 4. Զանազան տեղական խնդիրներ

Վերոյիշեալ տեղական խնդիրներէն զատ 20 էն աւելի ուրիշ տեղական խնդրոց կարգադրութիւնն եղած է Ժողովոյս ներկայ շրջանին մէջ, որք հանրական կարեւորութիւն չունենալով մանրամասնաբար նշանակել հարկ չդատեր։

## Է.

## ԱՆՀԱՏԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Ժողովս իւր պաշտօնավարութեան առաջին տարւոյն շրջանի միջոցին 28 անհատական խնդիրներով զբաղած է, որոց ամէնն ալ լուծուած են, սակայն հարկ չը տեսնէր անոնց մանրամասնութիւնը նշանակելով ստուարացնել ներկայ համառօտութիւնը։

## Ը.

## ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆ ԷՋՄԻԱԾՆԱՅ ՎԵՀԱՓԱՌ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ՀԵՏ

Վեհափառ կաթողիկոսը կոնդակաւ կըծանուցանէր յէջմիածին ժառանգաւորաց նոր վարժարան մը շինած ըլլալը, և 2 աղքատ ուշիմ աշակերտ կուզէր ձրիաբար դաստիարակելու համար. Ժողովս Ուսումնական խորհրդոյ յանձնեց նոյն աշակերտաց ընտրութիւնը.

---

## Թ.

## ՎԵՐՋԱԲԱՆ

Ժողովս հարկ չը տեսաւ իւր պաշտօնավարութեան ներկայ շրջանին մէջ տեսած բոլոր խընդրոց լուծումը մանրամասնաբար նշանակել, այլ միայն այն խնդրոց լուծումը նշանակեց, որք կըրնային կարևոր ըլլալ Ազգային ժողովոյդ 'ի գիտութիւն. Իսկ մնացած խնդիրներն՝ որք անհատական և մասնաւոր ըլլալով հանրական կարևորութիւն ունենալէ հեռի են, զանց ըրաւ մի առ մի նշանակել համառօտութեանս մէջ.

Վարչական ժողովներն գրաւեցնող խնդիրները գլխաւորաբար երկուք են. մէկ մը՝ դրամական խնդիրն, որ Ազգային ժողովոյդ որոյ համար սահմանած նոր կանոնադրութեամբը կը յուսացուի որ կարգի մտնէ, և որու միջոցաւ շատ մը խնդիրներու կարգադրութիւնը սկսաւ դիւրանալ. Մէկ մ'ալ գաւառական խնդիրներն, որոց համար ժողովս Սրբազան Նախագահին հետ ամեն կարելի եղած միջոցները ձեռք առած է հիմնաւորս կարգադրել. Այս երկու կենսական խնդիրները նպաստաւոր կերպով կարգի մտնելէն ետքը մնացեալներն օրուան խնդիրներ են, որոց լուծումը դժուարութիւն մը չունի կամ դրամով լմննալիք խնդիրներ են, և բոլորովին դրամական խնդրոյն լուծմէն կախումն ունին.

Անդամք Քաղաքական ժողովոյ

Ատենապետ
Ս. ՄԱՔՍՈՒՏԵԱՆ

Փոխ Ատենապետ
Կ. Գ. ՓԱՓԱԶԵԱՆ

Ատենադպիր
Մ. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

Փոխ Ատենադպիր
Ս. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

Խ. Յ. ԱԼԵԱՆԱԳԵԱՆ
Ս. ԱՐԱՊԵԱՆ
Ա. ԻԿԻՏՊԱՇԸԵԱՆ
Յ. ԳԱՓԱՄԱՃԵԱՆ
Ս. Խ. ՓԱՓԱԶԵԱՆ

# ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

## 1875 — 76 ԱՄԻ

ԱՌ

# ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՆ

## Ա.

### ՆԱԽԱԲԱՆ

Քաղաքական ժողովս՝ իւր պաշտօնավարութեան 74-75 ամի շրջանն աւարտելէն ետեւ, իւր միամեայ համարատուութեան տեղեկագիրը պատրաստելու ատենը որոշեց Ազգային ժողովոյ յայտարարել թէ Քաղ. ժողովս իւր պաշտօնավարութեան շրջանը 1875 Մայիս 1 ին լրացած կ'համարի եւ կ'խնդրէ Ազգային ժողովէն՝ իւր յաջորդին ընտրութիւնը փութացնել, որպէս զի Վարչական գործերն անտեր չմնան. Ա. ս այս Ազգային ժողովը իւր Մայր Դիւանին միջոցաւ պատասխանելով թէ Ազգ. ժողովը Քաղ. ժողովոյ պաշտօնավարութիւնը լրացած չհամարիր եւ հրաժարականը չընդունիր, կը հրաւիրէր զՔաղ. ժողովս իւր պաշտօնը շարունակել մինչեւ 1876 Մայիս 1:

Հետեւաբար Քաղ. ժողովս Ազգային ժողովոյ այս հրաւէրն ընդունելով եւ իւր գլուխը նորոգելով՝ մինչեւ յորոշեալ պայմանաժամ իւր պաշտօնը շարունակեց, եւ այսօր 1876 Մայիս 1 իւր պայմանաժամը լրացած տեսնելով ըստ օրինի իւր հրաժարականը եւ միանգամայն առաջին միամեայ համարատուութեան հետ նաեւ այս երկրորդ եւ վերջին տարեկան համարատուութիւնը կ'մատուցանէ Ազգային ժողովոյ:

## Բ.

### ՏՆՕՐԷՆ ԽՈՐՀՐԴՈՅ ԵՒ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆՑ ՎԵՐԱԿԱԶՄՈՒԹԻՒՆԸ

Ժողովս՝ Տնօրէն խորհրդոյ եւ Հոգաբարձութեանց անդամներէն Սահմանադրական տարեգլխուն՝ այսինքն 1875 Մայիս 1 էն՝ պայմանաժամերնին լրացածներուն եւ միանգամ փոփոխելիներուն տեղ նոր ընտրութիւն կատարելով, վերակազմեց հետեւեալ խորհուրդներն ու հոգաբարձութիւնները.

Ուսումնական խորհուրդ
Վանօրէից »
Տնտեսական »
Եկեղեցւոյ Հոգաբարձութիւն
Հիւանդանոցի »

Իսկ Դատաստանական խորհրդոյ եւ Կտակաց Հոգաբարձութեան վերակազմութիւնը Խառն ժողովոյ վերապահեց:

## Գ.

## ՏԵՂԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

### Ա.

### ԹԱՂԱԿԱՆ ԽՈՐՀՐԴՈՑ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՔ

*Ժողովոյս վերջին միամեայ շրջանին մէջ 12 թաղ. խորհրդոց հրաժարում՝ և նոր ընտրութիւնք պատահեցան որք են՝*

*Գատըգիւղ. Առ ժամանակեայ թաղ. խորհրդոյ հրաժարմամբ, սահմանադրապէս նոր թաղ. խորհուրդ ընտրեցաւ և վաւերացաւ։*

*Պէշիկթաշ. Թաղականաց պակասը լրացնելու համար ընտրութեան հրահանգ ղրկուեցաւ։*

*Սամաթիոյ Եէնի մահալլէ. Թաղ. խորհրդին հրաժարմամբ նորն ընտրելու հրահանգ ղրկուեցաւ։*

*Կէտիկ փաշա. Թաղ. խորհրդին հրաժարմամբ նորն ընտրելու հրահանգ ղրկուեցաւ։*

*Եէնի գիւղ և Ստէնիա. Թաղ. խորհրդոյ հրաժարմամբ նորերն ընտրելու հրահանգ ղրկուեցաւ։*

*Ալէմտաղի. Իւսկիւտարի Սէլամիէի թաղ. խորհրդոյ առաջարկութեամբ Ալէմտաղի համար առանձին թաղ. խորհուրդ ընտրուելու հրահանգ ղրկուեցաւ։*

*Գում գափուի դուրս. Թաղ. խորհրդոյ լուծմամբ նոր թաղ. խորհուրդ ընտրուեցաւ և վաւերացաւ։*

*Քուրուչէշմէ. Թաղ. խորհրդին հրաժարմամբ նորն ընտրուեցաւ, և նորընտիր թաղ. խորհուրդն ալ քիչ ժամանակէ ետև անձնական գրգռմանց պատճառաւ հրաժարելով՝ առժամանակեայ խորհուրդ մը դրուեցաւ մինչև ի նոր տնօրէնութիւն։*

*Պէյքօզ. Թաղ. խորհուրդն անհամաձայնութեամբ ցրուած ըլլալով և զանձապետի հաշուոյ քննութիւնք տեղի ունենալուն համար, առժամանակեայ խորհուրդ մը դրուեցաւ մինչև ի նոր տնօրէնութիւն։*

*Իւսկիւտար Ս. Կարապետ. Թաղ. խորհրդոյ պաշտօնաժամն աւարտելուն պատճառաւ նոր թաղ. խորհրդոյ ընտրութեան հրահանգ ղրկուեցաւ։*

*Խասգիւղ. Թաղ. խորհրդոյ պաշտօնաժամն աւարտելուն պատճառաւ նոր թաղ. խորհրդոյ ընտրութեան հրահանգ ղրկուեցաւ։*

*Պէյուքտէրէ. Թաղ. խորհրդոյ պաշտօնաժամն աւարտելուն պատճառաւ նոր թաղ. խորհրդոյ ընտրութեան հրահանգ ղրկուեցաւ։*

### Բ.

### ԲԵՐԱՅԻ ԱԼԿԱԶԱՐԻ ԽՆԴԻՐԸ

*Ալկազարը թէև Ազգին յանձնուած, սակայն նախորդ վարձակալին ունեցած մեծագումար պարտուց վճարման համար անոր կարասիքը Պատրիարքարանի պահանջման համեմատ գրաւման տակ առնուած ըլլալով, նոյն կարասեաց վաճառման խնդիրն անլոյծ կկենար։*

*Ժողովս այս խնդրոյն դատական կարգադրութեանը համար կարգուած փաստաբանին հետ բանակցելով, պէտք եղած տեղեկութիւնն ըստանալէ ետև, նոր Թագրիր մը գրեց, զոր անձամբ ներկայացուց Օրմանեան Պատրիարքն Արտաքին գործոց Նազըր. Նախարարին և բանիւ բերանոյ ևս խօսեցաւ անոր հետ։ Այսր վրայ բարձրագոյն հրամանաւ գործը յատուկ դատարանի մը յանձնուեցաւ, և յետոյ Բերայի կալուածական Հոգաբարձութեան ու անոր կողմէ կարգեալ փաստաբանին մէջ անհամաձայնութիւն պատահելով և յիշեալ փաստաբանը Ժողովիս դիմելով հրաժարել ուզելուն համար, Ժողովս միջամտեց և անհամաձայնութիւնը լուծելով պարտաւորեց փաստաբանն իւր պաշտօնը շարունակել և գործն ի յանգ հանել։*

*Բարձրագոյն դռնէն եկած ծանուցագիր մը յայտնելով թէ Գաղղիոյ դեսպանատունը Փարիզի մակեալ վարժարանին պարտուց համար Բերայի եկեղեցւոյն սեփական Ալկազար կալուածին եկամուտն ու ֆէրաղը սէքէսթրօ ըրած է, Ժողովս այս մասին Բերայի կալուածական Հոգաբարձութեան հետ խորհրդակցելէ ետև, ան-*

ընդունելի գտնեց նոյն աէքէնտրօն, և յատուկ թագրիրով մը բողոքեց և բարձումը խնդրեց ։ Միանգամայն ուրիշ թագրիրով մը նոյն աէքէնտրօյին պատճառ հանդիսացած փոփոխի վարժարանին պարագն ազգին անընդունելի ըլլալն ալ ծանուց Բ. դրան ։

## Գ.

### ԲԵՐԱՅԻ ԿԱԼՈՒԱԾԱԿԱՆ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ա. Հանգուցեալ Տատեան Պօղոս Պէյին վրայ գտնուած բերայի ազգային կալուածներուն եկեղեցւոյ վրայ դարձնելու առաջարկութիւնը նկատողութեան առնլով Ժողովս նոյն Հոգաբարձութեան յանձնարարեց հանգուցելոյն ժառանգորդաց թագրիրներն առնելու համար պէտք եղած միջոցներն ի գործ դնել ։

Բ. Բերայի կալուածոց անուակին Անգղիոյ դեսպանատան նախորդ առաջին թարգման Միւսիւ Բիզանիի պարտքն եղած գումարին և տոկոսներուն հաշիւը տեսնելով կալուածական Հոգաբարձութիւնը նոր պարտագիր մը ստորագրած և իւր տեղեկագրովը ղրկած էր Սրբազան Պատրիարք Հօր վաւերացման համար ։ Ժողովս նոյն տեղեկագրին համաձայն յիշեալ պարտագրին մէջ Հոգաբարձութեան անդամոց ստորագրութիւններն ու Հոգաբարձութեան պաշտօնական կնիքը վաւերացնել որոշեց ։

## Դ.

### ԲԵՐԱՅԻ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ ՀԱՄԱՐ ԹԱՂԱՅԻՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՈՅ ԿԱԶՄՈՒԹԻՒՆ

Բերայի Թաղ. խորհուրդը Թաղին վարժարանաց բարեկարգութեան և անոր անմիջական յարակցութիւն ունեցող ինչ ինչ խնդիրներն ի գլուխ հանելու պաշտօնով Թաղին պատուաւորներէն 7 անձինքէ Թաղային յանձնաժողով մը ընտրած ըլլալը յայտնելով՝ հաստատութիւնը կը խնդրէր ։ Ժողովս Ուսումն. Խորհրդոյ կարծիքն առնալէ ետև նկատողութեան առնլով նաև այն բացառիկ վիճակն, որու մէջ ինկած է բերայի Թաղն իւր համանձորդ հրկիզութենէն ի վեր և որ պարտաւորած է զՎարչութիւնն բերայի եկեղեցւոյ ոմպառազ կարգադրութեան խնդիրն և կալուածոց տեսչութիւնը Թաղ. խորհրդէն զատելով անկէ անկախ յատուկ Հոգաբարձութեան մը յանձնելու, ձգելով Թաղ. խորհրդոյ միայն եկեղեցւոյ ներքին հասոյթներով թէ եկեղեցին և թէ Թաղին դպրոցները մատակարարել, ընդունեց և հաստատեց Թաղ. խորհրդէն առաջարկեալ յանձնաժողովն Օժանդակ յանձնաժողով անունով ։ Ժողովս Բերայի Թաղ. խորհրդոյ և իր օժանդակ յանձնաժողովոյն առաջարկութեան վրայ նաև Ս. Յարութիւն Եկեղեցւոյ յարակից կալուածները պարպելու հաճութիւն և որոշում տուաւ. որպէս զի նոյն կալուածները նորոգուելով՝ Թաղին դպրոցաց եկամուտ բերելու ծառայեն, այն պայմանաւ որ Թաղ. խորհուրդը յիշեալ կալուածոյ մէջ պատսպարեալներէն չքաւոր և աղքատ եղողներուն բնակարանի համար մէկ մէկ վարձք վճարէ ։

## Ե.

### ՂԱԼԱԹԻՈՅ ԿԱԼՈՒԱԾԱԿԱՆ ՇԻՆՈՒԹԵԱՆՑ ԽՆԴԻՐԸ

Ղալաթիոյ հրկիզեալ ազգային կալուածոց շինութեան խնդրոյն վրայօք Ղալաթիոյ կալուածական Հոգաբարձութեան և Տնտ. խորհրդոյ տեղեկագրերն առնալէ ետև Ժողովս իւր մէջէն յանձնաժողով մը կազմեց շինութեան յատակագիծը տեսնելու, մանրամասն քննութիւնները կալուածական Հոգաբարձութեան և ճարտարապետ Ազնաւուրեան Էֆէնտիին հետ ընելու, և տանց ամենուն արդիւնքը Ժողովիս բերելէ ետև, շինութեան ձեռնարկութեան որոշում տալու համար ։ Այն Նախապատրաստութիւնք կատարուելէ ետև. Ժողովս Ներկայացեալ յատակագծին համեմատ և Ազնաւուրեան Էֆ. ի ճարտարապետական պատասխանատուութեան տակ, բոլոր ծախքը 2200 ոսկին չանցնելու պայմանաւ շինութեան ձեռնարկութեան որոշում տուաւ, Վարչութենէն և Տնտ. խորհրդէն ալ մէյմէկ տեսուչ կարգելով, որպէս զի Ղալա-

թիւ կալուածական Հողաբաժանութեան հետ միանալով հակեն նոյն շինութեան գործոյ, և այսպէս ձեռնարկեալ շինութիւնք լրացեալ և հաշուեցուցեալ ի վերջոյ ներկայացուսցեն Տեառ. խորհրդոյ, որ դուշացուցիչ գտած էր զայն :

Այն ձեռնարկութիւնք յաջողութեամբ կը գլուխ հանելէ ետև, Ղալաթիոյ կալուածոց Հողաբաժնութիւնն այս անգամ՝ նոր շինութեանց արուագիծ մ'ալ ներկայացուց, որուն համեմատ կառաջարկուի նոյն նոր շէնքը հիմնել Ղալաթիոյ Աւքրըլըր փողոցին մէջ եկեղեցւոյն յարակից 930 կանգուն տարածութեամբ գետնին վրայ, ճաշարան և քարաշէն, որուն գետնայարկը 7 ի մեծ ու փոքր մթերանոց պարունակէ, 210 ոսկի տարեկան եկամուտ բերող. և երկրորդ յարկն ունենայ Վարչութեան ժողովոց համար 3 ընդարձակ և 3 փոքր սենեակներ. նոյնպէս քարոզչի բնակարանք և Թաղ. խորհրդոյ համար սենեակներ և վարժարանի շէնքին կցուելու բաժնի մը դասարաններ : Իսկ երրորդ և վերին յարկն իբր ամբողջ տարածութեամբ Ազգային ժողովին համար խորհրդարան յատկանայ : Այն արուագծին համեմատ շինութիւնք կատարուելու համար առ առաւելն 3 հազար լիրայի ծախուց պէտք նշանակուած է, մին մի կանգունին համար 3 լիրա հաշուելով, և 2000 լիրայի փոխառութեամբ 0/0 ին 12 տոկոսով, այսպիսով՝ շինութեան առեն կալուածներէն հեռաձգեալ գոյացած արդիւնքով դիմաւորելու պայմանաւ : Տնտես. խորհուրդն այս շինութեան արուագիծը և յարակից պայմանները քննելով տեսեր է որ թէ՛ նախորդ և թէ՛ առաջարկուած նոր շինութեան պատճառաւ Ղալաթիոյ կալուածոց մնացելին պարտքը 3000 ամ՝, որոյ դէմ յանգի և վճարելի տարեկան տոկոս դէմ տոկոսանոյ 450 ոսկի, 360 լիրա նախորդ և վերջին շինութեանց փոխառութիւններուն և 90 լիրա նախկին 1000 ոսկւոյ պարտուց համար. իսկ փոխարէն կալուածոց մնացուն ընդունելով 210 լիրա կառուցանելի 7 մթերանոցէն, 840 լիրա ևս արդէն կառուցեալ մեծ կալուածէն, ընդ ամենն 1050 լիրա, դէմք կարենայ հատուցանել այս գումարէն 450 լիրայի տոկոսեաց գումարը, և աւելցած 600 լիրան տարուէ տարի մաս մը պարտուց գլխագումարին թերշուլու հատուցանելով՝ հինգ վեց տարիէն այն պարտուց ամբողջապէս մարուել ու բառնալ : Դուռով վարժարանին ծախուց՝ կալուածական նորոգութեանց և այլոց, ու դիտոյ դէմք յատկանան միւս կալուածոց տարեկան 400 ոսկւոյ հասոյթն և ընդ նմին եկեղեցւոյն վաքֆաց տարեկան 300 ոսկւոյ արդիւնքն, ընդ ամենն 700 լիրա Օսմանեան :

Ուստի Տեառ. խորհրդոյ հետ համաձայնելն՝ կալուածոց Հողաբաժնութեան այս նոր շինութեանց առաջարկին ու յատակագծին՝ յարակից կարգադրութեանց հետ օգտակար և ընդունելի գտնելով, ձեռնարկելու համար իր հաւանութիւնը տուաւ, դարձեալ բառ առ նմին Վարչութեան և Տեառ. խորհրդեան՝ անուշներ կարգելով, և որոշեց նաև Կալուածական Հողաբաժնութեան համաձայն՝ որ Ղալաթիոյ ի Թօփհանէ ճամբու, ի Պէյօղլու ի Աւքրըլըր փողոց նորոգ կառուցեալ ընդարձակ կալուածոյ հասոյթն ամբողջապէս տալով՝ որ և է բացառիկ դէպքէ ծառայելու յատկանալ անխափան կալուածոց շինութեան պարտուց տոկոսին և գլխագումարին :

## Ե.

## ՍԱՄԱԹԻՈՅ ՀՐԿԻԶԵԱԼ Ս. ԳԷՈՐԳ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՇԻՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐ

Սամաթիոյ Թաղ. խորհրդոյ կողմէ գրով և բանիւ շրջինք եկեղեցւոյ շինութեան համար եղած առաջարկութիւնք, որ էր՝ ազգին երեւելի անհատներէն յանձնաժողով մը կազմել վերաշինութեան գործը հանգանակութեամբ յաջողցնելու համար, յանձնուեցաւ Տնտեսական խորհրդին, որպէս զի Սամաթիոյ եկեղեցւոյ անտուկին վիճակին քննէ և անոր վրայ լիուլի տեղեկութիւն հաղորդէ Վարչութեան : Տնտ. խորհուրդն ալ յիշեալ եկեղեցւոյ մնացելին ընդհանուր հաշուեցոյցը քննելով Վարչութեան տեղեկագրեց թէ Թաղին մնացին 340000 ղրուշ

պարտք ունի այլ և այլ անձանց, 145000 ղրուշ. այ տարեկան հասոյթ և 110000 ղրուշ ալ ծախք ունի, որով 35000 ղրուշի տարեկան յաւելուալ չափ մը կունենայ, որ եթէ նոյն պարտուց վճարման յատկացուի տասն տարիէն հազիւ [illegible] կարենայ պարտուց բեռէն ազատիլ։ Ժողովս Սամաթիոյ թաղային անուշիկ վիճակին խնամոյն եան, եկեղեցւոյ շինութեան գործը խորհրդածութեան արժանի գտաւ, սակայն ժամանակ չունեցաւ անով զբաղելու։

Դ.

ՍԱՄԱԹԻՈՅ ԹԱՂ. ԽՈՐՀՐԴՈՅ ԵՒ ԿԻՒՄԻՒՇՃԵԱՆ ԺԱՌԱՆԳՈՐԴԱՑ ՄԷՋ ԾԱԳԱԾ ԽՆԴԻՐԸ

Հանգուցեալ Կիւմիւշճի Գասպար աղայի և որդւոյն համար պատրաստուած գերեզմանաքարերն իրենց տեղը դրուելու մասին Սամաթիոյ թաղ. խորհուրդն արգելք կըլլար պատճառելով թէ Սամաթիոյ եկեղեցւոյ դպրոցին շինութեան համար նոյն գերդաստանին կողմէ մատուցուած գումարն անբաւական եղած է շինութեան բոլոր ծախքը հոգալ, որ 3 հազար ոսկւոյ յանգած է, և կխնդրէր որ եթէ հանգուցելոյն եկեղեցւոյն բակին մէջ թաղման համար է միայն տրուած գումարն, դպրոցին վրայ գրուած յայտարարութիւնն ջնջուի, և եթէ ոչ՝ դպրոցին շինութենէն բաց մնացած ծախքն ալ իրենց կողմէ վճարուի և այնուհետև գերեզմանաքարերն իրենց տեղը դրուին։

Ժողովս սոյն խնդիրն երկու կողման ներկայութեան քննելով, և դպրոցին շինութեան ծախուց պակասը լրացնելու խնդիրն երկրորդական համարելով, նախ հանգուցելոց գերեզմանաքարերը զետեղել տուաւ, և յետոյ դպրոցին շինութեան նկատմամբ նախորդ թաղ. խորհրդոյ և Կիւմիւշճեան գերդաստանին մէջ եղած պայմանագրութիւններն ի քնին առնելով, ներկայ թաղ. խորհրդոյ յարուցած խնդրոյն մէջ իրաւունք մը չգտաւ, սակայն միւս կողմէ Սրբազան Պատրիարք Հօր յանձնարարեց որ Կիւմիւշճեան գերդաստանին ազգասիրութեան յորդոր կարդայ Սամաթիոյ եկեղեցւոյն շինութեան միջոցին բաւ [illegible] գումար մը նուիրելու։

Ե.

ՔԱՐԱԿԷՕՄՐԻԿԻ ՄԷՋ ԿԻՐԱԿՆՕՐԵԱՑ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ ՊԱՏԱՀԱԾ ՎԷՃԸ

Քարակէօմրիւկի թաղ. խորհրդէն եկած մէկ գրութիւն, որով թաղին Աստուածաբանական անուն ընկերութեան կողմէ կիրակնօրեայ դասախօսութեանց պատճառաւ յարուցեալ անկարգութեանց դէմ բողոքելով կհամարէր, նկատողութեան առնլով Ժողովս և սոյն պատճառաբանեալ հրամայականն անընդունելի գտնելով պատասխանեց թաղ. խորհրդին որ իր պաշտօնը շարունակէ և անկարգութեան հեղինակները յանդգնութիւն ընելու համար պէտք եղած ջանքն ընէ, և եթէ չյաջողի՝ յայտնէ անուանէ իմացնէ ի Պատրիարքարան. որպէս զի զգաստացուցիչ միջոցներ ի գործ դրուին։ Սակայն անկարգութեան հեղինակներն անդադար մնալով, ի վերջէ իրենց արարքն այն աստիճան հասուցին որ թաղ. խորհրդոյ և դպրոցական հոգաբարձութեան և իրենց մէջ ծանր կռիւ պատահելով Ոստիկանութիւնը միջամտեց և քանի մը անձինք ի բանտ մտան։ Իրաց այս վիճակին վերջ տալու նպատակաւ Ժողովս որոշեց որ նախ բան զամենայն կիրակնօրեայ դպրոցները Ուս. խորհրդոյ կողմանէ շինուելու կանոնագրութեան մը ենթարկէ, հետևաբար շրջաբերական մը գրելով առ թաղ. խորհուրդս, կիրակնօրեայ դասախօսութեանց պատճառաւ դպրոցներուն առժամ բանալն արգիլեց և պատուէր տուաւ որ կիրակնօրեայ դասախօսութիւն ընել ուզող ընկերութիւններ ուրիշ տեղ մը վարձեն և հոն կատարեն իրենց պաշտօնը։

Ժողովս այն ինչ կպատրաստուէր սոյն վերջին անօրէնութեան մասին Ուս. խորհրդոյ տեղեկութիւն և կանոնագրութիւն մը ընելու համար հրահանգ տալ, սոյն խորհուրդը իր դիտողութիւնները կանխեց ներկայացնելու։ Ժողովս ձայնակցութեամբ Սրբազան Պատրիարք Հօր յայտնեց թէ Վարչութիւնն ազգին մէջ ուսմանց ծաւալման և դաստիարակութիւնն ընդ-

հանրացնելու ամէնէն աւելի կիրարկելի և եթէ գիշերներն անգամ՝ դպրոցները բանալ հարկ ըլլայ դաստիարակութեանց համար, սիրով կհաւանի սակայն պէտք է որ Ուսումնական խորհուրդն ապահովէ զգուշութիւնն որ կիրակնօրեայ դասախօսութեանց առթիւ չլինի տեղի ունենան այնպիսի սկզբանց քարոզութիւններ՝ որոնք տէրութեան, եկեղեցւոյն, վարչութեան և ընդհանուր բարոյականութեան դէմ լինին: Սրբազան Պատրիարքին աւելցուց նաև թէ ինք տէրութեան և եկեղեցւոյն և ազգին առջև պատասխանատու է ազգային յարկերու ներքև տեղի ունեցած՝ ամէն անցքերու և քարոզութիւններու համար, վերջապէս ժողովս Սրբազան Պատրիարք Հօր հետ համաձայն, առաջարկեց որ Ուսումնական խորհուրդը կանոնագրով մը կիրակնօրեայ դասախօսութեանց վերաբերեալ օրէնքներ սահմանէ զեղծմունք չի պատահելու համար, և թէ մինչև որ այսպիսի կանոնադրութիւն մը վաւերացուելով գործադրութեան չենթարկուի, ժողովս չկրնար իր վերջին որոշումն ետ առնել:

Ուսում. խորհրդոյ ատենապետ Լփճեանն որ անձամբ ներկայացած էր ժողովոյս, համաձայնելով այս առաջարկութեան, իր խնդրանաց համեմատ և ըստ նախորդ որոշման ժողովոյս գրով հաղորդուեցաւ խորհրդին՝ պէտք եղած ծրագիրը պատրաստելու համար:

9.

Իւսկիւտարի Սէլամսըզի Թաղ. խորհուրդը գրով և անձամբ առաջարկելով որ նախորդ Թաղ. խորհրդէն մնացած մէկ երկու փոխառութեան պարտուց կարգադրութեան համար տեղւոյն դպրոց ընկերութեան քով պատրաստ գտնուած դրամը 91 օր պայմանաժամաւ փոխ առնել տրուի, ժողովս նոյն առաջարկութեան սկզբունքն ընդունելով յանձնեց Տնտ. խորհրդոյ, պայման զի թէ՛ Թաղ. խորհուրդը և թէ՛ դպրոց ընկերութիւնը հրաւիրելով իր ներկայութեան պէտք եղածը տնօրինէ:

10.

Մայր եկեղեցւոյ Թաղ. խորհրդոյ դէմ Թաղեցւոց կողմէ եկած բողոքագրի մը վրայ, որով խորհրդին անդամոց մեծագոյն մասին Սահմանադրութեան դէմ բռնած ընթացքը ցուցնելու համար ինչ ինչ արարքները թուելով կամբաստանէին և քննութիւն կպահանջէին, ժողովս տեսնելով նաև Թաղ. խորհրդին մէջ եղած անհամաձայնութիւնը՝ որոյ պատճառաւ անդամներէն ոմանք իրենց պաշտօնը լքած էին, յատուկ մասնաժողով մը կարգեց ընդ նախագահութեամբ Պատրիարքական փոխանորդ Հօր ի քննին առնելու և ըստ արդեանց քննութեան պէտք եղածը տնօրինելու համար: Մասնաժողովը միանգամ նիստ ընելով ի խորհրդարանի մայր եկեղեցւոյ, քննութեան հրաւիրելի անձանց մէջ հիւանդ գտնուելուն պատճառաւ քննութիւնը Զատկէն ետքի ձգել հարկ ըլլալը յայտնեց ժողովոյս, և թէպէտ նոյն միջոցին Թաղ. խորհուրդն իր հրաժարականը մատուցանելով՝ ընդունուիլը պնդեց, սակայն ժողովս մինչև յաւարտ քննութեան պաշտօնին շարունակելու յորդորեց և չընդունեց հրաժարականնին: Իսկ զկնի Զատկին Թաղ. խորհուրդն իր մէջ համաձայնելով՝ առանց քննութեան սպասելու խնդրովին Սրբազան Պատրիարք Հօր հրաժարական մատուցանելուն վրայ Նորին Սրբազնութիւնը նոր ընտրութեան հրահանգ ղրկելը ծանոյց ժողովիս և արձանագրել տուաւ: Ուստի և բողոքարկու Թաղեցիք երբ նորէն ներկայանալով ժողովոյս, Թաղ. խորհրդոյ հրաժարականին չընդունուիլը և նախ որոշեալ քննութեան շարունակուիլը պնդեցին, ժողովս նոյն այս վերջին բողոքն յանձնեց Սրբազան Պատրիարք Հօր քանի որ Նորին Սրբազնութիւնն արդէն Թաղ. խորհրդոյ հրաժարականն ընդունելու տնօրէնութիւնն ըրած էր:

11.

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԽՈՐՀՐԴՈՅ ԱՌԱՋԱՐԿՈՒԹԻՒՆՔ

Ա. Մայրաքաղաքիս Թաղերուն վարժարանաց պիւտճէն որոշելու և ըստ այնմ իւրաքանչիւր վարժարանի ուսմանց ծրագիրը սահ-

*մանելու համար ըստ առաջարկութեան Ուսմ. Խորհրդոյ վարչական յանձնաժողով մը կազմուեցաւ, որ անձամբ Թաղերը շրջագայելով պէտք եղածը տնօրինէ այս մասին ։*

Բ. *Ուսմ. Խորհրդոյ՝ Կեդր. սնտուկի պիւտճէին մէջ դաստիարակութեան համար տարեկան 120 հազար ղրուշի գումար մը անցնելու առաջարկութեան գալով, Ժողովս յիշեալ Խորհրդոյ հետ բանակցելէ ետև սոյն առաջարկութեան չկրնալ ընդունուիլը յայտնեց և բաւական համարեց խոստանալ միայն՝ որ պիւտճէին մէջ նշանակուած կեդրոնական տուրք հաւանական գումարէն եթէ աւելին գոյանայ, այն աւելորդն պիտի յատկացուի դաստիարակութեան ։ Այս խորհրդածութեամբ որոշուեցաւ պիւտճէին տակ իբրև կարևոր ծանօթութիւն յաւելունել թէ Կեդր. տուրքը պիւտճէին մէջ նշանակուածէն ո՛րչափ որ աւելնայ, այն աւելորդը դաստիարակութեան պիտի յատկանայ, և եթէ աւելորդն 60 հազար ղրուշն անցնի, միայն 60 հազար ղրշ. այս տարուան համար դաստիարակութեան պիտի յատկանայ ։*

Գ. *Վարժապետանոցի շինութիւնն սկսելու առաջարկութեան գալով, առ այժմ մնալ որոշուեցաւ, մինչև որ Գալաթիոյ հրկիզեալ կալուածոյ շինութեան համար կարգուած յանձնաժողովէն վարժապետանոցի շինութեան յատակագիծը գայ, որուն համար յիշեալ յանձնաժողովին յանձնարարութիւն եղած էր զատ յատակագիծ մը պատրաստելու ։*

## 12.

### ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ա. *Հիւանդանոցին սեփական կալուածներէն Ջանաքքալէի մէջ գտնուած ձիթաստանին վարձակալին յարքունիս ունեցած պարտուց փոխարէն գրաւման տակ դրուած ձէթերուն մէջէն հիւանդանոցին վերաբերեալ բաժինն ուզելու համար ըստ խնդրանաց Հոգաբարձութեան Թագրիր գրուեցաւ ։*

Բ. *Հայոց և Յունաց հիւանդանոցաց սահմանակից տեղերու փոխանակութեան խնդիրը ։ Յունաց Պատրիարքարանի հետ փոխանակել որոշուած հիւանդանոցի տեղերուն համար ըստ առաջարկութեան Սրբազան Պատրիարք Հօր առժամանակեայ սէնէտներ փոխանակուեցան երկուստեք, վաքֆի գործողութիւնն ի վերջէ կատարելու պայմանաւ ։ Այս տեղերուն փոխանակութեան համար Հիւանդանոցի Հոգաբարձութեան միջոցաւ Յունաց Պատրիարքարանի հետ խառն յանձնաժողով մը կազմելով, մանրամասն քննութիւնք կատարուեցան, այնպէս որ մեր ազգային սեփականութեան իրաւանց վնաս մը չգալու կերպիւ փոխանակութիւնը կատարուելով, գործն երկուստեք վճռի տակ չկենալու պայմանաւ յաջողութեամբ վերջացաւ ։*

Գ. *Հիւանդանոցի սեփական կալուածներէն Եէտի-գուլէի դուրսը գտնուած պարտիզին միւլքի և կէտիկի խնդրոյ մասին Հոգաբարձութեան տեղեկագիրը նկատողութեան առնելով Ժողովս և տեսնելով որ սոյն խնդրոյ կարգադրութեան համար անմիջապէս վարձակալին հետ դատ բանալ հարկ է, լիազօր արտօնութիւն տուաւ Հոգաբարձութեան, որպէս զի իւր կողմէ փոխանորդ մը կարգելով և պէտք եղած հրահանգները տալով, միանգամայն Հիւանդանոցի նախորդ մութէվէլլի Վսեմ. Փափազեան Գէորգ էֆէնտիի հետ ալ բանակցելով անկէ ալ պէտք եղած տեղեկութիւններն ստանալէ ետև, դատին ձեռնարկութիւն ընէ ։*

## 13.

### ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՈՐՀՐԴՈՑ ԱՌԱՋԱՐԿՈՒԹԻՒՆՔ

Ա. *Իւսկիւտար Ս. Խաչի Թաղ. խորհրդոյ առաջարկութիւնն Սալաճագ-տէրէսիի անպէտ գետնին վաճառման և եկեղեցւոյն պարտուց վճարման յատկանալու համար Տնտես. Խորհուրդը նկատողութեան առնլով յիշեալ գետնին վաճառումն ընդունելի, իսկ պարտուց վճարման յատկացուիլն անընդունելի դատած ըլլալը տեղեկագրած էր ։ Ժողովս ընդունելի համարեց Տնտ. խորհրդոյ տեղեկագիրն և ըստ այնմ գործադրութեան համար հրահանգ գրեց ։*

մէկ վերադիր ընել տալու իբրև հաշուոյն : Այն անօրէնութեան արդեանքը Պատրիարքարանի ծախքէն աւելի 2500 ղուրուշ պակսեցաւ :

5° Տնտեսական խորհրդոյ և Ելեւմտից Հոգաբարձութեան միաբանական յայտագրին համաձայն Կեդրոնական ժողովին դրամական ներկայ տագնապին մէջ խնայողութեան միջոց մը ի գործ դնելու նպատակաւ Պատրիարքարանի պաշտօնէից ամսականաց մասին եղած ընդհանուր զեղչի առաջարկութիւնն ալ նկատողութեան առնելով Ժողովս, և արդէն փափաքուած խնայողութիւնը ձեռք բերելու նպատակաւ Պատրիարքարանի մատակարարութեան և հաստատութեանց սեղանի ծախքը ջնջելու համար ըրած կարգադրութիւնը բաւական համարելով, պաշտօնէութեան թոշակին դոյզն աւելորդ գտաւ և որոշեց պաշտօնէից ամսականքն անփոփոխ պահել մինչև ի նոր անօրէնութիւն :

Զ. Ակնցի Փափազեան Յարութիւն աղայի կտակէն Ակնայ Ապուշխս գիւղի վարժարանին նուիրեալ և աւանդապահ Համամճեան Սարգիս աղային յանձնուած ակցիի մը գումարին հաշւոյ խնդիրը Տնտեսական խորհրդոյն յանձնախմբի մը ձեռօք քննած և Համամճեան Սարգիս աղան հրաւիրելով արդիւնքն իրեն ծանուցած ըլլալով, Սարգիս աղան հաւանած է եղեր այնօք եղած գումարը հատուցանել. և այս նպատակաւ իւր պարտագիրը խնդրած է, որ Ապուշխսի Թաղ. Խորհրդոյ քով ի պահեստի կընայ : Տնտեսական խորհրդոյն այս դրամական գործողութիւնը կարգադրելու համար Համամճեանի պարտագրոյն հոս բերուելն առաջարկելով, Ժողովս ընդունեց և Ակնայ Առաջնորդին գրել որոշեց :

Է. Ժողովս Տնտեսական խորհրդոյ մէկ յայտագիրը նկատողութեան առնելով, որով կ'յայտնէր թէ Թաղ. Խորհուրդներէն շատերն թէ պայմանեալ ժամանակին և թէ անժամանակ հրաժարելով հաշուեցոյցնին ալ միասին չեն դրկեր, և նոր ընտրութեան հրահանգ կխնդրեն, մինչդեռ Թաղ. Խորհրդոյ համար նախորդ Վարչութեան որով հրատարակուած Սահմանադրական հրահանգին 14դ յօդուածը կը պահանջէ որ հրաժարեալ Թաղ. Խորհրդէն հաշիւ չառած նոր ընտրութեան հրահանգ չտրուիր և Վարչութիւնը կհարկադրուի ամժամանակեայ Թաղ. Խորհուրդ կարգել մինչև որ հրաժարեալ խորհրդէն հաշիւները գան, այն դիտողութեանց վրայ բոլոր Թաղ. Խորհրդոց շրջաբերականաւ ծանոյց որ երբ հրաժարին պաշտօնէ, հրաժարագրին հետ նաև իրենց հաշուեցոյցը դրկեն, եթէ ոչ չպիտի կրնայ Վարչութիւնը նոր ընտրութեան հրահանգ տալ :

Ը. Տնտեսական խորհրդոյ յայտագրին վրայ Ժողովս Կէօքփինարի հրկիզեալ եկեղեցւոյ վերանորոգման խնդիրը նկատողութեան առնելով, Թաղ. Խորհրդոյ առաջարկութեան համեմատ չինութեան ձեռնարկելու հաւանութիւն տուաւ, ըլլալիք ծախուց գումարն որոշելով և բաց մնացած ծախուց տեղը լեցնելու համար հանգանակութեան դիմելու խնդիրնին ընդունելով :

Թ. Տնտեսական խորհրդոյ յայտագրին վրայ, Ժողովս Ղալաթիոյ կալուածոց հոգաբարձութեան այն առաջարկութիւնն' որ է Նորակառոյց կալուածներէն 231 թիւ խանութին ուրիշ սեպհականութիւնն եղած Լնֆինճիի կէտիկը գընով առնուլ 184 լիրայի և դարձնել յանուն եկեղեցւոյն Ղալաթիոյ' որ միւլքին տէրն է արդէն, ընդունելի գտաւ և գործադրութեան հրահանգ տալ որոշեց :

Ժ. Տնտեսական խորհրդոյ յայտագրին վրայ, Ժողովս' փոքր Ասիոյ բռնկելոց օգնութեան Մանածողլոյ ձեռամբ կատարուած հանգանակութեանց և բաշխմանց հաշուեցոյցը խնդրեց և առաջ նոյն Մանածողլէն, իւր համարատուութեան միջոցաւ Ազգային պատկառելի ժողովոյդ ի գիտութիւն հաղորդելու համար :

Հետևապէս' յիշեալ Մանածողլոյ նամակին հետ իւր դրկած հաշուեցոյցը նոյնութեամբ աստ կդնեմ .

## ՆԱՄԱԿ

Յորդորաշնորհ Արքազան Պատրիարք Հայր
Նախագահ Ազգ · Քաղ · Ժողովոյ

Ձեր բարձր Սրբազնութեան թիւ 659 և 1 Ապրիլ թուով հրամանագրին համեմատ ներփակեալ կմատուցանեմք Ձեր Սրբազնութեան, մեր յանձնաժողովոյ ձեռամբ կատարուած հանգանակութեանց և բաշխմանց 1875 Դեկտեմբեր 31 դադարեալ հաշուեցուցակին մի պատճէնը՝ զոր մի առ մի հրատարակած եմք որդէն լրագրաց միջոցաւ ։

Թէպէտև յիշեալ թուականէն ի վեր քանի մը գործողութիւնք ևս տեղի ունեցած են, բայց տակաւին հրատարակուած չըլլալուն երբ լրագրաց միջոցաւ հրատարակեմք, անոնց ևս հաշիւն Ձեր Սրբազնութեան ներկայացնելու պատիւը կունենամք ։

Մնամք Ձեր բարձր Սրբազնութեան խոնարհ ծառայք ․

Ի դիմաց յանձնաժողովոյ փոքր Ասիոյ սովելոց ․

Ատենադպիր — Ատենապետ
Յ · ՄԷՐՃԷՄ-ԳՈՒԼԻ — Յ · Գ · ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆ

Գանձապետ
Յ · ԿԻՒՄԻՒՇԵԱՆ

10 Ապրիլ 1876
Կ · Պոլիս

### Գ ·

### ՎԱՆՕՐԷԻՑ ԽՈՐՀՐԴՈՑ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ա · Արմաշու Վանուց Եսայեան աշակերտներէն ունեցած հին առնելիքի խնդիրը կարգադրելու համար Վանօրէից խորհրդոյ և Արմաշու Վանահօր առէջ թախանձանացը վրայ, Ժողովս Երուսաղէմայ Սրբազան Պատրիարքին հետ բանակցելով, նոյն աշակերտաց հասոյթէն՝ որոց վերադարձութիւնը Երուսաղէմայ աթոռին վրայ էր, յիշեալ պարտքը վճարուելու համար ըրած որոշումն Երուսաղէմայ Սրբազան Պատրիարքին ընդունել տալով, վերջացուց սոյն հինաւուրց խնդիրը ։

Բ · Վանօրէից խորհրդոյ մատուցած ուրիշ զանազան խնդիրներն ըստ մեծի մասին Խառն Ժողովոյ վերաբերելուն և սոյն Ժողովոյ համարատուութեան պատկանելուն, ներկայ համարատուութեանս մէջ նշանակել զանց առնուեցաւ ։

### Դ ·

### ԳԱՒԱՌԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

#### Ա.

#### ԱՂԹԱՄԱՐԱՑ ՎԱՆՈՒՑ ԱՐՔՈՒՆԻ ՏՈՒՐՔԸ

Աղթամարայ վանքէն եկած խնդրագրին համեմատ՝ Ժողովս ըստ նախնի հրահանգաց նոյն վանուց արքունի տուրքէ ազատ ըլլալու համար Թագրիր գրել որոշեց ։

#### Բ.

#### ԵԿԵՂԵՑԱԿԱՆԱՑ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՏՐՈՑ ԽՆԴԻՐԸ

Առաջնորդաց ոմանց կողմէ եկած տեղեկութեանց համեմատ կուսակալութեանց հրամանագիր ղրկուեր է որ եկեղեցականներէն ալ զինուորական տուրք առնուի, որ մինչև հիմա չկար և այս անսովոր տրոց բարձումը կխնդրէին ։

Սրբազան Պատրիարքը գաբուքեհեայի Աբրահամ Էֆէնտիին միջոցաւ Շուրայի Տէվլէթէն տեղեկացեր է այս բանին պատճառն, որ է Յունաց կղերականաց վարուցած ընելը ․ բայց ըստ որում Հայ եկեղեցականք այս բանը չեն ըներ, ուստի Հայ եկեղեցականաց համար այդ տուրքին բարձումը խնդրելու մասին Թագրիր գրուեցաւ ։

#### Գ.

#### ԵԿԵՂԵՑԵԱՑ ՇԻՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐ

Ա · Երզնկայէն մէկ ժամ հեռաւորութեամբ Ս · Օհան անուն գիւղին մէջ Գտնուած եկեղեցւոյ և անոր կից վարժարանի մը շինութեան համար Թաղրիր գրուեցաւ ։




# ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

## ԱԶԳԱՅԻՆ

### ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

1874 – 75 ԵՒ 1875 – 76 ԱՄԱՑ

ԵՒ

### ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՈՅՆ




1876

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Ս. ՄԻՔԱՅԵԼԵԱՆ

ՈՒԶՈՒՆ - ՉԱՐՇԻ ԳԼՈՒԽ ՇԷՐԻՖ ՓԱՇԱ ԽԱՆ ՎԵՐԻ ՅԱՐԿ ԹԻՒ 13

# ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

## ԱԶԳԱՅԻՆ

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

1874—75 ԵՒ 1875—76 ԱՄԱՑ

ԵՒ

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՆ




ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Ս. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

ՈՒԶՈՒՆ – ՋԱՐՇԸՒ ԳԼՈՒԽ ՇԷՐԻՖ ՓԱՇԱ ԽԱՆ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎ

| | | | |
|---|---|---|---|
| 1. | Ալաճեան Յովհան Փաշա | | Հրաժարեալ |
| 2. | Մաքսուտեան Սիմոն Պէյ | | |
| 3. | Տատեան Առաքէլ | » | Հրաժարեալ |
| 4. | Արզումանեան Յովհան Էֆէնտի | | Հրաժարեալ |
| 5. | Մամիկոնեան Միքայէլ | » | |
| 6. | Քափամաճեան Յարութիւն | » | |
| 7. | Մանուկեան Մանուկ | » | Հրաժարեալ |
| 8. | Խանամանեան Յակոբ | » | Հրաժարեալ |
| 9. | Արապեան Սարգիս | » | |
| 10. | Նորատունկեան Սիմոն | » | |
| 11. | Իկիադաշեան Ասատուր | » | |
| 12. | Խնդիրեան Յովհան | » | |
| 13. | Միքայէլեան Սիմոն | » | |
| 14. | Ժամանակչեան Պօղոս | » | Հրաժարեալ |

## ՀՐԱԺԱՐԵԼՈՑ ՏԵՂ ԸՆՏՐՈՒԱԾՆԵՐԸ

| | | | |
|---|---|---|---|
| 1. | Կոստանդեան Յակոբ Էֆէնտի | | Բացակայ |
| 2. | Փափազեան Կարապետ | » | |
| 3. | Աշնանոքեան Խաչիկ | » | |
| 4. | Աբրահամեան Սարգիս | » | |
| 5. | Էսաեան Մկրտիչ | » | Բացակայ |
| 6. | Հարէնց Աբրահամ | » | Հրաժարեալ |

Ազգային ծանուցման յուզմանց պատճառաւ. Կեդրոնական Վարչութիւնը Թափուր մնացած միջոցին շատ մը ազգային համայնական և անհատական խնդիրներ դիզուած էին Պատրիարքարանի դիւանատան մէջ. Թէ այս խնդիրները շուտով վերջացնելու և թէ՝ անհնարեայ խնդիրները նախնական քննութեան մը ենթարկելով մանրամասն և հասուն գիտակցութեամբ որոշելու և վճռելու համար Քաղ. Ժողովս իւր մէջէն Յանձնաժողով մը սահմանեց, որ դիզուած խնդիրներուն որոշումը փութացնելով՝ նոր պատահած խնդիրներուն յանձնման ու որոշմանցն ալ մեծ դիւրութիւն կուտար, զանոնք ամփոփ կերպիւ տեղեկագրելով Ժողովոյս։

Անկէց զատ, իւր գործողութիւններն աւելի կանոնաւոր և ճիշդ կատարելու համար Ժողովս Ներքին կանոն մը, և Պատրիարքարանը բարեկարգ վիճակի մը վերածելու համար ալ բարեկարգութեան կանոնագրութիւն մը շինելու նպատակաւ իւր մէջէն յանձնաժողովներ կազմեց, որք մինչև օրս շինուած թէ՝ Ներքին և թէ բարեկարգութեան կանոնագրութիւններն առջև ունենալով ժամանակին համեմատ ուրիշ նորեր խմբագրեցին, և Ժողովս գիտակցութեանց համաձայն արտագրուելով վաւերացուած։ Սակայն Պատրիարքարանի համար շինուած Ներքին կանոնագրութիւնը դիւանին նկատմամբ Ա.գ. Ժողովոյ որոշումը յապաղելուն պատճառաւ, չկրցաւ ամբողջապէս գործադրուիլ. սակայն անոր գործադրութիւնը յաջորդ Վարչութեան թողուած է։

* * *

# ՆԵՐՔԻՆ ԿԱՆՈՆԱԳԻՐ

## ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

1. Քաղաքական Ժողովը շաբաթը անգամ մը որոշեալ օր նիստ ընելու պարտաւոր է։

2. Ի պահանջել հարկին արտաքոյ կարգի նիստ կրնայ ընել Ա. Նախագահին կամ Դիւանին հրաւիրագրովը, ուր նաև նշանակելու է նոյն նիստին պատճառը։

3. Ժողովականք ամեն ատենական և արտաքոյ կարգի նիստերուն պարտաւոր են ներկայ գտնուիլ, որոշեալ ժամէն մինչև ատեանը գոցուելու ատեն, և եթէ մէկը բանաւոր պատճառաւ բացակայ ըլլայ, պարտական է կանխաւ գրութեամբ ծանուցանել Ժողովոյն։

4. Եթէ Ժողովական մը երեք անգամ իրարու վրայ Ժողովոյ նիստերուն առանց բանաւոր պատճառի և առանց գրաւոր ծանուցման բացակայ գտնուի, Ժողովոյ Ատենապետը պարտաւոր պիտի ըլլայ Սահմանադրութեան 39դ յօդուածը գործադրել։

5. Ժողովականք ներկայութեան տոմարին մէջ կստորագրեն իրենց ներկայութիւնը։

6. Ժողովականաց մեծագոյն մասին ներկայութեամբ եղած նիստը միայն օրինաւոր կը համարուի, և խնդրոց որոշումը կը տրուի յայտնի կամ գաղտնի քուէարկութեամբ և ձայնից առաւելութեամբ. բայց մեծագոյն մաս չըլլալով ալ դիւանին ներկայութեամբը ատեան կը բացուի, և միայն խնդրոց վրայ իրրև նախապատրաստութիւն վիճաբանութիւն կըլլայ որոշումը յաջորդ նստին վերապահելով։

7. Որոշման մը մէջ քուէները հաւասար եղած ատեն Նախագահին կողմը կը հակի, իսկ ի բացակայութեան Նախագահին Ատենապետին կողմը։

8. Բացակայ Ժողովականք Ժողովոյն մեծամասնութեան ըրած որոշումները ընդունելու պարտաւոր են։ Միայն եթէ բացակայ Ժողովականներէն մէկը դիտողութիւն մ'ունենայ, գրաւոր կերպիւ պիտի ներկայացնէ, որ կարձանագրուի առանց վիճաբանութեան։

9. Սահմանադրութեան 8դ յօդուածին համեմատ Քաղ. Ժողովոյ վերաբերեալ ամեն գործ, խնդիր և գրութիւնք Նախագահն անմիջապէս առանց յապաղման թուականը նշանակելով կը յանձնէ Դիւանապետին առաջին նիստին մէջ վիճաբանուելու, և նա ալ զայն արձանագրելով և թուականաւ պատահման կարգաւ նշանագրելով խնդրոց կարգը կդնէ։ Խնդրոյ մը Դիւանապետին չը յանձնելէն յառաջ եղած յապաղմանը պատասխանատու է Ա. Նախագահը, ինչպէս նաև Դիւանապետն

ալ պատասխանատու է իրեն յանձնուելէն ետքը ստացած յաջողմանը. բայց սոյն պատասխանատուութիւնը բնականաբար անհետ կ'ըլլայ երբ յաջողման վրայ բանաւոր և ընդունելի պատճառներ տրուին։

10. Թաղականն ժողովոյ դիւանը խնդրոց կարգը քննելով կառուցէ և ըստ այնմ կը ներկայացնէ ժողովոյն։ Անհրաժեշտական խնդրոց առաջնութիւնը դիւանին կը վերաբերի, բայց ժողովականք նախագահութեան միայն առաջարկութիւն ընելու իրաւունք ունին, և ամփոփարար առաջ նախընթաց նստին ատենագրութիւնը կը կարդացուի և ապա Խորհուրդներէն եկած տեղեկագրերը։

11. Անհրաժեշտական գործոց մը համար Ա. Նախագահը պարտաւորեալ է Սահմանադրութեան 8դ յօդուածին համեմատ վարուիլ։

12. Ըստ առաջին յօդուածի Սահմանադրութեան Ա. Նախագահը գործադիր իշխանութեան վարիչն ըլլալով պարտաւոր է ամեն նստի մէջ նախընթաց նիստերուն որոշած գործոց գործադրութիւնները գրաւոր և համառօտ կերպով Դիւանին յանձնել և չը գործադրուածներուն ալ պատճառներն յայտնել։

13. Ատենապետին պարտքն է՝

Ա. Ատեան բանալ և գոցել 7դ յօդուածին համեմատ։

Բ. Ժողովոյն բարեկարգութեանը հսկել։

Գ. Կարգաւ խօսք տալ ժողովականաց։

Դ. Մասնաւորաց խնդիրներուն մէջ ժողովոյ ներկայացող անձինքը հարցաքննել և անոնց պատասխանել ըստ որոշման Ժողովոյն։

Ե. Մեծագոյն մասամբ որոշուած տրուած խնդրոց անմիջական գործադրութեանը հոգ տանիլ Ա. Նախագահին հետ խորհրդակցելով։

Զ. Սահմանադրութեան 42դ յօդուածին համեմատ Խորհրդոց և Հոգաբարձութեանց վերաբերեալ խնդիրներն իրենց յանձնել և հսկել որ անոնք անյապաղ լուծուին։

14. Ատենադպրին պարտքն է Օրակարգին և արձանագրութեանց ճշդութեանը հսկել։

15. Ժողովոյ որոշումները նոյն օրուան նստին մէջ յատուկ տումարի մը մէջ Ատենադպրին կողմանէ համառօտ կերպիւ արձանագրուելէն ետքը, նոյն օրը Դիւանին կողմէն պիտի ստորագրուի և Ա. Նախագահին յանձնուի, որպէս զի Ա. Նախագահը կարողանայ անոնց անմիջական գործադրութիւնը հոգել։

16. Ժողովոյն ամփոփական ատենագրութիւնները Դիւանապետը կը խմբագրէ, և հետեւեալ նիստերուն մէջ կարդացուելով 15դ յօդուածին մէջ նշանակուած արձանագրութեանց համաձայն ըլլալը ժողովականաց դիտողութիւններէն ետքը ստուգուելով Դիւանի կողմէն կստորագրուի։ Ատենագրութեանց մէջ ժողովոյ որոշումներն արձանագրուելէն զատ նաև պիտի նշանակուին այն ժողովականաց խօսքերը, որք որոշմանց հակառակ կամ տարբեր կարծիք յայտնած են։

17. Ատեանը բացուելէն ետքը ոչ ոք կրնայ ներս մտնել առանց հրաւիրանաց Ատենապետի։

18. Ժողովոյ որոշմունք գրուած ամեն Պաշտօնական գրութեանց թէ տաճկերէն և թէ հայերէնը պատճէնները ժողովքին օրը գրասեղանին վրայ պիտի զատուին. և ժողովականներէն ուզողը պիտի կրնայ զանոնք աչքէ անցնել։

19. Թաղականն ժողովը թաղականն Մասնաժողով մը կը կարգէ ժողովոյ անդամներէն։ Թաղականն Մասնաժողովը իրեն ղրկուած խնդիրները կը քննէ և իր կարծիքը իբրև առաջարկութիւն Թաղականն ժողովոյ որոշմանը կը յանձնէ։ Խնդրոյ մը որոշումը միայն Թաղականն ժողովոյ մէջ կրնայ տրուիլ։

Հաստատեալ և վաւերացեալ Ազգային Վարչութեան Քաղաքական Ժողովէն ի նիստ ԽԲ. և ի 24 Յունվար 1875.

# ԿԱՆՈՆԱԳԻՐ

## ՆԵՐՔԻՆ ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ

## ԱԶԳ. ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ

### ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ ԵՒ ՊԱՇՏՕՆԵԱՅՔ

Ա.

Սրբազան Պատրիարքն Ազգային Ժողովոյ Նախագահն է և անոնց որոշմանց գործադիրը, միանգամայն Պատրիարքարանի գործոց ընթացքին բարեկարգութեան հսկող և պատասխանատու է՝ խորհրդական ունենալով իւր փոխանորդն ։

Բ.

Պատրիարքական Փոխանորդը խորհրդական է Սրբազան Պատրիարքին, և իւր յատուկ պաշտօններէն զատ փոխանորդաբար կը հսկէ նաև Ազգային Ժողովոց որոշմանց գործադրութեան ։ Միանգամայն պատասխանատու է Պատրիարքարանի ներքին բարեկարգութեան ։

Պատրիարքական Փոխանորդը ներկայ կը գտնուի Կրօնական, Քաղաքական և Խառն Ժողովոց նիստերուն ։

Գ.

Պատրիարքարանն ունի նաև երկու գլխաւոր պաշտօնեայ, Գափուքէհեայն և Դիւանապետն ։

Դ.

Պատրիարքական Փոխանորդին, Գափուքէհեային և Դիւանապետին ընտրութիւնը Սրբազան Պատրիարքին առաջարկութեամբ Քաղաքական Ժողովը նկատողութեան կառնու և պէտք եղածը կը տնօրինէ ։

Ե.

Գափուքէհեայն Կառավարութեան և Պատրիարքարանի մէջ եղած յարաբերութեանց գործակատար պաշտօնեայն ըլլալով, պարտական է Սրբազան Պատրիարքին և Փոխանորդ Հօր կողմէն իրեն յանձնուած գործերը կանոնաւոր կերպով կատարել և ամեն օր արդիւնքը գրով հաղորդել, ուպէս զի ժողովոց ներկայացուի ։

Գափուքէհեայն ներկայ կը գտնուի Քաղաքական և Խառն Ժողովոց նիստերուն ։

Գափուքէհեայն ունի մէկ օգնական մը թէ՛ Բ. Դրան և թէ՛ Ոստիկանութեան վերաբերեալ գործոց համար ։

Զ.

Դիւանապետը դիւանական գործոց կարգադրութեան գործադիր և պատասխանատու պաշտօնեայն ըլլալով, պարտական է իւր իրաւասութեան տակ գտնուած գրասենեակներուն մէջ եղող պաշտօնէից պարտքերին անթերի և անյապաղ գործադրել տալ ։

Դիւանական պաշտօնէից փոփոխութիւնն ու յաւելումը Դիւանապետին առաջարկութեամբ Քաղաքական Ժողովը նկատողութեան կառնու և պէտք եղածը կը տնօրինէ ։

Է.

ԴԻՒԱՆԱՏՈՒՆ

Կեդրոնական Դիւանատունն երեք գրասենեակներէ կը բաղկանայ, որք են՝ Խմբագրութեան, Արձանագրութեան և Վիճակագրութեան գրասենեակ, ընդ հսկողութեամբ և պատասխանատուութեամբ Դիւանապետին ։

### ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿ

Այս գրասենեակին մէջ կը խմբագրուին այն ամեն Հայերէն Տաճկերէն և Գաղղիարէն գրութիւնք, որ կը պատկանին Երեսփոխանական, Կրօնական և Քաղաքական ժողովոց որոշմանց ։

Դիւանապետն ունի իրեն հետ երեք խմբագիր դիւանադպիրներ, մէկը Կրօնականի, մէկը Հայերէնի և Գաղղիարէնի և երրորդը Տաճկերէնի յատկացեալ, որոց պաշտօնն է գլխաւորապէս դիւանապետին կողմէ յանձնարարեալ խմբագրական գործոց պատրաստել ։

Նոյնպէս ունի ուրիշ երեք դիւանադպիրներ, որոց երկուքին պաշտօնն է Հայերէն խմբագրութեանց ընդօրինակութեան և ուրիշ գրութեանց պարապիլ ։

### ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿ

Այս գրասենեակին մէջ կարձանագրուին Պատրիարքարան եկած այն ամեն թղթերը, զորս Արքազան Պատրիարքը կամ իր Փոխանորդը կարդալէ ետև, օրուան թուականը և որ ժողովոյ որ անկ են, վրան նշանակելով կը ղրկեն Արձանագրութեան գրասենեակը ։

Արձանագրութեան պաշտօնեայն նոյն թըղթոց համառօտութիւնն ընդհանուր տոմարի մը մէջ կարգահամարու արձանագրելէ ետև կը ղրկէ իրենց պատկանելոյ տեղերն՝ անոնցմէ ըստորագրութիւն առնելով. և երբ պատասխաններն ալ Խմբագրութեան դիւանէն առնէ, արձանագրութեան տոմարին մէջ պէտք եղած գործողութիւնները կատարելէ ետև կը յղէ իրենց տեղերը ։

Վերջապէս Արձանագրութեան պաշտօնեայն պատասխանատու է Դիւանապետին առջև Պատրիարքարան մտած ու ելած ամեն թղթոց համար, որոց պահպանութիւնն իրեն յանձնուած է ։

Արձանագրութեան պաշտօնեայն ունի իրեն հետ մէկ օգնական մը ։

### ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԵԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿ

Այս գրասենեակին պաշտօնն է

Ա. Վանօրէից, եկեղեցեաց, և ազգային որ և է հաստատութեանց թէ՛ շարժական և թէ անշարժ ստացուածոց վրայօք մանրամասն տեղեկութիւններ հաւաքել և կանոնաւոր տոմարներու մէջ արձանագրել ։

Բ. Ընդհանուր ազգահամար մ'ունենալ, որ պիտի պարունակէ ամեն ազգայնոց արձանագրութիւնք, հանդերձ վիճակագրութեամբ պատահած ծննդոց, վախճանմանց և ամուսնութեանց ։

Վիճակագրութեան պաշտօնեայն այս տեղեկութիւնները պիտի հաւաքէ վանահայրներէն, գաւառական վարչութիւններէն և Մայրաքաղաքիս Թաղական խորհուրդներէն, պէտք եղած հրահանգներն ու ցուցակներն անոնց հաղորդելով ։

## Է.

### ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՃԻՒՂԵՐԸ

Դատաստանական Խորհուրդն ունի օրէնսգէտ և տաճկագէտ պաշտօնեայ մը, որ այցելութեամբ նոյն խորհրդին գործողութեանց օրինական և խմբագրական մասերը պիտի կատարէ, և մէկ ալ [illegible] դիւանադպիր մը՝ որոյ պաշտօնն է դատական և ամուսնական արձանագրութեանց պատրաստել և փոխանորդարանի դիւանագրութիւնը կատարել ։

Տնտեսական Խորհուրդը և Ելմտական Հոգաբարձութիւնը միանալով՝ ունին մէկ դիւանադպիր, մէկ համարակալ, մէկ գանձապահ և մէկ Անցագրատան պաշտօնեայ, որ Վարչութեան հրահանգին համեմատ իրենց պաշտօնը պիտի վարեն ։

Ուսումնական և Վանօրէից Խորհուրդները և Կտակաց Հոգաբարձութիւնը միանալով՝ ունին մէկ դիւանադպիր մը, որոյ պաշտօնն է նոյն երեք ճիւղերուն վերաբերեալ գրական բոլոր գործողութիւնները և միանգամայն Ուսումնական խորհրդոյ արձանագրութիւնները և վանական կալուածոց ու Ազգին նուիրեալ կտակաց արձանագրութիւնները կատարել յատուկ տոմարներու մէջ ։

Այն խորհրդոց և Հոգաբարձութեանց պաշտօնէից ընտրութիւնն անոնց առաջարկութեամբ

Քաղաքական ժողովը նկատողութեան կառնու և այնպէս ճիւղը կը տնօրինէ ։

Թ.

Պատրիարքարանի խոհանոցը բոլորովին վերցուած ըլլալով, ամեն պաշտօնեայք իրենց բաժինն այսուհետ ընեն ուտեստի ծախքերնին, և բարապաններէն ու սենեկապաններէն զատ ուրիշ մէկը չպիտի կենայ գիշերները 'ի Պատրիարքարան ։

Ուստի Նշան Գույէն Ս. Յակոբայ վանուց մէջ Հիւրանոց անուամբ յարկ մը յատկացած է, ուր պիտի երթան Սրբազան Պատրիարքին յանձնարարականով 'ի Պատրիարքարան հիւր մնալու տեղաւորել անձինքը ։

Այս հիւրանոցի ծախուց համար կեդրոնական սնտուկէն ամսական հազար ղրուշ յատկացած է Հիւրանոցի սնտուկին ։

Ժ.

Պատրիարքարանն ունի փոխանորդ Հօր հսկողութեան տակ ընդհանուր վերակացու մը, որուն յանձնուած է Պատրիարքարանի բոլոր կահկարասիքը, և որ պատասխանատու է նոցա մաքրութեան և ապահովութեան, և իւր հսկողութեան տակ պիտի ունենայ

Մէկ սենեկապան Դիւանատան համար

Մէկ » Փոխանորդարանի »

Երկու սպասաւոր ծառայութեան և մաքրութեան համար.

Հինգ վեց բարապան (եասաքճի), որոց մէկը գլուխ պիտի ըլլայ, և ամենքը մէկէն ընդհանուր վերակացուին հսկողութեան տակն են ։

Մէկ ալ դռնապան ։

Վերոյիշեալ սպասաւորաց փոփոխութիւնը Փոխանորդ Հայրը տնօրինելէ ետև՝ պաշտօնաները Քաղաքական ժողովոյ կը հաղորդէ ։

ԺԱ.

ԿԱՆՈՆՔ ՎԱՆԻ ՊԱՇՏՕՆԷԻՑ

Այսպէս քանի որ պատճառի որ և է, պաշտօնեայ չպիտի զրկուի իւր պաշտօնէն ։

Ազգին ծառայութեան յատկացեալ պաշտօնեաներն երբ երկար ծառայութենէ ետև ծերութեան կամ ցաւագարութեան պատճառաւ անկարող լինին այլ ևս իրենց պաշտօնը շարունակելու, ըստ հետևեալ հրահանգի դրամական ամսական պիտի առնեն մինչև ցմահ Ազգային Սնտուկէն ։

Անոնք՝ որ 10 տարի շարունակ ասոնց բարոյական պահպանութեան և հաւատարիմ ծառայութեանց անկարող գտնուին, պիտի առնեն իրենց ամսականին հարիւրին երեսունը, իսկ 10 տարիէն աւելի ծառայողներուն փոխարժան ամսականը համեմատաբար տարւոյ տարի հարիւրին մէկ պիտի յաւելնոյ, այնպէս որ ամբողջ երեսուն տարի ծառայողները իրենց ամսականին հարիւրին յիսուն և քառասուն տարի ծառայողները հարիւրին վաթսուն դրամական ամսական պիտի առնեն ։

ՀՐԱՀԱՆԳՔ ԿԱՄ ԿԱՆՈՆՔ ՀԱՄԱՐԱԿԱԼՈՒԹԵԱՆ ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ

Ա.

ՀԱՄԱՐԱԿԱԼ

1. Պատրիարքարանի համարակալը մաքուր ձեռնատետր մը կամ յիշատակարան մը պիտի բռնէ և ամեն դրամական գործողութիւնները պատահածին պէս հոն պիտի արձանագրէ թէ մուտք ըլլայ և թէ ելք ։

2. Ձեռնատետրէն անմիջապէս դանազան օժանդակ տետրակներու մէջ պիտի անցնէ պատահած գործողութիւնները, օժանդակ տետրակներուն երեսաչափերը ձեռնատետրին մէջ և ձեռնատետրին երեսաչափը օժանդակներուն մէջ նշանակելով ։

3. Ամեն օր ձեռնատետրին մէջէն նման գործողութիւնները ամփոփելով գումարները կրկնատումարի ոճով օրինաւորապէս օրհաշիւը փոխադրելու և անկէց ալ մայր հաշիւն անցընելու է ։

4. Ամեն ամսագլուխ Ցնծական խոր-

հսկէ և Ելմտական Հոգաբարձութիւնք սնտուկի տետրակը պիտի վաւերացնեն իւրաքանչիւր գործողութիւն իր համակշռոյն հետ բաղդատելով ։

5 . Նաև համարակալը արձանագրութեան տետր մը պիտի ունենայ Պատրիարքարանի սնտուկը աւանդ ձգուած գոյից համար , ուր իւրաքանչիւր աւանդին մուտքն ու ելքը կանոնաւորապէս պիտի արձանագրուին մինց պատճառովը և ելքին հրամանովը , և այս աւանդները ծրարեալ և Պատրիարքարանի կնքովը կնքեալ պիտի ըլլան և ազգային սնտուկին մէջ պիտի պահուին ։

Նաև պիտի ունենայ առկախ վճարեալ գումարներու համար տետրակ մը , ուր ամեն առկախ վճարումներ թէ հաշուոյ մը մէջ խառնուած նշանակուած պիտի ըլլան և թէ զատ տետրակի մէջ և իւրաքանչիւր առ կախ վճարմանց լրանալուն մէջ փոխուելու են , բայց նշանակելով իրենց բուն արձանագրութեան տեղերը ։

6 . Համարակալը պարտաւոր պիտի ըլլայ ամեն երեկոյ թղթի մը վրայ նշանակել սնտուկին մուտքն ու ելքը և անոնց տարբերութիւնը նաև առ կախ վճարումներովը . այս թուղթը պիտի ցուցնէ Պատրիարքարանի սնտուկին մէջ գտնուած պատրաստ դրամը , զոր ինքն ստորագրելով և գանձապահին կնքել տալով պիտի յանձնէ Սրբազան Պատրիարքին ։

7 . Արկղէն ելած բոլոր գումարները նախ Համարակալը պիտի հաշուէ յատկապէս պատրաստուած թղթի մը վրայ անոր համեմատ պիտի ընդունի գանձապահը և պիտի կնքէ նոյն թուղթը . այս թուղթը դարձեալ համարակալին գալով պիտի արձանագրէ և անդորրագիրը համարակալը պիտի տայ և Ելմտական Հոգաբարձութեան կնքովը վաւերացնելէն ետքը այնպէս եղած գործողութիւնները պիտի կատարուին ։

8 . Նաև վճարման համար ելած հրամանագիրը նախ Համարակալը պիտի արձանագրէ և նոյն հրամանագրերուն վրայ արձանագրեալ ըսելով պիտի ստորագրէ և ետքը գանձապահը պիտի վճարէ , վճարման թղթերն ալ յատկապէս պատրաստուած ըլլալու են ։

9 . Ամեն տարեգլուխ մայր հաշիւէն քաղելով պիտի պատրաստէ տարեկան հաշուեցոյց և Տնտես . Խորհրդոյ և Ելմտական Հոգաբարձութեան պիտի ներկայացնէ և անոնց ստուգել տալով նոյնը պիտի յղուի առ Քաղ . Ժողովն ։

Բ .

ԳԱՆՁԱՊԱՀ

10 . Գանձապահը միայն սնտուկի տետրակ մը պիտի բռնէ որուն մէջ մուտքն ու ելքը կանոնաւոր կերպով պիտի նշանակէ ։

11 . Մտից համար միշտ իրեն հինգը պիտի գտնուի Համարակալին քովը և ելից համար ալ իր քով հրամանագրերը պիտի գտնուին Համարակալէն ստորագրեալ ։

12 . Ամեն երեկոյ իր տետրակը Համարակալին սնտուկին տետրին հետ պիտի բաղդատէ և առ Սրբազան Պատրիարքն տրուած հաշուեթուղթը պիտի կնքէ ։ Գանձապահը պիտի ունենայ նաև երկու տետրակներ ալ , մին Պատրիարքարան աւանդ ձգուած գոյից համար և միւսը առ կախ վճարմանց համար ։

Այս տետրակներուն ձևերը Համարակալին այս մասին բռնած տետրակներուն ձևովը պիտի ըլլան ։

13 . Գանձապահը ինքնին մէկուն բան մը չ'պիտի վճարէ , բայց միայն իրեն յղուած հրամանագրերու վրայ՝ որք արձանագրեալ և ստորագրեալ են Համարակալէն ։

Գ .

ԱՆՑԱԳՐԱՏԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՑ

14 . Անցագրատան պաշտօնեայն իրեն եկած գործերը նախ Համարակալին պիտի ղրկէ , որ Թաղ . Խորհրդէն տրուած ծանուցագրին համեմատ Պատրիարքարանէն առնուելիք տուրքը հաշուէ և պաշտօնական թղթի մը վրայ նշանակէ ստորագրելով , որուն համեմատ գանձապահը կընդունի դրամը և կը կնքէ թուղթը , գանձապահէն կնքեալ թուղթը համարակալը պահելով պաշտօնական անդորրագիրը կուտայ և անոր վրայ Անցագրատան պաշտօնեայն պաշտօնական ծա-

նամակագիրը կը գրէ և համարակալն ալ զայն կը կնքէ պաշտօնական կնքով ։

15 . Անցագրատան Պաշտօնէին բոլոր գործողութիւնները այս կերպով կը կատարուին ։

16 . Անցագրատան պաշտօնեայն տետրակ մը պիտի բռնէ ուր պիտի նշանակէ իր գրած ծանուցագրերը իրենց տեսակով, թուովը և անձանց անուններովը, այս տետրակը այնպիսի ոճով մը պիտի ըլլայ որ ամեն ատեն կարող ըլլայ մէկը դիւրութեամբ յայտնապէս տեսնելու որ քանի տեսակ ծանուցագիր գրած է և գանձապահը իւրաքանչիւր տեսակին համար ո՞րչափ դրամ ընդունած է և համագումարը ո՞րչափ է ։

Դ .

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿԱՆՈՆՔ ԵԼՄՏԱԿԱՆ

Պատրիարքարանի ստուգին մուտքերն են հետևեալ հասոյթները .

Ա . Կալուածական ծանուցագրերը .

Բ . Ճանապարհորդաց անցագրի և արհեստաւորաց հրամանագրի վկայականք ։

Գ . Նշանտուութեան և հրամանի հասոյթ .

Դ . Գաւառական մուղաթա քաղած և մայրաքաղաքիս եկեղեցիներէն առնուած քանչէլէր քաշուած տուրքերը .

Ե . Աթոռական տուրք .

Զ . Զանազան հասոյթներ ,

Իսկ ստուգին ելքն են ,

Ա . Պատրիարքարանի պաշտօնէից ամսականք .

Բ . Յատկացեալ ամսականք .

Գ . Նշանտուքի ծախք .

Դ . Զանազան կամ ընդհանուր ծախք .

18 . Կալուածական ծանուցագրերու համար յատկապէս Ելմտական Հոգաբարձութեան կողմէն թուագրեալ և ստորագրեալ 50, 110, 160 և 260 ղրուշնոց անդորրագրեր պէտք են, որք համրանքով Համարակալին տրուելու են իրմէ ստորագրութիւն առնելով, այս ստորագրութիւնը Տնտեսական Խորհրդոյ և Ելմտական Հոգաբարձութեան դիւանը պիտի մնայ և այս գործողութիւնը պիտի կատարուի ըստ 14 րդ յօդուածի ։

19 . Ճանապարհորդաց անցագրի և արհեստաւորաց հրամանագրի վկայականի հասոյթը ամբողջապէս Հիւանդանոցի վերաբերելով, Հիւանդանոցի Հոգաբարձութեան կողմէն թուագրեալ և ստորագրեալ անդորրագրեր պէտք են, որք համրանքով համարակալին տրուելու են իրմէ ստորագրութիւն առնելով, այս ստորագրութիւնը Հիւանդանոցի Հոգաբարձութեան քով կը մնայ և այս գործողութիւնը կը կատարուի ըստ 14 րդ յօդուածի և շաբթէ շաբաթ կամ ամսէ ամիս համարակալը Հիւանդանոցի Հոգաբարձութեան հրամանին վրայ հաշիւը կատարելով և ստորագրելով և ստորագրել տալով Հիւանդանոցի Պաշտօնէին գանձապահը կը վճարէ Հիւանդանոցի վերաբերեալ այս հասոյթը ։

Համարակալը Հոգաբարձութեան հրամանագիրը ստորագրել կուտայ տակն ընդունող Պաշտօնէին գումարը մէջը նշանակել տալով ։

20 . Նշանտուութեան հասոյթին համար փոխանորդ Հօր և Հիւանդանոցի Հոգաբարձութեան կողմէն կարգեալ պաշտօնէին ստորագրութեամբը տարիճանը, նշանուողներուն անունը, մականունը և ուրիշ պարագաները նշանակեալ թուղթ մը գալ պէտք է համարակալին, որ ըստ կանոնի հաշուելու է և հաշիւը նոյն թղթին վրայ նշանակելով ստորագրելու է . այս թղթին համեմատ գանձապահը դրամը առնելու և ստորագրելու է, այս թուղթը Համարակալը պահելով պաշտօնական անդորրագիրը կնքեալ և ստորագրեալ յանձնելու է և ասկէ ետքը Փոխանորդ Հայրը ուրիշ պաշտօնական արձանագրութիւնները և գործողութիւնները կատարելու է ։

Հրամանագրի համար ալ այս ձևը բռնելու է ։

Հիւանդանոցի բաժինն ալ պիտի վճարուի 19 րդ յօդուածին համեմատ ։

21 . Գաւառական մուղաթա և մայրաքաղաքիս եկեղեցիներէն քանչէլէր առնուած տուրքերուն յատկացեալ որոց համար յատուկ անդորրագրեր շինել պէտք է, որք համարակալին քով կը մնան և երբ վճարուի և գանձապահը համարակալին շինած հաշուեթուղթը կնքէ, հա-

մարակողը վաւերացնել և կնքել անդորրագ-րերէն կուտայ ։

Մուգաթայի վերաբերեալ անդորրագրերը թէ՛ Սրբազան Պատրիարքը և թէ Ելմտական Հոգաբարձութիւնն ստորագրած ըլլալու է ։

Իսկ քանչէլէրի անդորրագիրը միայն Ելմտական Հոգաբարձութիւնը կստորագրէ ։

22. Կեդրոնական տուրքը՝ որոց Պաշտօնէից ձեռօք կը հաւաքուի համարակալեալ ընդունած անդորրագրերուն վրայ։ Տրոց անդորրագրերը Ելմտական Հոգաբարձութեան կողմէն կը պատրաստուին, որք թուագրեալ և ստորագրեալ ըլլալու են և համրանիշով յանձնուելու են համարակալին իր ստորագրութեան վրայ. այս ստորագրութիւնը Տնտես. Խորհրդոյ և Ելմտական Հոգաբարձութեան դիւանը պիտի մնայ ։

Երբ տրոց պաշտօնեայն հաւաքած դրամները կեդրոնական սնտուկին կը յանձնէ, համարակալը գանձապահէն ստորագրութիւն մը առնելով տրոց պաշտօնէին անդորրագիր կուտայ ։

23. Զանազան հասոյթներն են.

Ա. Երդման համար Պատրիարքարան դիմողներէն առնուած մէկ մէկ մեճիտիէն՝ իրեն ծախք գրուած թէզքէրէին.

Բ. Որ և իցէ ստորագրութեանց և մկրտութեան վաւերացմանց համար առնուած մէկ մէկ մեճիտիէն ։

Գ. Փոխանորդագրի վաւերացման համար առնուած երկուքական մեճիտիէն ։

Դ. Գաւառաց Առաջնորդաց և գաւառական ազգային ժողովոց վաւերացման համար դրկուած Պատրիարքական կոնդակներէն իրենց մուգաթային վրայ 10 առ $^0/_0$ նմանապէս մայրաքաղաքիս քարոզիչներուն և 'ի վաւերացումն Թաղ. Խորհրդոց տրուած կոնդակներուն համար իրենց քանչէլէրին վրայ 10 առ $^0/_0$ առնուած տուրքը ։

Ե. Մայրաքաղաքիս Թաղ. Խորհուրդներէն տրուած կալուածական վկայագրերուն համար յատուկ դրոշմաթուղթ և բանով (քօչան) թղթեր կը պատրաստուին Ելմտական Հոգաբարձութեան կողմէն կնքեալ՝, որոց համար 50 ական փարայ կառնուի Թաղ. Խորհուրդներէն ։

Զ. Պատահականական հասոյթ.

Ասոնց համար դիւանական հասոյթ առնունով անդորրագիր ըլլալու են Ելմտական Հոգաբարձութեան կողմէ ստորագրեալ և թուագրեալ որք համրանիշով յանձնուելու են Համարակալին իրմէ ստորագրութիւն առնելով և իւր ստորագրութիւնն ալ Տնտեսական և Ելմտականի դիւանը պահելով պէտք եղած ատենք ստանձէ կուտայ փերթիչէլով կանոնաց համեմատ բունին մէջ թէ՛ առնուած ստակը և թէ խնդիրը նշանակելով, իսկ տրուած մասին վրայ միայն ստակը նշանակելով բայց պէտք է որ բունին մէջ նաև վճարողն ալ ստորագրէ ։

24. Ամեն ամսագլուխ Համարակալը կը պատրաստէ պաշտօնէից ամսականները պարունակող թուղթ մը, ուր պիտի նշանակուած ըլլան բոլոր պաշտօնէից անունները դիմացը իրենց ամսականը, այս թուղթը Ելմտական Հոգաբարձութենէն վաւերացեալ պիտի ըլլայ և Սրբազան Պատրիարքը տեսնելով հրաման կընէ 'ի վճարումն ամբողջապէս կամ մասամբ $^0/_0$ այսչափ ըսելով ներառեալ դրամական վիճակին համեմատ, այս թուղթը համարակալն ալ ստորագրելէ ետև գանձապահին կը յանձնէ և իւրաքանչիւր պաշտօնեայ իր առած դրամը իր անուանը դիմացը գրելով կստորագրէ ։

Ամեն ատեն բոլոր Պաշտօնեայք հաւասարապէս պիտի ընդունին իրենց ամսականները և երբ ամսականք թերհաշիւ վճարուին, ամենքն ալ նոյն համեմատութեամբ թերհաշիւ պիտի առնեն ։

25. Ուրիշ ամեն արտաքին ծախքերու համար Տնտեսականին ու Ելմտականին հաճութիւնն առնելով և անոնց քննութեամբը ստորագրեալ հաստատագրերու վրայ Ս. Պատրիարքը հրաման կընէ և Համարակալը արձանագրած ըլլալուն համար ստորագրութիւնը դնելէն ետքը գանձապահը կը վճարէ առնողին նոյն թուղթը ստորագրել տալով ։

26. Տնտես. Խորհրդոյ և Ելմտական Հոգաբարձութեան ամենուին անձամբ ծախս

պիտի ընեն, այլ Պատրիարքարանի Պաշտօնեայք պիտի ընեն իրենց հրամանաւը և միշտ ինչ բան որ առնուի կամ չինուի տուրքէն կամ չինալէն իրրև հաստատագիր ստորագրութիւն առնելու է տրուած նուէրները կամ չինած բանը մէջը գրուած ըլլալու պայմանաւ :

27. Թէ Պատրիարքարանի և թէ Թաղ. խորհուրդներէ և մասնաւորներէ տրուած ծանուցագրերը պէտք է որ Տէրութեան յատուկ դրոշմը ունենալէն զատ նաև կնքուած և Պատրիարքարանի կողմէ տրուած ըլլան պէտք եղած տեղերը, և այս դրոշմն. ծանուցագրերը որ յիշեալ կերպով չեն, տարօրինակ կը համարուին, և այս ազգային կարգադրութիւնը հարկ եղած տեղերը պէտք է ծանուցանել :

---

Ժողովս նկատելով որ մայրաքաղաքիս Թաղական խորհրդներուն և երեսփոխանութեան ընտրութեանց առթիւ միշտ խռովութիւնք և գժտութիւնք պակաս չէ, այս խռովութեանց առջևն առնելու նպատակաւ ընտրական գործողութեանց համար հետևեալ հրահանգը պատրաստեց :

# ՀՐԱՀԱՆԳ

## ԸՆՏՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹԵԱՆՑ

### ԸՆՏՐՈՂԱԿԱՆ ԺՈՂՈՎ

1. Թաղական խորհուրդը Ընտրողական ժողով կը կազմէ ընդ նախագահութեամբ Թաղին Քարոզչին կամ անոր չեղած տեղ՝ Աւագերիցուն :

2. Թաղական խորհուրդը գաղտնի քուէարկութեամբ երեքէն մինչև վեց Թաղեցիներ կընտրէ, որք Թաղական խորհրդոյ հետ ի միասին կը կազմեն Ընտրողական ժողովը :

3. Ընտրողական ժողովոյ անդամք ընտրողութեան իրաւունք և հանգամանք ունեցող պատուաւոր Թաղեցիներէն պիտի կազմուին :

4. Ընտրողական ժողովը ընդ նախագահութեամբ Քարոզչին կամ Աւագերիցուն կը կազմէ իր Դիւանը, որ կրնայ Թաղական խորհրդոյ դիւանին մէջէն կամ զատ կազմել ըստ հաճութեան ժողովոյն :

5. Ընտրողական ժողովը Թաղին մէջ ըստ Սահմանադրութեան ընտրողութեան իրաւունք ունեցողներն առնելով, այբուբենի կարգաւ ընտրողաց ցանկ մը կը պատրաստէ, նշանակելով ըստ կարելւոյն ընտրողաց անունը, մականունը, արհեստը, փողոցը և տանը թիւը : Այս ցուցակը առնուազն ութ օր կը կախէ Թաղական խորհրդարանը ժողովրդեան տեսանելի կերպով, հրատարակելով ծանուցմամբ որ դիտողութիւն ունեցող անձինք կամ անձամբ ժողովոյն ներկայացնեն իրենց դիտողութիւնը, կամ բանկոյը գրուած յատուկ տոմարի մը մէջ գրութեամբ, ուր պիտի անուննին ստորագրեն, և իրենց բնակութեան փողոցն ու տանը թիւը նշանակեն : Անանուն դիտողութիւնք ընդունելի չեն :

6. Ընտրողական ժողովոյ դիւանը՝ ներկայացեալ դիտողութիւնքը քննութեան կառնու, և Ընտրողական ժողովոյն վճռութեամբը յաւելուած կամ զեղչ կ'ըլլայ ընտրողաց ցուցակին վրայ, ըստ ընկալեալ օրինաւոր տեղեկութեանց կամ դիտողութեանց :

7. Ով որ մինչև քուէարկութեան նախընթաց ուրբաթ երեկոյ դիտողութիւն մը չէ ներկայացուցեր Ընտրողական ժողովոյն ընտրողաց և ընտրելեաց ցանկերուն վրայ, քուէարկութեան օրը կամ յետոյ այս մասին իրաւունք չունենար դիտողութիւն կամ բողոք ներկայացնելու :

### ԸՆՏՐՈՂՔ

8. Ընտրողութեան իրաւունք ունին Թաղին այն բնակիչները միայն որոնք Կեդրոնական տըրոց Թաղային տետրին մէջ անուննին արձանագրել տուած են :

9. Թաղականի ընտրութեան մասնակցելու համար Սահմ. 55 դ. յօդուածոյն համեմատ իրաւունք ունի ամեն անհատ որ 25 տարին լրացուցած է և ըստ 67 դ. յօդուածոյ Սահմ. ընտրողական իրաւունքէ զրկուած չէ :

10. Երեսփոխանական ընտրութեան համար ըստ Սահմ. 65-66 և 67 դ. յօդուածոյ ընտրողութեան իրաւունք ունին այն Թաղեցիք որ 25 տարին լրացուցած, Օսմանեան հպատակ և

տարեկան 75 ղրուշ ազգային տուրք տուող են. և որ քրէական յանցանաց դատապարտեալ չեն. Ազգային գործոց մատակարարութեան մէջ նենգութեամբ բռնուած չեն, Ազգային ժողովոց մէկուն կողմէն Ազգային գործոց չգործածուելու վճիռ ընդունած չեն, Տէրութեան դատարաններուն կողմէն զգուշացուցիչ պատժոյն պայմանաժամը լրացուցած են, վերջապէս խելագարութեամբ անբուժական ճանչցուած չեն օրինաւոր կերպիւ ։

## ԸՆՏՐԵԼԻՔ

11. Թաղական խորհրդոյ համար ընտրելի են անոնք՝ որ Թաղական խորհրդոյ ընտրող ըլլալու իրաւունք ու հանգամանքներ ունին ։ Իսկ Երեսփոխանութեան համար ընտրելի են ըստ Սահմ. 68 դ. յօդուածոյ անոնք՝ որ 30 տարին լրացուցած են, Օսմանեան հպատակ են, Տէրութեան օրինացը տեղեակ, և ազգային գործոցը հմուտ են և ընտրողութեան իրաւունքէն զրկուած չեն, ըստ 67 դ. յօդուածոյ Սահմանադրութեան ։

12. Ընտրողական ժողովը գաղտնի քուէարկութեամբ ընտրելեաց եռապատիկ թուովը ցանկ մը կը պատրաստէ, զոր կը կախէ Եկեղեցւոյն բակին՝ առ նուազն 3 օր, ի տես ժողովրդեան, ծանուցանելով որ ընտրողք ազատ են այն ցանկէն դուրս ալ ընտրելեաց քուէ տալ ։

## ՔՈՒԷԱՐԿՈՒԹԻՒՆ

13. Ընտրողական ժողովոյ Նախագահը քուէարկութեան որոշեալ օրէն առաջ հրատարակել կու տայ ի Լրագիրս և Եկեղեցւոյ ու Թաղին դպրոցներուն դռները ծանուցում փակցնելով, և յիշելով հրաժարեալ երեսփոխանաց կամ Թաղականաց անունը, անոնց վերընտրելի ըլլալը, ընտրուելիք երեսփոխանաց կամ Թաղականաց թիւն և ընտրելութեան պայմանները, և քուէարկութեան և քուէհամարի որոշեալ օրն ու ժամը. և թէ՝ մինչ ի քուէարկութեան ուրբաթ երեկոյ ընտրողաց և ընտրելեաց ցանկին վրայ հարկ է դիտողութիւնները ներկայացնեն, և թէ յիշեալ պայմանաժամէն ետքը ոչ ոք իրաւունք ունի դիտողութիւն ներկայացնելու ։

14. Եթէ ընտրողն իւր քուէն անձամբ չկրնայ բերել, այն ատեն ստորագրեալ նամակաւ մը զայն ղրկել, կամ պահարանի մը մէջ դնել և պահարանին վրայ իւր անունը ստորագրել. Նամակաբերն ալ պարտաւոր է միանգամայն նոյն պահարանին վրայ ստորագրել այս կերպով. «այս ինչ անձին կողմանէ նամակաբեր» (ստորագրութիւն) ։ Եթէ նամակաբերը գրել չգիտեր՝ Ատենադպիրը կը գրէ պահարանին վրայ անոր անունը, և ան ալ խաչ նշան մը կը քաշէ անունին ներքև ի ներկայութեան Ընտրողական ժողովոյ ։

15. Եթէ քուէն որոշեալ ժամանակէն ետքը գայ՝ ընդունելի չէ ։

16. Եթէ քուէթղթին մէջ ընտրելեաց թիւէն աւելի անուններ գտնուին՝ քուէն կարգաւ ընդունելի է բայց աւելորդ անունները և ստորագրեալ քուէթուղթերը ընդունելի չեն ։

17. Ընդունելի չէ այն քուէն՝ որ ընտրելութեան հանգամանքներէ զուրկ անձի մը տրուած է ։

18. Քուէարկութիւն կատարուելիք կիրակւան նախընթաց շաբաթ աւուր Ընտրողական ժողովը կը գումարուի, եղեալ դիտողութիւնները ի նկատի կառնու, վերջնական կերպով ընտրողաց ցուցակին վրայ տնօրէնութիւններ կընէ՝ եթէ նոր հարկ կայ. ատենագրութեան մէջ կը նշանակէ. և քուէարկութեան ժամանակ ներկայ գտնուելիք քննիչներն ու անդամները կորոշէ ։

19. Քուէարկութեան ժամանակ Ընտրողական ժողովոյ անդամք ներկայութեան տումարին մէջ անուննին նախ կ'ստորագրեն, և յետոյ մեծագոյն մասամբ ստուգելով քուէտուփին դատարկ ըլլալը, կը կնքեն զայն պաշտօնապէս և քուէարկութեան սկիզբէն մինչև վերջը կը հսկեն քուէտուփին վրայ ։

20. Քուէարկուք կը ներկայացնեն իրենց քուէն Ընտր. ժողովոյն կամ անոր քննչացը, որ ստուգելով մէկ քուէթուղթէ աւելի չըլլալը՝

պարունակութիւնը չը կարդացուելու եղանակաւ քուէատուփին մէջ կը ձգեն առաջի քուէարկուին, կամ նորա ստորագրել կուտան ընտրողաց տոմարին մէջ։ Իսկ եթէ քուէարկուն գիր գրել չը գիտեր, Ատենադպիրը ի ներկայութեան քուէարկուին կամ նորա նամակաբերին կը նշանակէ քուէարկուին կամ նամակաբերին գրել չը գիտնալուն պատճառաւ ստորագրած չըլլալը, և նա խաչ նշան մը կը քաշէ ներքևը։

21. Նամակաւ եկած քուէները կը նշանակուին ընտրողաց տոմարին մէջ ընտրողին անուանը առջև, յիշատակելով թէ՝ նամակաւ եկած է քուէն ի ձեռն այս ինչ անձին (14)։

22. Եթէ քուէի մը վրայ կասկած յայտնուի, քննիչք կը պահեն այն քուէն և Նախագահին կը ներկայացնեն, որ Ընդհանուր Ժողովոյ մեծագոյն մասամբը կորոշէ ընդունելի կամ անընդունելի ըլլալը։

23. Քուէներն եկած միջոցին նոյն քուէներուն վրայ ներկայ ժողովուրդը իրաւունք ունի քուէատուփը ձգուելէն առաջ դիտողութիւն ընել Ընդհանուր Ժողովոյն, որ պարտաւոր է ի նըկատի առնուլ և ըստ այնմ ընդունիլ կամ մերժել նոյն քուէները պատասխանատուութիւնը իւր վրայ առնելով. իսկ քուէատուփը ձգուելէն ետքը ո՛չ ոք իրաւունք ունի բողոքելու։

## ՔՈՒԷՀԱՄԱՐ

24. Քուէհամարի որոշեալ ժամը երբ կը հասնի, քուէարկութիւնը կը դադրի. և Նախագահը քուէատուփը բանալէն առաջ ներկայութեան տոմարին մէջ քուէարկութեան չեկող անդամոց անունները նշանակել կուտայ, նոյնպէս նաև քուէհամարի ներկայ գտնուելիք անդամոց և քննչաց անունները։ Այս քննիչք կարող են նաև հանդիսատես ժողովրդեան մէջէն ընտրուիլ ի Նախագահէն ըստ պիտոյից։

25. Նախագահը կը ծանուցանէ թէ քուէհամարի որոշեալ ժամը հասած ըլլալով, քուէարկութիւնը դադրած է։ Այնուհետև քուէատուփին կնիքները քննելէն յետոյ բանալ կուտայ զայն, և կը յանձնէ քուէները համրել մի առ մի ի տես ժողովրդեան։

26. Յետոյ կարձանագրուի ի ձեռն Ատենադպրին քուէարկուաց և քուէից թիւը։ Եթէ երկու թիւք անհամաձայն գան, Նախագահը Ընդհանուր Ժողովոյ հետ կը քննէ (եթէ հարկ դատի՝ առանձնանալով) և եթէ անօրինաւորութեան կասկած տեսնուի, իսկոյն կը հրատարակէ թէ քուէարկութիւնը իբրև չեղեալ կը նկատուի, և առաջիկայ կիրակի նորէն քուէարկութիւն ընել կորոշուի ըստ 77 դ. յօդուածոյ Սահմանադրութեան։

27. Եթէ քուէներուն համրանքը քուէարկուաց թուոյն հետ ճիշդ գայ՝ կը նշանակուի. և յետոյ մէկ կամ քանի մը գրասեղանի վրայ կը բաշխուին քուէթուղթերը, նոյնպէս և զոյգ զոյգ քննիչներ ըստ թուոյ գրասեղանաց, կըսկըսին գրել քուէթուղթերուն պարունակութիւնը ի տես ժողովրդեան։ Երբ աւարտի՝ քննիչք կստորագրեն այն թղթերը. յետոյ մէկ թղթի մը վրայ արդիւնքը կը միացնեն քուէթղթոց հետ և կը յանձնեն Նախագահին։ Քննիչք իրենց կարդացած քուէթղթերը զատ պահարանի մէջ կը դնեն, վրան կստորագրեն, և գոցելով Դիւանին կը յանձնեն։

28. Նախագահը կը հարցնէ թէ՝ դիտողութիւն ունեցող կա՞յ քուէհամարի գործողութեանց վրայ։ Եթէ օրինաւոր դիտողութիւն մը ըլլի՝ քուէհամարը կրկին կատարել կուտայ միևնոյն նիստին։ Իսկ եթէ օրինաւոր դիտողութիւն բնաւ չըլլի՝ Ընդհանուր Ժողովոյ տոմարին մէջ քուէհամարին արդիւնքը՝ քննչաց տուած քուէհամարի թղթոցը համեմատ կարձանագրուի ի ձեռն Ատենադպրին. որոյ ներքև կստորագրեն Նախագահն և Ընդհանուր Ժողովոյ անդամք։

29. Եթէ քուէն հաւասար թուով ստացուի՝ տարիքով երիցագոյնն է ընտրեալ։

30. Եթէ բացարձակ առաւելութիւն չը գոյանայ, երկրորդ անգամ քուէարկութիւն կըլլայ։ Իսկ այս անգամ Ընդհանուր Ժողովը քուէհամարի գործողութեան մէջ յաջորդաբար առաւելագոյն երկու քուէ ստացողներէն կրկնապատիկ թուով ցանկ մը կը պատրաստէ, և ընտրողք՝ այս ցանկէն դուրս անձանց քուէ չեն կըրնար տալ։

31. Ընտրութիւնը աւարտելէն յետոյ Նախագահը պարտի ընտրելոց հաւանութիւնն ընդունիլ գրով։ Երբ հրաժարող գտնուի՝ Ընտրողական ժողովը ի ձեռն Նախագահին համեմատական քուէարկութեան մէջէն քուէից յաջորդ առաւելութիւն ունեցողները հետզհետէ կը հրաւիրէ ի նոյն պաշտօն, մինչև որ ընտրելոց թիւը լրանայ։ Այս պարագան հարկ է որ յատկապէս նշանակուի Քաղաքական ժողովոյ ղրկուելիք տեղեկագրին մէջ։

32. Նախագահը քուէատուփին մէջ գտնուած կուտայ քուէթղթերը, ելած նամակները, արձանագրութիւնները և ամեն այն թղթերը՝ որ նոյն քուէհամարին կը վերաբերին, և կը կնքէ քուէատուփը իւր և Թաղական խորհրդոյ կնքով։ Այս թղթերը կը պահուին մինչև վաւերացումն ընտրելոց Ազգ. Քաղաքական ժողովէն։ Այնուհետև արձանագրութեանց տոմարը կը պահուի Թաղական խորհրդոյ դիւանատան մէջ, իսկ քուէթուղթք և նամակք կը ջնջուին։

33. Նախագահը իսկոյն պաշտօնական տեղեկագրով մը քուէարկութեան արդիւնքը կը հաղորդէ Ազգ. Ս. Պատրիարքին՝ նշանակելով ընտրելոց անունը, մականունը, արհեստը, տանուց յանձնառութիւնը և քուէարկութեան բոլոր պարագաները։ Այս տեղեկագիրը կստորագրեն Նախագահը և Ընտրողական ժողովոյ Դիւանը, և կը կնքուի Նախագահին և Թաղական խորհրդոյ կնքով։

34. Քուէարկութեան մասին Քաղաքական ժողովը չը պիտի ընդունի այն բողոքը որ մինչև քուէհամարի միջոցը կանխաւ Թաղին Ընտրողական ժողովոյն ներկայացուած չէ, բայց եթէ ներկայացուած է կանխաւ՝ Քաղաքական ժողովը նկատողութեան կառնու։ Նոյնպէս քուէհամարի մասին եղած բողոքը կընդունի՝ ու նախ բացատրութիւն կուզէ Ընտրողական ժողովէն։ Այնուհետև եթէ հարկ տեսնէ՝ իր կողմէն կարգելու յանձնաժողով մը ներկայութեամբ կնքեալ քուէատուփը բանալ և քուէհամարի գործողութիւնը կրկին կատարել կուտայ և արդիւնքը ճշդելէն յետոյ հրատարակել կուտայ ի լրագիրս,

35. Վաւերացման վարչական որոշումը Նախագահին հասնելէն յետոյ Ընտրողական ժողովը լուծուած կը համարուի։

36. Այս հրահանգէն մէկ մէկ օրինակ ընդունելու պիտի ստանան իւրաքանչիւր Թաղական խորհուրդք։ Իսկ ընտրական գործողութեանց ժամանակ պիտի կախուի ի տես ժողովրդեան։

Բ.

## ՏԵՍՈՒՉ ԽՈՐՀՈՒՐԴՔ ԵՒ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆՔ

Սահմանադրութիւնն առջի նախատեսելով որ Ազգային Կեդրոնական Վարչութեան Քաղաքական ժողովը բեռնաւորած էր տեղական, գաւառական և ընդհանրական խնդիրներով և հազիւ կարող կըլլայ անոնց մէջ պատահած զժտութեանց պատճառները վերցնելով խաղաղութիւնը վերահաստատելու, գաւառաց անհամար ցաւերը մտիկ ընելով թէ Բ. Դրան և թէ Կառավարութեանց հայրական խնամքին ու գթութիւնն անոնց վրայ հրաւիրելով իրաւունց և արդարութեան համեմատ խնդիրք և ազգաց գաւառացի ազգայինները դիւրաւ և թշուառութենէ ազատելու, ժողովոյ և առաջնորդաց, ժողովրդեան և ժողովոյ մէջ պատահած անհամաձայնութիւնը վերցնելով խաղաղութիւն և համաձայնութիւն զօրացնելու, և նաև Քաղաքական ժողովը միայն գործադրութեան արտաքոյ ու վճռող մարմին մը ըլլալով՝ ազգին ընդհանուր թէ բարոյական և թէ նիւթական յառաջադիմութեան վերաբերեալ գործոց համար Տեսուչ խորհուրդներ և Հոգաբարձութիւններ սահմանած էր. սակայն Քաղաքական ժողովս անմիջապէս իւր ուշադրութիւնը Տեսուչ խորհրդոց և Հոգաբարձութեանց վրայ դարձնելով նախորդ Վարչութեան օրով սահմանադրապէս կազմեալ խորհուրդներն ու Հոգաբարձութիւնները վերահաստատեց, և պաշտօնները լրացուց, և Սահմանադրական տարեգլխուն՝ այսինքն 1874 մայիս 1 էն կիսով չափ նորոգեց ըստ կանոնի։

### 4 · ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ

Ժողովս ազգային դաստիարակութեան խնդիրը [illegible] մէջ նկատողութեան առաւ և Ուսումնական խորհրդոյ հետ շատ անգամ խորհրդակցելով հետևեալ կարևոր որոշումները առաւ ։

Ա · Պարտաւորեց այն ամեն Թաղական խորհուրդներն՝ որք տակաւին դպրոցական հոգաբարձութիւն կազմած չէին, փութով կազմել և Ուսումնական խորհրդոյ հետ յարաբերութիւն հաստատել ։

Բ · Նորոգեց Ուսումնասիրութեան գործադիր յանձնաժողովը՝ որ պահ մը դադրած էր գործելէ, որպէս զի գաւառաց մէջ Ուսումնասիրութիւնը գործադրուի և գաւառական Ուսումնական խորհուրդները կազմուին ։

Գ · Կեդրոնական սնտուկի պիւտճէին մէջ առայժմ տարեկան 3000 ղրուշի գումար մը սահմանեց յանուն Ուսումնական խորհրդոյ, որպէս զի [illegible] կերպով 2 կամ 3 ուսումնական ձեռնհաս պաշտօնեաներ ընտրուին և տեսչութիւն ընեն ազգային վարժարանաց վրայ և Ուսումնական խորհրդոյ հրահանգին գործադրութեանը հսկեն ։ Սերոբիչեան գումարէն 1500 ղրուշ Ուսումնական խորհրդոյ առաջարկութեան համեմատ առայժմ Պոլսոյ ազգային վարժարանաց համար ընտրուած տեսչին վճարել որոշեց ։

Դ · Ուսումնական խորհրդոյ առաջարկած Ակադեմիայի հաստատութիւնն ալ պատեհ ժամանակի մը ձգեց ։

Ե · Նաև որոշեց որ Ուսումնական խորհուրդն աշխատի սահմանել միօրինակ ուսուցման եղանակ մը և զայն գործադրել տալ վարժարանաց մէջ նախակրթարանի դրութեան վերածելով զանոնք, ի բաց առեալ միայն այնպիսիներն՝ որք հաստատուն և գոհացուցիչ եկամուտներ ունենալով կարող են երկրորդական վարժարան ըլլալ ։

Զ · Նաև առաջարկեց Ուսումնական խորհրդոյ՝ որ վարժարաններն երեք կարգի դասէ, և իւրաքանչիւր կարգի համար դաս [illegible] որոշէ ·

Է · Բարեգործական ընկերութեան գործադիր ժողովոյն առաջարկած բաժ հրաժարելոյ վրայ գալով յայտնեց որ տակաւին նոյն ընկերութիւնը գոյութիւն ունի և թէ հաւաքեալ 3350 լիրայի գումարն ապահովեալ տեղ մը կը կենայ և անոր տոկոսը կը բանի · և եթէ նոյն ընկերութեան Ընդհանուր ժողովոյն մէջ որ այս օրերս պիտի գումարի, այդ գումարն իր նպատակին համեմատ գործածել որոշուի, պիտի առաջարկուի որ այդ գումարը յանձնուի Արմաշու վանից, որ հոգեգործութեան դպրոց մ՚ունենալու ամեն յատկութիւններն ունի ։ Եւ խօսք տուաւ նոյն Ընդհանուր ժողովոյ որոշումը Վարչութեանս հաղորդելու ։

Ը · Վարժապետանոցի մասին Վարչութիւնն անոր կարևորութիւնն ընդունելուն հետ գործադրութիւնն ալ որոշեց · միայն ուզեց գիտնալ աւելի հաստատ կերպով թէ անոր շինութեան համար Ղալաթիոյ Եկեղեցին ո՞րչափ պարտական պիտի ըլլայ և այդ պարտքը պիտի կարենա՞յ վճարել Ուսումնական խորհրդոյ ցուցած հաշուոյն համեմատ · անոր համար յանձնաժողով մը կազմեց որ Ղալաթիոյ կալուածական հոգաբարձութեան և Ուսումնական խորհրդոյ հետ միանալով մէկ քանի հմուտ ճարտարապետներու հետ խորհրդակցին, և անոնց թէ շինութեան և թէ պարտուց վճարման տեղեկագրին համեմատ գործադրուի ։

Թ · Մայրաքաղաքիս Թաղական խորհրդոց հասոյթը հասկնալու և իրենց դպրոցներուն ամսական տրուելիք գումարներն որոշելու համար յանձնաժողով մ՚ալ կազմուեցաւ, որոյ անդամ որոշուեցան Քաղաքական ժողովէն մէկ քանի անձ, Տնտեսական խորհուրդէն մէկ անձ և Ուսումնական խորհրդոյ դիւանը, որ ամեն Թաղական խորհրդոց տարեկան հասոյթն առնելով և դպրոցին այցելութիւն ընելով՝ թէ Եկեղեցիէն դպրոցին վճարուելիք ամսական գումարը և թէ ուսմանց յայտագիրն որոշէ ։

Ահա Ուսումնական խորհրդոյ այն ամեն առաջարկութիւններն՝ որ գործադրելի կրնային ըլլալ, Վարչութիւնս նկատողութեան առնելով յարմար որոշումներ տուած է ի գործադրութիւն

Իսկ դաստիարակութեան համար պիւտճէին մէջ աւելի գումար մը սահմանելու կարեւորութիւնը հասկցած և պէտքն զգացած է, բայց պարտաւորեալ է սպասելու թէ նոր կանոնադրութեան համեմատ ազգային ընդհանուր տուրքն ո՛րչափ պիտի կարենայ հանել։

## Զ. ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ ԵԼԵՒՄՏԻՑ ԵՒ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Ազգային հաստատութեանց Տնտեսական և Ելմտական վիճակը կարեւորագոյն և էական խնդիր մ'ըլլալով Վարչութիւնս իւր պաշտօնավարութեան սկիզբէն Տնտեսական խորհրդոյ, Ելեւմտից և Հիւանդանոցի Հոգաբարձութեանց առաջարկութիւնները նկատողութեան առնելով՝ անոնցմէ գործադրութիւններն կարելի և կարեւոր եղածներն որոշեց, որք են՝

### Ա. Ազգային կալուածոց ապահովութիւնք

Կառավարութեան կողմէն բոլոր անշարժ ստացուածներն արձանագրուելու առթիւ ազգային կալուածներն ապահովութեան տակ դնելու համար Վարչութիւնը յատուկ կալուածական մասնաժողովի մը ձեռամբ մէկ կողմէն ազգային կալուածոց կալուածագրերը Պատրիարքարան բերելով զանոնք արձանագրել տուաւ դիւանատան մէջ. և միւս կողմէն կալուածներն արձանագրող արքունի պաշտօնէից ձեռօք իրենց տումարներուն մէջ ազգային կալուած ըլլալը նշանակել տուաւ, ինչպէս նաև Տէֆթէրխանէի տումարներուն լուսանցքին մէջ։ Որով ազգային կալուածները թէ Պատրիարքարանի մէջ արձանագրուեցան և թէ կառավարութեան տումարներուն մէջ արձանագրուելով՝ այլեւայլ կորստեան վտանգներէ ապահովուեցան։

### Բ. Գաւառաց մէջ Ազգային կալուածոց Արձանագրութիւնք

Տնտեսական խորհրդոյ առաջարկութեանը համեմատ գաւառաց մէջ ազգային կալուածոց սէնէտները գաւառային Վարչութիւններէն արձանագրուելով անոնց օրինակը Կեդրոնական Վարչութեան տումարներուն մէջ ալ արձանագրուելու որոշումն եղաւ։

### Գ. Պատրիարքարանի հին պարտուց վճարումը։

Մէկ կողմէ Պատրիարքարանի հին պարտքը՝ շատ տարիներէ ի վեր ազգին բեռ մ'եղած ըլլալով և միւս կողմէ Կեդրոնական Սընտուկին հասոյթն իւր ծախսին չբաւելով յոյս չը կար սնտուկին սովորական հասոյթովը այս պարտքը վճարելու։

1871 ի Վարչութեան որոշմամբն նախորդ Պատրիարք Ամեն. Խրիմեան Սրբազան ազգային հանգանակութեան դիմելով կարող եղած էր մէկ մասը վճարելու, ինչպէս որ նոյն հանգանակութեան և անով վճարուած պարտուց գործողութեանց արդիւնքն երկու տեղեկագրերով արդէն հրատարակուած է ժամանակին։ Իսկ ներկայ Վարչութեանս օրով երկու բարերար ազգայինք՝ Բարձր. Սրբահամ փաշա Երամեան և Վսեմ. Սարգիս Պէյ Պալեան, յիշատակաց արժանի նուէր մ'ընելով Ազգն իւր հին պարտքէն բոլորովին ազատեցին, որոյ հետ նաև Վարչութիւնս կարող եղաւ Նորին Վեհափառ Կայսրութեան կամացը համաձայն Պէշիկթաշի ազգային գերեզմանատունը կարգադրելու, Ամենապատիւ Սրբազան Պատրիարքին ընտրութեան Բ. Դռնէն վաւերացման ծախքը հոգալու, Պատրիարքարանը և իւր կարասիքը նորոգելու։ Երամեան Բարձրապատիւ Սրբահամ փաշա 3000 ոսկի և Պալեան Վսեմաշուք Սարգիս պէյ 1500 ոսկի, ընդամենը 4500 ոսկի նուիրեցին, որոյ հաշիւը հոս կը դնենք։

## ՄՈՒՏՔ

| | | |
|---|---|---|
| Նուէր Բարձր. Երամեան Աբրահամ փաշայէ Լրյ. Օսմ. . . . | 3000 | |
| » Վսեմ. Պալեան Սարգիս Պէյէ Լրյ. Օսմ. . . . . | 1500 | |
| | | 4500 |
| | | 4500 |

## ԵԼՔ

| | | |
|---|---|---|
| Վճարեալ Կեդր. Սնտուկի հին պարտատերաց Լրյ. Օսմ. . . . . . . . | 2586 | |
| Պատրիարքարանի նորոգութեան ծախուց և կարասեաց համար . . . . . | 415 | |
| Ս. Պատրիարքի Գահակալութեան տօնի Դրան և ծախք զանազանք . . . | 615 | |
| Պէշիկթաշի գերեզմանատան ծախուց համար . . . . . . . . . . . | 281 3/5 | |
| Ս. Պատրիարքի գործածութեան համար կառք մը իւր կազմուածքով . | 217 | |
| Յանձնեալ Կեդր. սնտուկին . . . . | 386 2/5 | |
| | | 4500 |

Այս ազգային բարերար երկու Վսեմ անձինք շնորհակալեաց արժանի են, ինչպէս որ Ազգային Ժողովն ալ իւր շնորհակալութեան քուէն տուաւ ։

### Գ · Պատրիարքական կոնդակաց համար առնուած տրոց կարգադրութիւնը ։

Ելեմտից Հոգաբարձութեան առաջարկութեանը համեմատ Պատրիարքարանէն տրուած կոնդակներուն համար առնուած տրոց բաշխումն ու հաւաքումը Վարչութիւնս հարկ տեսաւ որ հետեւեալ կերպով ըլլայ ․

Ա · Ամեն գաւառական վիճակի առաջնորդ կամ Փոխ · Առաջնորդ կամ Պատրիարքական փոխանորդ՝ իւր ընտրութիւնն ու պաշտօնը վաւերող Պատրիարքական կոնդակի համար պարտաւոր է իւր հովուական վիճակին տարեկան մուքաթայի տրոց քանակութեան չափով % 20 դահեկան դիւանական տուրք վճարել Կեդր · Ատենին ։

Բ · Գաւառական Ընդհանուր, Կրօնական և Քաղաքական ժողովոց ընտրութիւնը վաւերող Պատրիարքական մէկ մի կոնդակի համար իւրաքանչիւր գաւառական ատեան պարտաւոր է վիճակին մուքաթայի տարեկան տրոց քանակութեան չափով % 10 դահեկան դիւանական տուրք հատուցանել Կեդր · Ատենին ։

Գ · Նոյնպէս Կ · Պոլսոյ Թաղական Խորհուրդներն իրենց հաստատութեան կոնդակաց համար պարտաւոր են իւրաքանչիւրն թաղին եկեղեցւոյն քանչելէրի տրոց քանակութեան չափով %ին 10ը դիւանական տուրք, և եթէ զերծ են քանչելէրի տուրքէն՝ ըստ կարողութեան չափու գումար մը վճարել Կեդր · Ատենին ։

Դ · Այս Դիւանական հասութից հաւաքման հոգն Ելեմտից Հոգաբարձութեան վերաբերելով․ Կեդրոնական դիւանատունն իւր բոլոր ճիւղերովը պարտաւոր է վաւերացման կոնդակները դիւանական գործողութիւնները կատարելէն ետև՝ ուղղակի յանձնել Ելեմտից Դիւանին առանց բացառութեան ։

Ե · Ելեմտից Դիւանը նոյն կոնդակներն ստանալէ ետև համեմատեալ տուրքը կգանձէ և որոց որ կվերաբերի կյանձնէ զանոնք դիւանապետին գիտութեամբ ։

Զ · Ելեմտից դիւանը պարտաւոր է հոգ տանիլ որ թէ՛ կոնդակներն առանց յապաղման իրենց տէրերը յանձնուին և թէ՛ օրինական տուրքերն անվճար չմնան, և ասոր համար պէտք է որ դիւանատունն երբ որ և է ընտրութեան տեղեկագիր հասնի գաւառէն կամ կեդրոնին թաղերէն, վաւերացումը կատարուելէն առաջ անմիջապէս ազդ առնէ Ելեմտից դիւանին, որ փոյթ պիտի տանի կոնդակաց տուրքը գանձելու միջոցները տնօրինել, երբ կոնդակին տէրը Կ · Պոլսոյ մէջ է և կամ իւր գործակատարն ունի, անոր հետ բանակցելով, և երբ գաւառէն պիտի ղրկուի դրամը, պաշտօնական գիր ղրկել տալով և պահանջելով ։

### Է · Ազգային ընդհանուր տրոց կանոնագրութիւնը ։

Մինչև հիմա որչափ որ ազգային տուրքը կը հաւաքուէր, բայց տակաւին անոր համար կանոն մը սահմանուած չըլլալով, Վարչութիւնս մասնաժողովի մը ձեռամբ կանոն մը խմբագրեց, և զայն Ազգային Ժողովոյ վաւերացնել տալով, գործադրութեան ենթարկել որոշեց 1875 Մայիս 1 էն սկսեալ մնայուն հրահանգի մը համաձայն ։

Ահաւասիկ ընդհանուր տրոց կանոնագրութիւնը և գործադրութեան հրահանգը ․

## ԿԱՆՈՆԱԳՐՈՒԹԻՒՆ

### ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏՐՈՑ

1․ Ամէն ազգային անհատ որ չափահաս է և վաստակի ու շահու տէր և իւր բնակութիւնը Պոլիս հաստատած, պարտական է Կեդրոնական ատենին տարեկան տուրք մը տալու ։

2․ Ազգային տուրքն ութ աստիճանի բաժնուած է ․

Ա. 500 ղրուշ արծաթեայ, և աւետարան իբրև նուէր.
Բ. 300 »
Գ. 200 »
Դ. 150 »
Ե. 100 »
Զ. 75 »
Է. 50 »
Ը. 25 »

3. Տրոց բաշխումը կատարելու համար ամեն Թաղական խորհուրդ իւր մէջէն և դրսէն այս մասին յարմարութիւն ունեցող անձինքներէ բաղկացեալ Յանձնաժողով մը կը կազմէ, որն որ կը հրաւիրէ նոյն Թաղին մէջ բնակութիւն հաստատող և տուրք տալու կարողութիւն ունեցող ազգայիններն և հետեւեալ համաձայնութեամբ կ'որոշէ տալու տուրքին որքանութիւնը, զորն որ պիտի հաստատէ նոյն ազգայինը իւր ստորագրութեամբը։

Յիշեալ Յանձնաժողովը 15 օր պայմանաժամ կուտայ իւրաքանչիւր ազգայնոց 'ի խորհրդարան ներկայանալու համար, և պայմանաժամուն լրանալէն ետքը չներկայացողներուն իրենց աստիճանին համեմատ վճարելու տուրքին քանակութիւնը Յանձնաժողովը կ'որոշէ և մանաւոր նամակաւ իրեն կը հաղորդէ, որ եթէ դիտողութիւն մ'ունի, 15 օրուան մէջ հաղորդէ Յանձնաժողովին, այս պայմանաժամը լրանալէն ետքը, եղած դիտողութիւնները չ'պիտի ընդունուին այն տարուան համար։

5. Տարեկան տուրքն երկու անգամով կը վճարուի, վեց ամիսն անգամ մը. սակայն ազատ է անմիջապէս մէկ անգամէն ալ վճարել ամբողջ տարեկանը։

6. Քաղաքական գործոյ մը համար Պատրիարքարան կամ Թաղական խորհուրդներուն դիմող ազգայինէ մը տարին լրացած և երեք անգամ ուղուած բայց տակաւին անվճար ձգուած ու դիզուած տուրքերը պիտի առնուին, և ետքը նոյն անձին գործը պիտի տեսնուի։

7. Տուրքին տրուած ընկալը պիտի հաստատուի Պատրիարքարանի սնտուկի տոմարայ արձանագրութենէն, և վճարողին քովը գտնուած ընկալագիրէն, որ ստորագրեալ պիտի ըլլայ Կեդրոնական սնտուկին գանձապահէն և հաւաքիչէն եթէ հաւաքչի ձեռօք է առնուած, և Պատրիարքարանի կնքով վաւերացեալ։

8. Պատրիարքարանի ազգահամարի գրասենեակը պարտաւորեալ է ըստ Սահմանադրութեան ամէն տարի Թաղական խորհուրդներէն առնել իրենց Թաղին մէջ նոր եկողները և ուրիշ գաւառներէն, գաղթողները և ուր երթալնին, նոր չափահաս եղողները, իրենց աստիճանին փոփոխութիւն ունեցողները և վերջապէս մեռնողները և ծնունդները։

9. Տուրքը Վարչութեան կողմէ ընտրեալ և վարձատրեալ յատուկ հաւաքիչներու ձեռօք պիտի հաւաքուի. իսկ երբ ուղղակի Պատրիարքարանի մէջ առնուի, որ և է ծախք տեղի պիտի չունենայ։

10. Զանազան տեղեր պանդխտող ազգայինը ընտանեօք բնակութիւն հաստատած տեղին ազգային սնտուկին կը վճարէ իւր տարեկան տուրքը։

11. Գաւառներու կողմէն Կեդրոնական սընտուկին տրուելու տուրքը մինչև որ Ազգային ժողովը սահմանէ, գաւառները հինգ ակարի չափանակին վճարել։

ՀՐԱՀԱՆԳ

ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՍՆՏՈՒԿԻ ՏՐՈՑ

Բ.

ԲԱՇԽՈՒՄՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏՐՈՑ

1°. Կեդրոնական Ընդհանուր տրոց հաստատութեան 3րդ յօդուածին համեմատ տրոց բաշխումը Թաղական խորհրդոց միջոցաւ կը կատարուի։

Ամեն Թաղական խորհուրդ իւր մէջէն և դրսէն այս մասին յարմարութիւն ունեցող անձինքներէ բաղկացեալ Յանձնաժողով մը կը կազմէ, որոյ կը նախագահէ Եկեղեցւոյն Քարոզիչը և 'ի բացակայութեան նորա Աւագերէցը կամ Աթոռակալը։

Իւր կազմութիւնը անմիջապէս կը ծանուցանէ Եկեղեցական Վարչութեան 'ի տեղեկութիւն ։

2º. Նոյն Ցանձնաժողովը նախ կը պատրաստէ ցուցակ մը, ուր պիտի գտնուին այն ամեն Ազգայնոց անունները՝ որք չափահաս և վաստակի ու շահու տէր ըլլալով իրենց բնակութիւնը նոյն թաղին մէջ հաստատած են ։

Այս ցուցակը ութ սիւնակներ պիտի ունենայ .

Ա. Ին մէջ պիտի գրուի տրոց մասնակցողին մականունը այբուբենի կարգաւ ,

Բ. Ին մէջ պիտի գրուի անունը

Գ. Ին մէջ պիտի գրուի բնակութեան փողոցը ու տանը թիւը .

Դ. Ին մէջ պիտի գրուի արուեստը .

Ե. Ին մէջ պիտի գրուի գործին տեղը , փողոցը և թիւը .

Զ. Ին մէջ պիտի գրուի տուրքի աստիճանը .

Է. Ին մէջ պիտի գրուի ստորագրութիւնը

Ը. Ին մէջ պիտի գրուի դիտողութիւն կամ Ծանօթութիւն եթէ կայ ։

3º. Ցանձնաժողովը այս ցուցակը պատրաստելէն անմիջապէս ետքը տրոց մասնակցողները նամակաւ կը հրաւիրէ շաբթու մէջ որոշեալ օրեր 'ի Թաղական խորհրդարան մինչև 15 օր, հրաւէրի նամակին հետ ղրկելով տրոց կանոնադրութեան մէկ օրինակը ։

Հրաւէրին մէջ նշանակեալ ըլլալու է որ՝ Թաղական խորհրդարանը անձամբ չներկայացողը, նամակաւ իմացնելու է իւր աստիճանը ։

Անձամբ ներկայացողին հետ համաձայնութեամբ աստիճանը կորոշէ Ցանձնաժողովը, գրել տալով իր անուան դիմացի սիւնակին մէջ աստիճանը և ստորագրութեան սիւնակին մէջ ալ իւր ստորագրութիւնը ։ Եթէ տուրքի մասնակցող մը իր աստիճանը նամակաւ իմացուցած է, և Ցանձնաժողովին կողմէն նոյնին իր կարողութեան համեմատ ըլլալը ստուգուած է, ստորագրութեան տեղը « Նամակաւ » բառը կը գրուի ։

4º. Այս առաջին հրաւէրին մինչև 15 օր անձամբ կամ նամակաւ չի պատասխանողներուն կամ նամակաւ իրենց կարողութենէն վար աստիճան նշանակողներուն երկրորդ հրաւէր մը ևս ընելու է գրաւոր, ուր նշանակուած ըլլալու է որ՝

Ա. Ընդհանուր տրոց ցանկին մէջ իրենց աստիճանը որոշելու համար այս անգամ անպատճառ ներկայանալու են 'ի Թաղական խորհրդարան ։

Բ. Կամ նամակաւ իմացնելու են իրենց աստիճանը .

Գ. Եթէ՝ ոչ անձամբ ներկայանան և ոչ նամակաւ պատասխանեն, իրենց աստիճանին համար պիտի նշանակուի Ընդհանուր տրոց ցանկին մէջ . . . . ղրուշ ըստ Կանոնադրութեան ։

5º. Ցանձնաժողովք ջանալու են այս հրաւիրագիրները մասնակցողաց ձեռքն հասցնել ժամանակին ։ Ուստի նամակները ցրուողները հասցնելու տեղւոյն մէջն կամ նամակը յանձնուած տեղէն ստորագրութիւն առնելու են ։

6º. Թաղական խորհուրդներն ամեն տարի տրոց Թաղական Ցանձնաժողովներ կ'ընտրեն և անոնց պաշտօնը յունվար 1 էն մինչև ապրիլ 1 կը տևէ ընդ ամենը 3 ամիս ։

7º. Այս Ցանձնաժողովները իրենց թաղին վերաբերեալ տրոց ցուցակները կը սրբագրեն, նշանակելով աստիճանաց փոփոխութիւնը պակասները և ուրիշ թաղ գնացողները, բնակութեան, գործի տեղերու վերաբերեալ փոփոխութիւնը և աւելցնելով նոր եկողները և նորէն տուրքի մասնակցողները ։

8º. Թաղին մէջ նոր բնակութիւն հաստատողները և նորէն տուրքի մասնակցողները, ինչպէս նաև անոնք՝ որոց աստիճանը դէպ 'ի վեր փոխուիլ պէտք է, 3րդ, 4րդ և 5րդ յօդուածներուն համեմատ 'ի Թաղական խորհրդարան կը հրաւիրուին և ըստ այնմ կը կարգադրուի ցուցակը ։

9º. Անոնք որ աստիճաննին դէպ 'ի վար փոխել կուզեն, պէտք է որ իրենք ներկայանան տրոց Ցանձնաժողովին և աստիճաննին փոխել տան ։

10º. Ցանձնաժողովը այս սրբագրեալ ցուցակէն երկու օրինակ կը պատրաստէ, մէկը առ Քաղաքական ժողովն կը ղրկէ իր անդամոց բո-

լորին ստորագրութեամբը, ուր նաև պիտի գըտնուի Թաղական խորհրդոյ Ատենապետին և Ատենադպրին ստորագրութիւնքը և Թաղական խորհրդոյ կնիքն ալ, և միւսը Թաղական խորհրդարանը կը պահուի։

Այս ցուցակը առ առաւելն մինչև ապրիլ 1 Ազգային Վարչութեան ղրկուած ըլլալու է։

## ՀԱՒԱՔՈՒՄՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏՐՈՑ

11°. Տնտեսական խորհուրդը և Ելմտական Հոգաբարձութիւնը միանալով կեդրոնական տրոց համար երաշխաւորեալ պաշտօնեայ մը կը սահմանեն, որ պատասխանատու պիտի ըլլայ ընդհանուր տրոց հաւաքմանը, և փոխարէն պիտի ընդունի իր ձեռօք հաւաքած դրամներուն վրայ 15 առ 100։

12°. Ելմտական Հոգաբարձութիւնը Թաղական խորհուրդներէն եկած ցուցակաց համաձայն իւրաքանչիւր աստիճանի թիւերը կ'որոշէ, և այս թիւերուն չափովը իւրաքանչիւր աստիճանի համար ընկալագրեր կը պատրաստէ։

13°. Իւրաքանչիւր ընկալագիր երկուքի բաժնուած ըլլալու է, երկու վճարմանց համար. այս ընկալագրերը թուահամար և թուագրեալ և Ելմտական Հոգաբարձութեան կողմէն կնքեալ և ստորագրեալ ըլլալու են։

14°. Թաղական խորհուրդներէն եկած ցուցակներէն օրինակելով Ելմտական Հոգաբարձութեան կամ Համարակալին քով ուրիշ երկու ցուցակներ պահուելու են, մէկը մականուանց այբուբենից կարգաւը Թաղական խորհուրդներէն եկած ցուցակներուն ձևովը, և միւսը իւրաքանչիւր աստիճանի համար զատ զատ տեղեր բանալով, նոյնպէս այս ալ մականուանց այբուբենից կարգաւը։

15°. Ելմտական Հոգաբարձութիւնը այս պատրաստեալ ընկալագրերէն տրոց պաշտօնէին կը յանձնէ պէտք եղածին չափ և անկէ անդորրագիր մը կ'առնէ։ Նմանապէս երբ տրոց պաշտօնեայն հաւաքեալ դրամները կը յանձնէ, կընդունի Համարակալէն Ելմտականին կնքովը կնքեալ անդորրագիր մը։ Եւ ժամանակ ժամանակ կողմնակի տրուած անդորրագրերուն համեմատ հաշիւը կը գոցուի։

16°. Տրոց պաշտօնեայն իր կողմէն կարգեալ երաշխաւորեալ հաւաքիչներու ձեռամբ ալ հաւաքումները կրնայ կատարել, դարձեալ իր պատասխանատուութեան տակ։

### Զ. Խրիմեան Սրբազանին հաշուական խնդիրները.

Նախորդ Պատրիարք Ամեն. Խրիմեան Սրբազան Առաջնորդութեանց վրայ առաջուց 'ի վեր սահմանեալ մուրաթաները իր ձեռամբ հաւաքելուն համար կնճռոտ հաշիւներու ենթակայ եղած էր, որով ազգային սնտուկին պարտական կը թուէր։ Ահա այս մասին Ելևմտից Հոգաբարձութեան առ Վարչութիւնս տուած հաշիւը։

Խրիմեան Սրբազան 1869 նոյեմբեր 9ին Պատրիարքական աթոռը բարձրացաւ. Ելևմտից Հոգաբարձութիւնը կըսէ որ այս թուականէն մինչև 1871 մայիս 1, որ 18 ամիս կընէ, 1871ի Քաղաքական ժողովոյ որոշմամբ այն ատենուան տնտեսական խորհուրդը հաշիւը գոցած և վերջացուցած է նոյն իսկ Խրիմեան Սրբազանին հաւանութեամբն ու կարգադրութեամբը։ 1871 մայիս 1էն մինչև 1873 հոկտեմբերի վերջն՝ որ է 30 ամսուան միջոց, Նորին Սրբազնութեան հաշուին հետևեալ կերպով կը ներկայացնէ Ելևմտից Հոգաբարձութիւնը.

# ՀԱՇԻՒ ԽՐԻՄԵԱՆ ՍՐԲԱԶԱՆԻ

1871 Մայիս 1 էն մինչև 1873 Դեկտեմբերի 31 :

## ՊԱՐՏՔ

| | |
|---|---|
| 30 ամսուան մէջ տուած դրամը | 384230 |
| Մշոյ Ս. Կարապետի վանուց անվճար մնացեալ մուրհակները | 34600 |
| | 418830 |

## ՊԱՀԱՆՋՔ

| | |
|---|---|
| Իւր 30 ամսականը 10000 էն | 300000 |
| Միքայէլ Ճիզմէճեանին տուածը Կեդր. Սնտուկի հաշուէն | 360 |
| | 300360 |
| Մնացեալ պարտքը | 118470 |
| | 418830 |

Խրիմեան Սրբազան այս հաշուոյն դէմ դիտողութիւններ ընելով կըսէ որ նախորդ 18 ամսուան մէջ ամսականս 5000 ական ղուրուշ բանած է, պէտք է 10000 ական քանիլ. վասն զի Պատրիարք մը չէ թէ 5000 ղուրուշ ամսականով՝ այլ 10000 ղուրուշ ամսականով ալ չը կրնար ապրիլ: Նաև Մշոյ Վանուց մուրհակի պարտքերը բնաւ չընդունիր ըսելով թէ Վանքին պարտքն է այն: Դարձեալ, Պատրիարքութեան եկած ատենը Մուշէն մինչև Կ. Պոլիս 16000 ղուրուշ ծախք ըրած ըլլալով՝ Կեդրոնական սնտուկէն զայն կը պահանջէ, և ուրիշ առաքինութիւններ ալ ընելով ազգ. սնտուկէն պահանջ ունենալը կը յայտնէր:

Վարչութիւնս այս կնճռոտ հաշուոյն կարգադրութիւնն իրաւարարաց միջոցաւ թէև կը պատրաստուէր կարգադրել. սակայն գործն ամենայն արդարութեամբ կարենալ գլուխ հանելու համար արժան դատեց պահ մ'ալ սպասել և ուրիշ եղած տեղեկութիւնները հաւաքել:

Է. ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆԸ տեղեկագրով մը 30 հազար քսակին վրայ ամսական 1 ղուրուշ առնելով հանգանակութիւն մը բանալ կառաջարկէր, որով Հիւանդանոցի բացը գոցել կը խոստանար:

Վարչութիւնս այս առաջարկութիւնը նկատողութեան առնելով նոյն հոգաբարձութեան ատենապետ Էֆէնտիին խորհրդակցութեամբը Հիւանդանոցի ծախուց և մուտից Պիւտճէն սահմանեց հետևեալ կերպիւ.

Վարչութիւնս Վանօրէից խորհրդոյ անդամակցութեան հրաւիրեց երկագործութեան արհեստին քաջահմուտ Ամասեան Յակոբ Էֆէնտին, որ վանքերուն հողերն՝ արդիւնաւոր վիճակի մը մէջ դնելով զանոնք, ազգային հաստատութեան աղբիւրներ ըլլան, որոց հասոյթ նկատմամբ ազգային հանրական պիտոյքները հոգացուին եւ բարգաւաճին ։

Ազգային Վանքերուն վրայ լաւ եւ ճիշդ գաղափար մը ունենալու համար Վանօրէից խորհրդոյ առ Վարչութիւնն ընելիք տարեկան համարատուութիւնն Ազգային Ժողովոյ ուշադրութեանը կը յանձնուի ։

### 4. ԴԱՏԱՍՏԱՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ ԵՒ ԿՏԱԿԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Դատաստանական խորհրդոյ եւ Կտակաց Հոգաբարձութեան խնդիրները Խառն Ժողովոյ վերաբերելով առ այն մատուցած համարատուութիւններնին Ազգային Ժողովոյ պիտի մատուցուի Խառն Ժողովոյ համարատուութեան հետ ։

---

## Գ.

## ԳԱՒԱՌԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Գաւառացւոց խնդիրներն որ Ազգային Վարչութեան ամենամեծ զբաղմունքն են, գլխաւորաբար հետեւեալներէն կը բաղկանան.

### 1. Հողային խնդիրներ

Թուրքիոյ կառավարութիւնը գաւառացի հողագործները քաջալերելու եւ երկագործութիւնը գաւառներուն մէջ բարգաւաճելու համար զանոնք հողի եւ գետնի տէր ընելու օրէնք մը հաստատած է, որով փոքր գումարներ վճարելով իրենց վարուցան ըրած գետինն իրենց վրայ թափու կընեն. այսինքն՝ նոյն գետնին տէրը կըլլան ։

Մեր գաւառացի ազգայինք կամ այս օրէնքը ժամանակին լաւ չեն ըմբռնած, կամ կառավարութեան անձինքը անէութեան այս օրէնքին արդարութեամբ չեն գործադրած. վասն զի այսօր մէկ քանի գլխաւոր գաւառներու մէջ, ուր բազմաթիւ հայ կը գտնուին, հողերը անոնց ձեռքէն այլազգեաց անցած են. թափուի օրէնքով կամ կը բռնանան որ իրենց վրայ անցունեն հակառակ բարեխնամ կառավարութեան հրամայած սկզբանը ։

Մեր գաւառացի ժողովրդոց շատ անգամ բազմութեամբ Պատրիարքարանը լեցուցին եւ Պատրիարքին ու Ժողովներուն դրանը եկան, գրեթէ լոկ այս հողային խնդրոյն համար է ։ Այդ բնաւոր այլքերը կամ երկրոյթ աշխատող ժողովրդէն զատուած անոնց հողերն իրենց վրայ թափու ընել տուած են, որ կառավարութեան օրինաց հակառակ է, վասն զի աշխատող ժողովրդեան կը պատկանին այն հողերը, եւ կամ զանազան հնարքներ բանեցնելով ժողովրդեան հողերը ձեռքերնուն առած եւ առնելու եռանդ են, եւ շատ չնչին վարձ վճարելով նոյն հողերուն վրայ կը բանեցնեն այն աղքատ աշխատողները, որ կառավարութեան հրամայած օրինաց համեմատ յիշեալ հողերուն տէրն էին ։

Այս հողային խնդիրը գաւառացւոց ամենակարեւոր խնդիրն է, եւ իրենց ապագայ յառաջդիմութեան եւ հարստութեան հիմը կը համարուի, այս նկատմամբ Վարչութիւնս չէր կրնար անտարբեր մնալ ասոր վրայ. ուստի գաւառացւոց այս տեսակ խնդիրներն ՚ի մի ամփոփելով թագրիր մը գրեց, եւ Արքունի Պատրիարքն այս թագրիրին գործադրութիւնը ձեռք բերելու համար ամեն ջանք ՚ի գործ դրաւ ։

### 2. Զօրաբաժնի [ասքէր պէտէլի] տրոց վերաբերեալ խնդիրներ

Մէկ քանի գաւառաց ժողովուրդք այս տուրքի համար բողոքելով կըսեն թէ կառավարութիւնը պէտէլին տուրքին մէկ չորրորդը թողած է ժողովրդեան, եւ փոխանակ բաշխումը հրամանի Թուականէն գործադրել սկսելու, հինգ տարի յառաջ եղած Թուականէն կուզեն գործադրել ։ Այս եւ ասոր վերաբերեալ ամեն խնդրոյ համար Վարչութիւնս թագրիր գրեց առ Բ. Դու-

## Զ.

## ՏԵՂԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

### 1. Ժողովրդական հանրագրութիւնք

1873 Նոյեմբեր 17 Թուականաւ ստորագրեալ նոյն օրինակ քանի մը հանրագրութիւններ եօթն պատգամաւորաց ձեռօք ներկայացուելով, Ժողովս գիտեց որ անոնց մէջ պարունակեալներէն Յովհաննէս Սրբազանին և նախորդ Քաղաքական Ժողովին հրաժարմանց կէտերն արդէն կատարուած իրողութիւններ են, և մնացեալ կէտերն ալ Ազգային Ժողովոյ տնօրէնութեանը կը պատկանին։ Աստի նոյն հանրագրութիւնները՝ զանոնք ներկայացնող պատգամաւորաց դարձնելով յայտարարեց որ երբ լուծեալ և կատարուած իրողութիւնները դուրս հանելով մնացած խնդրոց համար դատ հանրագրութիւն մը ներկայացուի, այն ատեն Ժողովս ընդունելով զայն Ազգային Ժողովոյ տնօրէնութեանը կրնայ յանձնել, վասն զի նմանօրինակ խնդրոց վրայ տնօրէնութիւն ընել իւր Ձեռնհասութենէն վեր է։

### 2. Նոր Թաղական խորհրդոց ընտրութիւնք

Թաղական խորհուրդներէն մէկ քանիին հրաժարման վրայ անոնց տեղ նորեր ընտրուելով, վաւերացման կոնդակները տրուեցան, ինչպէս են Գումգաբուի Մայր եկեղեցւոյ համար։

Եէնի Գաբուի
Գումգաբուի
Քարակէօմրիւկի
Պօյաճը Գիւղի
Թօփգաբուի
Գասըմ Փաշայի
Էյիւպի
Պէշիկթաշի

Խասգիւղի Թաղական խորհրդոյ մասնակի ընտրութեան համար։

Ասոնցմէ զատ նաև Գատը Գիւղի և Գում Գաբուի դրսի Թաղական խորհուրդներն ալ հրաժարելով անոնց տեղ ժամանակաւոր Թաղական խորհուրդներ դրուեցան։

### 3. Գատը Գիւղի Թաղական խնդիրը

Նախորդ Քաղաքական Ժողովին օրով Գատը Գիւղի Թաղական խորհրդոյ անդամոց մէջ անհամաձայնութիւն ծագելով վէճի տակ կը գտնուէր նոյն խորհուրդը։ Վարչութիւնս փորձ մը ընելէն ետքը բոլորովին լուծեց նոյն Թաղական խորհուրդը և անոր տեղ ժամանակաւոր Թաղական խորհուրդ մը հաստատեց։ Այն ժամանակաւոր խորհուրդը նախորդ խորհրդոյ օրով նորոգ կառուցեալ Թաղին եկեղեցւոյ վարժարանաց շինութեան հաշիւն առաւ, պարտքերը վճարեց, դպրոցներուն պակասը լրացուց և դպրոցական կարասիները պատրաստելով դըպրոցները բացաւ։

Գատը Գիւղի Թաղական խորհրդարանին սնտուկը պահուած շըմէնտըֆէրներու թղթերը, որ ընկերութեան մը կը վերաբերէր և աւանդ պահուած էր հոն, ժամանակաւոր Թաղական խորհրդոյն վկայութեանը վրայ նոյն ընկերութեան յանձնել որոշուեցաւ։

### 4. Զանազան տեղական խնդիրներ

Վերոյիշեալ տեղական խնդիրներէն զատ 20 էն աւելի ուրիշ տեղական խնդրոց կարգադրութիւնն եղած է Ժողովոյս ներկայ շրջանին մէջ, որք հետաքրքրական կարևորութիւն չունենալով մանրամասնաբար նշանակել հարկ չզատիր։

## Է.

## ԱՆՀԱՏԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Ժողովս իր պաշտօնավարութեան առաջին տարուան շրջանի միջոցին 28 անհատական խնդիրներով զբաղած է, որոց ամենն ալ լուծում գտած են, սակայն հարկ չը տեսնէր անոնց մանրամասնութիւնը նշանակելով ստուարացնել ներկայ համառօտութիւնը։

## Ը.

### ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆ ԷՋՄԻԱԾՆԱՅ ՎԵՀԱՓԱՌ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ՀԵՏ

Վեհափառ կաթողիկոսը կոնդակաւ կը ծանուցանէր Էջմիածնի ժառանգաւորաց նոր վարժարան մը շինած ըլլալը, և 2 աղքատ ուշիմ աշակերտ կ'ուզէր ձրիաբար դաստիարակելու համար։ Ժողովս Ուսումնական խորհրդոյ յանձնեց նոյն աշակերտաց ընտրութիւնը։

## Թ.

### ՎԵՐՋԱԲԱՆ

Ժողովս հարկ չը տեսաւ իր պաշտօնավարութեան ներկայ շրջանին մէջ տեսած բոլոր խնդիրներուն լուծումը մանրամասնաբար նշանակել, այլ միայն այն խնդրոց լուծումը նշանակեց, որք կրնային կարևոր ըլլալ Ազգային Ժողովոյդ 'ի գիտութիւն։ Իսկ մնացած խնդիրներն՝ որք անհատական և մասնաւոր ըլլալով հանրական կարևորութիւն ունեցած չեն, զանց ըրաւ մի առ մի նշանակել համառօտութեան մէջ։

Վարչական ժողովներն զբաղեցնող խնդիրները գլխաւորաբար երկուք են. մէկ մը՝ դրամական խնդիրն, որ Ազգային Ժողովոյդ որոց համար առաջարկած նոր կանոնադրութեամբը կը յուսացուի որ կարգի մտնէ, և որու միջոցաւ շատ մը խնդիրներու կարգադրութիւնը դիւրանայ։ Մէկ մ'ալ դատաստանական խնդիրներն, որոց համար Ժողովս Սրբազան Նախագահին հետ ամեն կարելի եղած միջոցները ձեռք առած է հիմնովին կարգադրել։ Այս երկու կենսական խնդիրները նպաստաւոր կերպով կարգի մտնելէն ետքը միւսներն օրուան խնդիրներ են, որոց լուծումը դժուարութիւն մը չունի կամ դրամով լմննալիք խնդիրներ են, և բոլորովին դրամական խնդրոյն լուծմանէն կախումն ունին։

Անդամք Քաղաքական Ժողովոյ

| | |
|---|---|
| Ատենապետ | Փոխ Ատենապետ |
| Ս. ՄԱՔՍՈՒԴԵԱՆ. | Կ. Գ. ՓԱՓԱԶԵԱՆ |
| Ատենադպիր | Փոխ Ատենադպիր |
| Մ. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ | Ս. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ |
| Խ. Յ. ԱԼԵԱՆԱԳԵԱՆ | Ս. ԱՐԱՊԵԱՆ |
| Ա. ԽԱՉՏԱՃԵԱՆ | Յ. ԳԱՓԱՄԱՃԵԱՆ |
| Ս. Խ. ՓՈՓԱԶԵԱՆ | |

# ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

### ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

### 1875 — 76 ԱՄԻ

### ԱՌ

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎՆ

### Ա.

### ՆԱԽԱԲԱՆ

Քաղաքական Ժողովս՝ իւր պաշտօնավարութեան, 74 - 75 ամի շրջանին աւարտելէն ետև, իւր միամեայ համարատուութեան տեղեկագիրը պատրաստելու առթիւ. որչափ Ազգային Ժողովոյդ յայտագրել թէ Քաղ. Ժողովս իւր պաշտօնավարութեան շրջանը 1875 Մայիս 1 ին լըրացած կ'համարի և կ'խնդրէ Ազգային Ժողովէն՝ իւր յաջորդին ընտրութիւնը փութացնել, որպէս զի Վարչական գործերն անտես չմնան: Այս այս Ազգային Ժողովդ իւր Մայր Դիւանին միջոցաւ յայտարարելով թէ Ազգ. Ժողովը Քաղ. Ժողովոյ պայմանաժամը լրացած չհամարիր և հրաժարականը չընդունիր, կը հրաւիրէր զՔաղ. Ժողովս իւր պաշտօնը շարունակել մինչև 1876 Մայիս 1:

Հետևապէս՝ Քաղ. Ժողովս Ազգային Ժողովոյդ այս հրաւէրն ընդունելով և իւր գլուխը նուիրելով՝ մինչև ցորչեաւ պայմանաժամն իւր պաշտօնը շարունակեց, և այսօր 1876 Մայիս 1 իւր պայմանաժամը լրացած սեպելով ըստ օրինի իւր հրաժարականը և միանգամայն առաջին միամեայ համարատուութեան կցելով նաև այս երկրորդ և վերջին տարեկան համարատուութիւնը կ'մատուցանէ Ազգային Ժողովոյդ:

### Բ.

### ՏԵՍՈՒՉ ԽՈՐՀՐԴՈՑ ԵՒ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆՑ ՎԵՐԱԿԱԶՄՈՒԹԻՒՆԸ

Ժողովս՝ Տեսուչ խորհրդոց և Հոգաբարձութեանց անդամներէն Սահմանադրական տարեգլխոն՝ այսինքն 1875 Մայիս 1 ին՝ պայմանաժամին լրացածներուն և միջնակա փոփոխելիքներուն տեղ նոր ընտրութիւն կատարելով, վերակազմեց հետևեալ խորհուրդներն ու հոգաբարձութիւնները.

| | |
|---|---|
| Ուսումնական | Խորհուրդ |
| Վանօրէից | » |
| Տնտեսական | » |
| Եկեղեցեաց | Հոգաբարձութիւն |
| Հիւանդանոցի | » |

Իսկ Դատաստանական խորհրդոյ և Կտակաց Հոգաբարձութեան վերակազմութիւնը Խառն Ժողովոյ վերապահեց:

## Գ.

# ՏԵՂԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

## Ա.

### ԹԱՂԱԿԱՆ ԽՈՐՀՐԴՈՑ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՔ

Ժողովոյս վերջին միամեայ շրջանին մէջ 12 թաղ. խորհրդոց հրաժարում՝ և նոր ընտրութիւնք պատահեցան որք են՝

Գատըգիւղ. Առ ժամանակեայ թաղ. խորհրդոյ հրաժարմամբ, սահմանադրապէս նոր թաղ. խորհուրդ ընտրեցաւ և վաւերացաւ.

Պէշիկթաշ. Թաղականաց պակասը լրացնելու համար ընտրութեան հրահանգ ղրկուեցաւ.

Սամաթիոյ Եէնի մահալլէ. Թաղ. խորհրդին հրաժարմամբ նորն ընտրելու հրահանգ ղրկուեցաւ.

Կէտիկ փաշա. Թաղ. խորհրդին հրաժարմամբ նորն ընտրելու հրահանգ ղրկուեցաւ.

Եէնի գիւղ և Ստէնիա. Թաղ. խորհրդոյ հրաժարմամբ նորերն ընտրելու հրահանգ ղրկուեցաւ.

Այէմաղի. Իւսկիւտարի Սելամսըզի թաղ. խորհրդոյ առաջարկութեամբ Այէմաղիի համար առանձին թաղ. խորհուրդ ընտրուելու հրահանգ ղրկուեցաւ.

Գում գաբուսի դուրս. Թաղ. խորհրդոյ լուծմամբ նոր թաղ. խորհուրդ ընտրուեցաւ և վաւերացաւ.

Քուրուչէշմէ. Թաղ. խորհրդին հրաժարմամբ նորն ընտրուեցաւ, և նորընտիր թաղ. խորհուրդն ալ քիչ ժամանակէ ետև անձնական դրդումնեց պատճառաւ հրաժարելով՝ առ ժամանակեայ խորհուրդ մը դրուեցաւ մինչև ի նոր տնօրէնութիւն.

Պէյքօզ. Թաղ. խորհուրդն անկանոնաւորութեամբ յրուած ըլլալով և գանձարանի հաշուոց քննութիւնք անոր ունենալուն համար, առ ժամանակեայ խորհուրդ մը դրուեցաւ մինչև ի նոր տնօրէնութիւն.

Իւսկիւտար Ս. Կարապետ. Թաղ. խորհրդոյ պաշտօնաժամն աւարտելուն պատճառաւ նոր թաղ. խորհրդոյ ընտրութեան հրահանգ ղրկուեցաւ.

Խասգիւղ. Թաղ. խորհրդոյ պաշտօնաժամն աւարտելուն պատճառաւ նոր թաղ. խորհրդոյ ընտրութեան հրահանգ ղրկուեցաւ.

Պէյլէրպէյի. Թաղ. խորհրդոյ պաշտօնաժամին աւարտելուն պատճառաւ նոր թաղ. խորհրդոյ ընտրութեան հրահանգ ղրկուեցաւ.

## Բ.

### ԲԵՐԱՅԻ ԱԼԿԱԶԱՐԻ ԽՆԴԻՐԸ

Ալկազարը թէև Ազգին յանձնուած, սակայն նախորդ վարձակալին ունեցած մեծագումար պարտուց վճարման համար անոր կարասիքը Պատրիարքարանի պահանջման համեմատ գրաւման տակ առնուած ըլլալով, նոյն կարասեաց վաճառման խնդիրն անլոյծ կը մնար.

Ժողովս այս խնդրոյն դատական կարգադրութեանը համար կարգուած փաստաբանին հետ բանակցելով, պէտք եղած տեղեկութիւնն իմանալէ ետև, նոր թագրիր մը գրեց, զոր անձամբ ներկայացուց Սրբազան Պատրիարքն Արտաքին գործոց Բարձր. Նախարարին և բանիւ բերանով ևս խօսեցաւ անոր հետ. Ասոր վրայ բարձրագոյն հրամանաւ գործը յատուկ դատարանի մը յանձնուեցաւ, և յետոյ Բերայի կալուածական Հոգաբարձութեան ու անոր կողմէ կարգեալ փաստաբանին մէջ անհամաձայնութիւն պատահելով և յիշեալ փաստաբանը ժողովիս դիմելով հրաժարել ուզելուն համար, Ժողովս միջամտեց և անհամաձայնութիւնը լուծելով պարտաւորեց փաստաբանն իր պաշտօնը շարունակել և գործն ի յանգ հանել.

Բարձրագոյն դռնէն եկած ծանուցագիր մը յայտնելով թէ Գալաթիոյ դեսպանատունը Փարիզի մանկեալ վարժարանին պարտուց համար Բերայի եկեղեցւոյն սեպհական Ալկազար կալուածին եկամուտն ու ֆէրագը սէքէստրօ ըրած է, Ժողովս այս մասին Բերայի կալուածական Հոգաբարձութեան հետ խորհրդակցելէ ետև, ան-

ընդունելի դատեց նոյն աէքէսարօն, և յատուկ թագրիրով մը բողոքեց և յարձումը խնդրեց ։ Միանգամայն ուրիշ թագրիրով մը նոյն աէքէսարոյին պատճառ համարուած Փարիզի վարժարանին պարտքն ազգին անընդունելի ըլլալն ալ ծանոյց Բ. դրան ։

Յ.

### ԲԵՐԱՅԻ ԿԱԼՈՒԱԾԱԿԱՆ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ա. Հանգուցեալ Տատեան Պօղոս Պէյին վրայ գտնուած Բերայի ազգային կալուածներուն եկեղեցւոյ վրայ դարձնելու առաջարկութիւնը նկատողութեան առնլով Ժողովս նոյն Հոգաբարձութեան յանձնարարեց հանգուցեալին ժառանգորդաց թաքրիրներն առնելու համար պէտք եղած միջոցներն ի գործ դնել ։

Բ. Բերայի կալուածոց մնացուկին Անգլիոյ դեսպանատան նախորդ առաջին թարգման Միսաք Բիզանդի պարտքն եղած գումարին և տոկոսներուն հաշիւը տեսնելով կալուածական Հոգաբարձութիւնը նոր պարտագիր մը ստորագրած և իր տեղեկագրովը ղրկած էր Սրբազան Պատրիարք Հօր վաւերացման համար ։ Ժողովս նոյն տեղեկագրին համաձայն յիշեալ պարտագրին մէջ Հոգաբարձութեան անդամոց ստորագրութիւններուն ու Հոգաբարձութեան պաշտօնական կնիքը վաւերացնել որոշեց ։

Ձ.

### ԲԵՐԱՅԻ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ ՀԱՄԱՐ ԹԱՂԱՅԻՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՈՑ ԿԱԶՄՈՒԹԻՒՆ

Բերայի Թաղ. խորհուրդը Թաղին վարժարանաց բարեկարգութեան և անոր անմիջական յարակցութիւն ունեցող ինչ ինչ խնդիրներն ի գլուխ հանելու պաշտօնով Թաղին պատուաւորներէն 7 անձինքէ Թաղային յանձնաժողով մը ընտրած ըլլալը յայտնելով՝ հաստատութիւնը կը խնդրէր ։ Ժողովս Ուսումն. Խորհրդոյ կարծիքն առնուլէ ետև նկատողութեան առնլով նաև այն բացառիկ վիճակն, ուր մէջ գտնուած է Բերայի Թաղն իր համաճարակ հրկիզութենէն ի վեր և որ պարտաւորուած է դժուարութիւնն Բերայի եկեղեցւոյ պարտուց կարգադրութեան խնդիրն և կալուածոց տեսչութիւնը Թաղ. խորհրդէն զատելով անկէ անկախ յատուկ Հոգաբարձութեան մը յանձնելու, ձգելով Թաղ. խորհրդոյ միայն եկեղեցւոյ ներքին հասոյթներով թէ եկեղեցին և թէ Թաղին դպրոցները մատակարարել, ընդունեց և հաստատեց Թաղ. խորհրդէն առաջարկեալ յանձնաժողովն Օժանդակ յանձնաժողով անունով ։ Ժողովս Բերայի Թաղ. խորհրդոյ և իր օժանդակ յանձնաժողովոյն առաջարկութեան վրայ նաև Ս. Յարութիւն Եկեղեցւոյ յարակից կալուածները պարպելու հաճութիւն և որոշում՝ տուաւ. որպէս զի նոյն կալուածները նորոգուելով՝ Թաղին դպրոցաց եկամուտ բերելու ծառայեն, այն պայմանաւ որ Թաղ. խորհուրդը յիշեալ կալուածոց մէջ պատսպարեալներէն չքաւոր և աղքատ եղողներուն բնակարանի համար մէկ մէկ վարձք վճարէ ։

Ճ.

### ՂԱԼԱԹԻՈՅ ԿԱԼՈՒԱԾԱԿԱՆ ՇԻՆՈՒԹԵԱՆՑ ԽՆԴԻՐԸ

Ղալաթիոյ հրկիզեալ ազգային կալուածոց շինութեան խնդրոյն վրայօք Ղալաթիոյ կալուածական Հոգաբարձութեան և Տնտ. խորհրդոյ տեղեկագրերն առնուլէ ետև Ժողովս իր մէջէն յանձնաժողով մը կարգեց շինութեան յատակագիծը տեսնելու, մանրամասն քննութիւնները կալուածական հոգաբարձութեան և ճարտարապետ Աղնաորեան էֆէնտիին հետ ընելու, և ասոնց ամենուն արդիւնքը Ժողովոյս բերելէ ետև, շինութեան ձեռնարկութեան որոշում տալու համար ։ Այն նախապատրաստութիւնք կատարուելէ ետև. Ժողովս Ներկայացեալ յատակագծին համեմատ և Աղնաորեան էֆ. ի ճարտարապետական պատասխանատուութեան տակ, բոլոր ծախքը 2200 ոսկին չանցնելու պայմանաւ շինութեան ձեռնարկութեան որոշում տուաւ, Վարչութենէն և Տնտ. խորհրդէն ալ մէյմէկ անդամ կարգելով, որպէս զի Ղալա-

*թիոյ կալուածական Հոգաբարձութեան հետ միանալով հակեն նոյն շինութեան գործոյ, և այսպէս ձեռնարկեալ շինութիւնք լրացան և հաշուեցոյցն ի վերջոյ ներկայացաւ Տնտ. խորհրդոյ, որ գոհացուցիչ գտած էր զայն ։*

*Այն ձեռնարկութիւնը յաջողութեամբ 'ի գլուխ հանելէ ետև, Ղալաթիոյ կալուածոց Հոգաբարձութիւնն այս անգամ՝ նոր շինութեանց ուրուագիծ մ'ալ ներկայացուց, որու համեմատ կառուցանելի այն նոր շէնքը հիմնել Ղալաթիոյ Ասքըլըր փողոցին մէջ եկեղեցւոյն յարակից 950 կանգուն տարածութեամբ գետնին վրայ, եռայարկ և քարաշէն, որուն գետնայարկը 7 ը մեծ ու փոքր մթերանոց պարունակէ, 210 ոսկի տարեկան եկամուտ բերող. և երկրորդ յարկն ունենայ Վարչութեան ժողովոց համար 3 ընդարձակ և 3 փոքր սենեակներ. նոյնպէս քարոզչի քահանայից և թաղ. խորհրդոյ համար սենեակներ և վարժարանի շէնքին կցուելու քանի մը դասարաններ ։ Իսկ երրորդ և վերին յարկն իւր ամբողջ տարածութեամբը Ազգային Ժողովին համար խորհրդարան յատկանայ ։ Այն ուրուագծին համեմատ շինութիւնը կատարուելու համար առ առաւելն 3 հազար լիրայի ծախուց պէտք նշանակուած է, մէն մի կանգունին համար 3 լիրա հաշուելով, և 2000 լիրայի փոխառութեամբ %ին 12 տոկոսով, պահանջը՝ շինութեան առեն կալուածներին հետզհետէ գոյացած արդիւնքով ղինտորելու պայմանաւ ։ Տնտես. խորհուրդն այս շինութեան ուրուագիծն և յարակից պայմանները քննելով տեսեր է որ թէ՛ նախորդ և թէ՛ առաջարկուած նոր շինութեան պատճառաւ Ղալաթիոյ կալուածոց սնտուկին պարտքը 3000 օսմ. ոսկւոյ պիտի յանգի և վճարելի տարեկան տոկոս պիտի ունենայ 450 ոսկի, 360 լիրա նախորդ և վերջին շինութեանց փոխառութիւններուն և 90 լիրա նախկին 1000 ոսկւոյ պարտուց համար. իսկ փոխարէն կալուածոց սնտուկին ընդունելով 210 լիրա կառուցանելի 7 մթերանոցէն, 840 լիրա ևս արդէն կառուցեալ մեծ կալուածէն, ընդ ամենն 1050 լիրա, պիտի կարենայ հատուցանել այս զումարէն 450 լիրայի տոկոսաց գումարը, և աւելցած 600 լիրան տարուէ տարի մայր պարտուց գլխավճարին թերհաշիւ հատուցանելով՝ հինգ վեց տարիէն այն պարտքն ամբողջապէս մաքրել ու բառնալ ։ Կալով վարժարանին ծախուց՝ կալուածական նորոգութեանց և այլոց, այս պիտոյից պիտի յատկանան միւս կալուածոց տարեկան 400 ոսկւոյ հասոյթն և ընդ նմին եկեղեցւոյն մագֆույ տարեկան 300 ոսկւոյ արդիւնքն, ընդ ամենն 700 լիրա Օսմանեան ։*

*Ժողովս Տնտ. խորհրդոյ հետ համամտօրէն՝ կալուածոց Հոգաբարձութեան այս նոր շինութեանց առաջարկն ու յատակագիծը՝ յարակից կարգադրութեանց հետ օգտակար և ընդունելի գտնելով, ձեռնարկելու համար իւր հաւանութիւնը տուաւ, գործելով ըստ առաջնոյն Վարչութենէն և Տնտ. խորհրդէն տեսուչներ կարգելով, և որոշեց նաև կալուածական Հոգաբարձութեան առաջարկութեան համաձայն՝ որ Ղալաթիոյ ի Թօփհանէլար ճառոտէ, ի Պալապա ի Ասքըլըր փողոց նորոգ կառուցեալ ընդարձակ կալուածոց հասոյթն ամբողջապէս առանց որ և է բացառիկ պիտոյից ծառայելու յատկանայ անխափան կալուածոց շինութեան պարտուց տոկոսին և գլխավճարին ։*

## Ե.

## ՍԱՄԱԹԻՈՅ ՀՐԿԻԶԵԱԼ Ս. ԳԷՈՐԳ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՇԻՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐ

*Սամաթիոյ Թաղ. խորհրդոյ կողմէ գրով և բանիւ հրկիզեալ եկեղեցւոյ շինութեան համար եղած առաջարկութիւնը, որ էր՝ թաղին երեսելի անհատներէն յանձնաժողով մը կազմել վերաշինութեան գործը հանգանակութեամբ յաջողցնելու համար, յանձնուեցաւ Տնտեսական խորհրդին, որպէս զի Սամաթիոյ եկեղեցւոյ սնտուկին պիւտճէն քննէ և անոր վրայ լիուլի տեղեկութիւն հաղորդէ Վարչութեան ։ Տնտ. խորհուրդն ալ յիշեալ եկեղեցւոյ սնտուկին ընդհանուր հաշուեցոյցը քննելով Վարչութեան տեղեկագրեց թէ Թաղային սնտուկն 340000 ղրուշ*

պարտք ունի այլ և այլ անձանց, 145000 դրուշ ալ տարեկան հասոյթ և 110000 դրուշ ալ ծախք ունի, որով 35000 դրուշի տարեկան յաւելեալ շահ մը կունենայ, որ եթէ նոյն պարտուց միճարման յատկացուի տասն տարիէն հազիւ սխոր կարենայ պարտուց բեռէն ազատիլ : Ժողովս Սամաթիոյ Թաղային անտուկի վիճակին իմանալէ ետև, եկեղեցւոյ շինութեան գործը խորհրդածութեան արժանի գտաւ, սակայն ժամանակ չունեցաւ անով զբաղելու :

## Է.

## ՍԱՄԱԹԻՈՅ ԹԱՂ. ԽՈՐՀՐԴՈՅ ԵՒ ԿԻՒՄԻՒՇՃԵԱՆ ԺԱՌԱՆԳՈՐԴԱՑ ՄԷՋ ԾԱԳԱԾ ԽՆԴԻՐԸ

Հանգուցեալ Կիւմիւշճի Գասպար աղայի և որդւոյն համար պատրաստուած գերեզմանաքարերն իրենց տեղը դրուելու մասին Սամաթիոյ Թաղ. խորհուրդն արգելք կըլլար պատճառելով թէ Սամաթիոյ երկսեռ դպրոցին շինութեան համար նոյն գերդաստանին կողմէ մատուցուած գումարն անբաւական եղած է շինութեան բոլոր ծախքը հոգալ, որ 3 հազար ոսկւոյ յանգած է, և կխնդրէր որ եթէ հանգուցելոյ եկեղեցւոյն բակին մէջ Թաղման համար է միայն տրուած գումարն, դպրոցին վրայ դրուած յայտարարութիւնն ջնջուի, և եթէ ոչ՝ դպրոցին շինութենէն բաց մնացած ծախքն ալ իրենց կողմէ վճարուի և այնուհետև գերեզմանաքարերն իրենց տեղը դրուին :

Ժողովս այս խնդրին երկու կողման ներկայութեան քննելով, և դպրոցին շինութեան ծախուց պակասը լեցնելու խնդրին երկրորդական համարելով, նախ հանգուցելոց գերեզմանաքարերը զետեղել տալու, և յետոյ դպրոցին շինութեան նկատմամբ նախորդ Թաղ. խորհրդոյ և Կիւմիւշճեան գերդաստանին մէջ եղած պայմանագրութիւններն ի քննին առնելով, ներկայ Թաղ. խորհրդոյ յարուցած խնդրոյն մէջ իրաւունք մը չգտաւ, սակայն միւս կողմէ Սրբազան Պատրիարք Հօր յանձնարարեց որ Կիւմիւշճեան գերդաստանին ազգասիրութեան յորդոր կարդայ Սամաթիոյ եկեղեցւոյն շինութեան միջոցին ըստ հաճոյից գումար մը նուիրելու :

## Ը.

## ՔԱՐԱԿԷՕՄՐԻԿԻ ՄԷՋ ԿԻՐԱԿՆՕՐԵԱՑ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ ՊԱՏԱՀԱԾ ՎԷՃԸ

Քարակէօմրիւկի Թաղ. խորհրդէն եկած մէկ գրութիւնն, որով Թաղին Աւետարանական անուն ընկերութեան կողմէ կիրակնօրեայ դասախօսութեանց պատճառաւ յարուցեալ անկարգութեանց դէմ բողոքելով կհրաժարէր, նկատողութեան առնլով Ժողովս և այն պատճառաբանեալ հրաժարականն անընդունելի գտնելով պատասխանեց Թաղ. խորհրդին որ իւր պաշտօնը շարունակէ և անկարգութեան հեղինակները յուզմութիւն բերելու համար պէտք եղած ջանքն ընէ, և եթէ չյաջողի՝ յայտնէ անուանէ իմացնէ ի Պատրիարքարան. որպէս զի զգաստացուցիչ միջոցներ ի գործ դրուին : Սակայն անկարգութեան հեղինակներն անպատիժ թողլով, ի վերջէ իրենց արտօրքն այն աստիճան հասուցին որ Թաղ. խորհրդոյ և դպրոցական հոգաբարձութեան և իրենց մէջ ծանր կռիւ պատահելով Ոստիկանութիւնը միջամտեց և քանի մը անձինք ի բանտ մատնուեցան : Իրաց այս վիճակին վերջ տալու նպատակաւ Ժողովս որոշեց որ նախ քան զամենայն կիրակնօրեայ դպրոցները Ուս. խորհրդոյ կողմանէ շինուելու կանոնագրութեան մը ենթարկէ, հետևաբար շրջաբերական մը գրելով առ Թաղ. խորհուրդս, կիրակնօրեայ դասախօսութեանց պատճառաւ դպրոցները առայժմ բանալն արգիլեց և պատուէր տուաւ որ կիրակնօրեայ դասախօսութիւն ընել ուզող ընկերութիւնք ուրիշ տեղ մը վարձեն և հոն կատարեն իրենց պաշտօնը :

Ժողովս այն ինչ կպատրաստուէր այն վերջին անօրէնութեան մասին Ուս. խորհրդոյ տեղեկութիւն և կանոնագրութիւն մը շինելու համար հրաւիրել տալ, այն խորհուրդը իւր դիտողութիւնները կանխեց ներկայացնելու : Ժողովը ձայնակցութեամբ Սրբազան Պատրիարք Հօր յայտնեց թէ Վարչութիւնն ազգին մէջ ուսմանց ծաւալման և դաստիարակութիւնն ընդ-

Բ, Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցւոյ վագֆին վերաբերեալ մանրիկ մը վաճառման խնդիրն լոկ տեղեկագրով Տնտ. Խորհրդոյն ընդունելով Ժողովս, գործադրութեան համար հրահանգ ղրկեց։

Գ. Տնտեսական խորհուրդը Թօփգաբուի Թաղական խորհրդոյ առաջարկութիւնն եկեղեցւոյն քովը գտնուող խուցին նորոգութեան համար քննութեան առնելով Ժողովիս տեղեկագրած էր թէ չինութիւնն անհրաժեշտ է, և ճարտարապետական հաշուով ալ նուազն 120 Օսմանեան ոսկւոյ կկարօտի, և թէ այլէն 6000 ղուրուշի արժէքով նիւթ ալ ձեռն պատրաստ ըլլալով, Մնացորդը Թաղական խորհուրդն ու քահանայից դասը միայն կստանձնեն հոգալ հանգանակութեամբ, ուստի և ընդունելութեան արժանի դատելով Ժողովոյս հաւանութիւնը խնդրած էր։ Ժողովս Տնտ. Խորհրդոյ առաջարկութեան համաձայն իր հաւանութիւնը տալով, չինութեան հրամանը կառավարութենէն առնել որոշեց։

Դ. Տնտեսական խորհուրդը Պէշիկթաշի և Իւսկիւտար Ս. Կարապետի Թաղական խորհրդոց և Սամաթիոյ դպրոց ընկերութեան դէմ բողոքելով կըսէր թէ ազգային վագֆներու մասին Կեդրոնական վարչութեան կողմէ որոշուած և 1871 հոկտեմբեր 28 թուական շրջաբերականաւ Թաղ. խորհրդոց հաղորդուած և գործադրութեան ենթադրուած վճռին կարգադրութեան հակառակ մինչև ցարդ իրենց թաղին վերաբերեալ վագֆներուն կալուածագրերը չեն ուղարկեր ի Պատրիարքարան վաւերացման համար. այլ ուրիշ կերպով կվաւերացնեն, և այս բանը հաստատեալ օրինաց դէմ գանգատութիւն համարելով ազդու տնօրէնութիւն ընել կխնդրէր։ Ժողովս յիշեալ երկու Թաղական խորհրդոց և դպրոց ընկերութեան մէյմէկ ազդարարագիր ղրկեց հրաւիրելով զիրենք՝ որ հաստատեալ ընդհանուր օրէնքը յարգեն և գործադրել փութան։

Ե. Տնտեսական խորհուրդն Ելևմտից Հաշուարդութեան հետ միաբանական յօդուածով դրամական մասին քանի մի առաջարկութիւններ ընելով, Ժողովս նկատողութեան առնելէ ետև պէտք եղած որոշումները տուաւ և հաղորդեց Տնտեսական խորհրդոյ։ Յիշեալ առաջարկութիւնք են.

1° Ազգային կալուածոց Թահրիրին համար Կեդրոնական սնտուկի կողմէն եղած ծախուց մասին Տնտեսական խորհրդին յանձնարարուած էր Թաղերուն վրայ բաշխման ցուցակ մը պատրաստել։ Այն բաշխման ցուցակը ներկայացնելով, Ժողովս ընդունեց և անոր համեմատ Թաղերէն հաւաքելու գործը Տնտեսական խորհրդոյ յանձնեց։

2° Ժողովս վարժարանաց ընդհանուր տեսչին հրաժարումը ընդունելով այս մասին Տնտես. խորհրդոյ պէտք եղած հրահանգն ղրկեց։

3° Մայրաքաղաքիս եկեղեցեաց մէկ մասին քանչելէրի տուրք վճարման յապաղմամբ Կեդր. սնտուկին կրած նեղութիւնը դարմանելու համար Ժողովս Տնտ. խորհրդոյ առաջարկութեան վրայ Ա. և Բ. ազդարարութիւններ յղեց մի քանի Թաղ. խորհրդոց, որոնցմէ պայմանաժամ մը մէջ վճարելու համար՝ յայտ առնելով որ եթէ պայմանաժամն անցնի, Վարչութիւնը այն տոկոսի սահմանադրականս պէտք եղածն ի գործ դնել։

4° Տնտ. խորհրդոյ և Ելևմտից Հաշուարդութեան միաբանական առաջարկութեանց մէկն ալ էր Պատրիարքարանի խոհանոցին բարձումն, որով և մատակարարութեան ծախքը պիտի ջնջուէր, և Կեդր. սնտուկին բեռը մեծապէս պիտի թեթևնար։ Ժողովս այս մասին Սրբազան Պատրիարք Հօր համակարծիք լինելը տեսնելէ ետև, Տնտեսական խորհրդոյ հետ մի քանի անգամ խորհրդակցելով հուսկ ուրեմն հարկ դատեց վերցնել հասարակաց սեղանը Պատրիարքարանի մէջէն, և այս առթիւ եղած ծախքը կարճելով 1875 Դեկտեմբեր մէկէն սկսեալ խոհանոցը գոցել տուաւ, և գիշերօթիկ հիւրերն Եէտի գուլէի Ս. Յակոբայ վանքը փոխադրուելու և կերակրուելու պայմանաւ ամսական հազար ղրուշ որոշեց տալ Ազգ. հիւանդանոցի սնտուկին, նոյնպէս Պատրիարքարանի բարապանաց և այն սպասաւորաց՝ որ Պատրիարքարանի խոհանոցէն կկերակրուէին, ամսականնայը մէյ

մէկ վերադիր ընել տալու իրեն հաշւոյն ։ Այս անօրէնութեան արդեամբը Պատրիարքարանի ծախքէն աւելի 2500 ղուրուշ պակսեցաւ ։

5° Տնտեսական խորհրդոյ և Ելևմտից Հսկողութեան միաբանական յայտագրին համաձայն Կեդրոնական սնտուկին դրամական ներկայ տագնապին մէջ խնայողութեան միջոց մը ի գործ դնելու նպատակաւ Պատրիարքարանի պաշտօնէից ամսականաց մասին եղած ընդհանուր վերջի առաջարկութիւնն ալ նկատողութեան առնելով Ժողովս, և այդպէս փափաքուած խնայողութիւնը ձեռք բերելու նպատակաւ Պատրիարքարանի մատակարարութեան և հասարակաց սեղանի ծախքը ջնջելու համար ըրած կարգադրութիւնը բաւական համարելով, պաշտօնէութեան թոշակին դպրոցին աւելորդ գըտաւ և որոնց պաշտօնէից ամսականքն անփոփոխ պահել մինչև ի նոր անօրէնութիւն ։

Զ · Ակնցի Փախալեան Յարութիւն աղայի կտակին Ակնայ Աղաշէնի գիւղի վարժարանին նուիրեալ և աւանդաբար Համամճեան Սարգիս աղային յանձնուած ակրիի մը գումարին հաշւոյ խնդիրը Տնտեսական խորհուրդն յանձնախումբի մը ձեռօք քննած և Համամճեան Սարգիս աղան հրաւիրելով արդիւնքն իրեն ծանուցած ըլլալով, Սարգիս աղան հաւանած է եղեր պէտք եղած գումարը հատուցանել, և այս նըպատակաւ իր պարտագիրը խնդրած է, որ Ապուչեխի Թաղ. Խորհրդոյ քով ի պահեստի կըմնայ ։ Տնտեսական խորհուրդն այս դրամական գործողութիւնը կարգադրելու համար Համամճեանի պարտագրոյն հաս ըլլալին առաջարկելով, Ժողովս ընդունեց և Ակնայ Առաջնորդին գրել որոշեց ։

Է · Ժողովս Տնտեսական խորհրդոյ մէկ յայտագիրը նկատողութեան առնելով, որով կյայտնէր թէ Թաղ. Խորհրդներէն շատերն թէ պաշտօննեալ ժամանակին և թէ անժամանակ հրաժարելով հաշուեցոյցնին ալ միասնեղ չեն գրեր, և նոր ընտրութեան հրահանգ կխնդրեն, մինչդեռ Թաղ. Խորհրդոյ համար նախորդ Վարչութեան որով հրատարակուած Սահմանադրական հրահանգին 14դ յօդուածը կտրամադրէ որ հրաժարեալ Թաղ. Խորհրդէն հաշիւ չառած նոր ընտրութեան հրահանգ չտրուի և Վարչութիւնը կհարկադրուի առժամանակեայ Թաղ. Խորհուրդ կարգել մինչև որ հրաժարեալ խորհրդէն հաշիւները գան, սոյն դիտողութեանց վրայ բոլոր Թաղ. Խորհրդոց շրջաբերականաւ ծանոյց որ երբ հրաժարին պաշտօնէ, հրաժարագրին հետ նաև իրենց հաշուեցոյցը ղրկեն, եթէ ոչ չպիտի կրնայ Վարչութիւնը նոր ընտրութեան հրահանգ տալ ։

Ը · Տնտեսական խորհրդոյ յայտագրին վըրայ Ժողովս Կէօքսիւճէյի հրկիզեալ եկեղեցւոյ վերանորոգման խնդիրը նկատողութեան առնելով, Թաղ. Խորհրդոյ առաջարկութեան համեմատ շինութեան ձեռնարկելու հաւանութիւն տուաւ, ըլլալիք ծախուց գումարն որոշելով և բաց մնացած ծախուց տեղը լեցնելու համար հանգանակութեան դիմելու խնդիրնին ընդունելով ։

Թ · Տնտեսական խորհրդոյ յայտագրին վըրայ, Ժողովս Ղալաթիոյ կալուածոց հոգաբարձութեան այն առաջարկութիւնն՝ որ է Նորակառոյց կալուածներէն 231 Թիւ խանութին ուրիշի սեպհականութիւնն եղած Հնֆիչճիի կէտիկը գընոյ առնուլ 184 լիրայի և գործնել յանուն եկեղեցւոյն Ղալաթիոյ՝ որ միւլքին տէրն է արդէն, ընդունելի գտաւ և գործադրութեան հըրահանգ տալ որոշեց ։

Ժ · Տնտեսական խորհրդոյ յայտագրին վրայ, Ժողովս՝ փոքր Ասիոյ սովելոց օգնութեան Մասնաժողովոյ ձեռամբ կատարուած հանգանակութեանց և բաշխմանց հաշուեցոյցը խնդրեց և ստացաւ նոյն Մասնաժողովէն, իբր համարատուութեան միջոցաւ Ազգային սատկանելի ժողովոյդ ի գիտութիւն հաղորդելու համար ։

Հետևաբար՝ յիշեալ Մասնաժողովոյ նամակին հետ իբր ղրկած հաշուեցոյցը նոյնութեամբ աստ կդնեմք ․

## ՆԱՄԱԿ

Բարձրաշնորհ Սրբազան Պատրիարք Հայոց
Նախագահ Ազգ · Քաղ · Ժողովոյ

Ձեր բարձր Սրբազնութեան թիւ 659 և 1 Ապրիլ թուով հրամանագրին համեմատ ներփակեալ կմատուցանեմք Ձեր Սրբազնութեան, մեր յանձնաժողովոյ ձեռամբ կատարուած հանգանակութեանց և բաշխմանց 1875 Դեկտեմբեր 31 գոցուելով հաշուեցուցակին մի պատճէնը՝ զորս մի առ մի հրատարակած եմք սոյն լրագրոյ միջոցաւ :

Թէպէտև յիշեալ թուականէն ի վեր քանի մը գործողութիւնք ևս տեղի ունեցած են, բայց տակաւին հրատարակուած չըլլալուն երբ լրագրոյ միջոցաւ հրատարակեմք, անոնց ևս հաշիւն Ձեր Սրբազնութեան ներկայացնելու պատիւը կունենամք :

Մնամք Ձեր բարձր Սրբազնութեան խոնարհ ծառայք .

Ի դիմաց յանձնաժողովոյ փոքր Ասիոյ սովելոց .

Ատենադպիր — Ատենապետ
Յ · ՄԷՐՆԷՄ-ԳՈՒԼԻ — Յ · Գ · ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆ

Գանձապետ
Յ · ԿԻՒՄԻՒՇԵԱՆ

10 Ապրիլ 1876
Կ · Պոլիս

### ԺԲ ·

### ՎԱՆՕՐԷԻՑ ԽՈՐՀՐԴՈՑ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ա · Արմաշու Վանուց Եղօվլայի ագարակներէն ունեցած հին առնելիքի խնդիրը կարգադրելու համար Վանօրէից Խորհրդոյ և Արմաշու Վանահօր ստէպ Թախանձանացը վրայ, Ժողովս Երուսաղէմայ Սրբազան Պատրիարքին հետ բանակցելով, նոյն ագարակաց հասոյթէն՝ որոյ վերատեսչութիւնը Երուսաղէմայ աթոռին վրայ էր, յիշեալ պարտքը վճարուելու համար ըրած որոշումն Երուսաղէմայ Սրբազան Պատրիարքին ընդունել տալով, վերջացուց սոյն հինաւուրց խնդիրը :

Բ · Վանօրէից Խորհրդոյ մատուցած ուրիշ զանազան խնդիրներն ըստ մեծի մասին Խառն Ժողովոյ վերաբերելուն և սոյն Ժողովոյ համարատուութեան պատկանելուն, ներկայ համարատուութեանս մէջ նշանակել զանց առնուեցաւ :

### Գ ·

### ԳԱՒԱՌԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

### Ա.

### ԱՂԹԱՄԱՐԱՅ ՎԱՆՈՒՑ ԱՐՔՈՒՆԻ ՏՈՒՐՔԸ

Աղթամարայ վանքէն եկած խնդրագրին համեմատ՝ Ժողովս ըստ նախնի հրովարտակաց նոյն վանուց արքունի տուրքէ ազատ ըլլալու համար Թագրիր գրել որոշեց :

### Բ.

### ԵԿԵՂԵՑԱԿԱՆԱՑ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՏՐՈՑ ԽՆԴԻՐԸ

Առաջնորդաց ոմանց կողմէ եկած տեղեկութեանց համեմատ կուսակալութեանց հրամանագիր ղրկուեր է որ եկեղեցականներէն ալ զինուորական տուրք առնուի, որ մինչև հիմա չկար և այս անսովոր տրոց բարձումը կխնդրէին :

Սրբազան Պատրիարքը գաբուքեհեասի Արբահամ Էֆէնտիին միջոցաւ Շուրայի Տէվլէթէն տեղեկացեր է այս բանին պատճառն, որ է Յունաց կղերականաց վարուցան ընելը . բայց ըստ որում Հայ եկեղեցականք այս բանը չեն ըներ . ուստի Հայ եկեղեցականաց համար այդ տուրքին բարձումը խնդրելու մասին Թագրիր գրուեցաւ :

### Գ.

### ԵԿԵՂԵՑԵԱՑ ՇԻՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐ

Ա · Երզնկայէն մէկ ժամ՝ հեռաւորութեամբ Ս · Օհան անուն գիւղին մէջ Գարատարու եկեղեցւոյ և անոր կից վարժարանի մը շինութեան համար Թագրիր գրուեցաւ :

# ՀԱՇՈՒԵՑՈՒՑԱԿ Ա

## ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԵԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՈՅ

### ՄՆԱՑՔ

| | Լր. Ղշ | |
|---|---|---|
| 75 Մրտ 20 թուականաւ Մասիս լրգր 1635 թուոյն մէջ Ա. անգամ հրատարակուած հաշուոյ գումարը | 4440 | 85 |
| » Մյիս 18 » » » 1678 » » երկրորդ » » | 611 | 72 |
| » Նոյ 20 » » » 1756 » » երրորդ » » | 714 | 30 |
| Հինգ հզր եօթն հարիւր վաթսուն և վեց լր. Օսմանեան և ութսունևեօթը ղրշ. | 5766 | 87 |

31 Դեկտեմբեր 1875

## ԵԼՔ

| | | Լր·Օ· | |
|---|---|---|---|
| Կեսարիա քաղաքին և գիւղօրէից համար . . . . | | 1215 | |
| » մասնաւորապէս Գորշէհիր, Նիկտէ և այլոց համար . . | | 264 | |
| » » Զամանթը նահանգի Կէմէրէք և Տէնտիկի համար | | 100 | |
| Եօզղատ քաղքին և գիւղօրէից համար . . . . . | | 1563 | |
| Գաղատիա » » » » . . . . . | | 445 | |
| Գանկրա » » » » . . . . . | | 100 | |
| Ամասիա » » » » . . . . . | | 220 | |
| » մասնաւորապէս Հաճը գիւղի համար . . . . | | 20 | |
| Եւդոկիա քաղքին և գիւղօրէից համար . . . . | | 130 | |
| Պրուսա, Պիլէճիկի շրջակայ, Մուրատչա, Ադաբազար և այլ գիւղօրէից համար | | 500 | |
| Աֆիոն գարահիսար քաղքին և գիւղօրէից համար . . . . | | 150 | |
| Ագշէհիր » » » » . . . . | | 100 | |
| Նիկոմիդիա, Ղարատաղէն և Գլնճլէր գիւղերու համար . . . | | 125 | |
| Պանտրմա հիւանդաց համար . . . . . . | | 50 | |
| Սամսոն գաղթելոց համար . . . . . . | | 50 | |
| Ազգ. Հիւանդանոցին հոն պատսպարուող տղայոց համար . . | 50 | | |
| Իբրև եկամուտ 16 երկաթուղի բաժնեթուղթի 1875 հոկ. ի կողմնէ վրան | 85,53 3/4 | 135 | 53 3/4 |
| Ապահովութեան անունին Տէրութեան բացած ստորագրութեան համար ազգին կողմէն նուէր . . . . . . . . . | | 150 | |
| Պոլիս դիմող գաւառացի կարօտ ազգայնոց նպաստ Պատրիարքարանի յանձնարարութեամբ և մասնաժողովս կողմէն . . . . . | | 69 | 07 1/4 |

### ԾԱԽՔ

| | | | |
|---|---|---|---|
| Հեռագիր . . . . . . . | 7,23 1/2 | | |
| Անդորրագրերու և հաշուետուութեանց տոմարներու տպագրութեան | 5,80 | | |
| Թղթատարով յղարկուած և եկած դրամներուն համար . . | 6,61 3/4 | | |
| 2 տարուան կնիքի փորագրութեան . . . . . | 1,67 3/4 | | |
| Նամակաց ուղեգին . . . . . . | 1,05 | | |
| Յղարկուած փոխանակագրաց համար չափ . . . | 5 | | |
| Եօզղատէն եկող Ա. Ներսէսեանի . . . . | 10 | | |
| Գրագրի, համարչի և քարտուղարի . . . . | 14,88 | 52 | 26 |
| Սահմանեալ և դեռ անվճար մնացած նպաստից գումար . . . | | 23 | |
| Մնացորդ դրամ՝ 305 ոսկի իբրև գումար պահեստի «Պօլսոյ Մէմլէքէթ սանտըղին» յանձնուած % 9 տոկոսով յանուն գանձապետի Մասնաժողովս և իրենց կանոնագր համեմատ էր. Օսմ. 105 ոսկին 32025 ղրշի համար 2 տարի տրուած է մին 21000 և միւսը 11025 ղշ. և յիշեալ տոմսերը Մասնաժողովս Ատենապետին քով պահուած են : . . . . . . . . | | 305 | |
| Հինգ հազար եօթը հարիւր վաթսունը վեց լիրա Օսմանեան և ութսուն եօթը ղրշ. | | 5766 | 87 |

Ի դիմաց Յանձնաժողովոյ

ԱՏԵՆԱՊԵՏ — ՅԱԿՈԲ Պ. ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆ .

ԱՏԵՆԱԴՊԻՐ — Յ. ՄԻՐԷՄ - ԴՈՒԼԻ

ԳԱՆՁԱՊԵՏ — ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԻՒՄՈՒՇԵԱՆ .

Բ. Պրուսայի կուսակալութեան տակ գտնուած Եէնիշէհիրի ազգայնոց բնակութեան համար տուն եւ եկեղեցի շինել տալու համար թագրիր գրուեցաւ :

Գ. Այնթապի եկեղեցւոյ հնութեան եւ փոքրկութեան համար ըստ թախանձանաց տեղւոյս նորէն շինուելու եւ մեծցնելու համար թագրիր գրուեցաւ :

Դ. Տիգրանակերտի կուսակալութեան տակ գտնուած Ջերմուկ գիւղաքաղաքի եկեղեցւոյ շինութեան դէմ՝ արգելք կըլլային տեղւոյն տաճիկները, եւ արդէն դանէն շնորհուած հրովարտակն ալ կորսուած ըլլալուն նոր հրովարտակ կխնդրէին տեղւոյն ազգայինք :

Ժողովս խնդրուած հրովարտակը ձեռք բերելու համար թագրիր գրեց :

Ե. Կարնոյ Առաջնորդին եւ Քաղ. Ժողովին յայտագրոյն համեմատ, տեղւոյն դպրատան շինութեան հրամանագիրն առնելու համար Ժողովս թագրիր գրեց :

Զ. Մշոյ Վանաձոր եւ միաբանութեան խնդրագրոյն վրայ, Վանուց ուսումնարանի շինութեան հրամանագիրն առնելու համար Ժողովս թագրիր գրեց :

Է. Խարբերդու Եդեսիկ գիւղի քայքայեալ եկեղեցւոյ նորոգ շինութեան համար թագրիր գրուեցաւ :

## Ա.

Մարաշի միւթասարրիֆ Սայիտ փաշային անփոյթել ընթացից համար եղած գանգատները նկատողութեան առնելով Ժողովս, անոր պաշտօնանկութեան համար թագրիր գրեց, որ անմիջապէս գործադրուելով՝ յիշեալ միւթասարրիֆըն ինկաւ իր պաշտօնէն :

## Բ.

Տիգրանակերտի կուսակալութեան ընդհանուր զեղծմանց դէմ բողոքոյ հեռագիր մը եկած ըլլալով, զոր ստորագրած էին տեղւոյն բոլոր քրիստոնեայ ազգայինները, Բ. Դրան հաղորդուեցաւ, եւ հետզհետէ միեւնոյն բողոքները կրկնուելուն վրայ Բ. Դուռը հարկադրուեցաւ յատուկ քննիչ մը ղրկել հոն, եւ կուսակալն ալ ձգեց իր պաշտօնէն :

## Գ.

Եդեսիոյ Գաւառական Վարչութիւնը տեղւոյն կառավարական ժողովոց տաճիկ անդամոց թուոյն հաւասար քրիստոնեայ անդամ չգտնուիլը յայտնելով, ուիլայէթի օրինաց այս կէտին վերաբերեալ տրամադրութեան գործադրութիւնը կխնդրէր : Ժողովս նկատելով որ այս խնդիրը միայն Եդեսիոյ խնդիր չէ, այլ գաւառական արքունի ժողովոց ամենուն ալ կվերաբերի, ընդհանուր կերպով խնդիր ընելու համար թագրիր մը գրել եւ Եդեսիոյ Վարչութեան ալ ըստ այսմ պատասխանել որոշում տուաւ :

## Դ.

Շնքուշի Վանուց հողային կալուածներին նախկին Վանահօրը վարդապետին վրայ թափօ եղած ըլլալով եւ յիշեալ վարդապետն ալ վախճանելով, կառավարութիւնն իբր մնացեալ յաճախ հանելով ծախել կուզէր, որուն դէմ Ժողովս քանի մը անգամ թագրիր գրելով եւ Արքաղան Պատրիարքն ալ անձամբ Մեծ Եպարքոսին հետ բանակցելով, վերջապէս համեցուց նոյն կալուածներին իբր սեպհականութիւն վանքին դարձուելու, համար խնդիրը Նախարարաց Խորհրդին յանձնել :

## Ե.

### ՉԱՐՇԱՄՊԱՅԻ ԳԻՒՂԱԿԱՆ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ՎԻՃԱԿԸ

Սամսոնի Թաղ. Խորհրդոյ մէկ նամակը Չարշամպայի գիւղական Հայ ժողովրդեան թըշուառ վիճակը նկարագրելով, որոնք հարստահարութեանց պատճառաւ բազմութեամբ Ռուսաստան գաղթելու համար ճամբայ ելած ըլլալով եւ ճանբան արգիլուելով Սամսոն դարձած ու ամեն օգնութենէ զուրկ՝ մերկ եւ անօթի հոն մնացած են, նախ թաղէս եւ քաղաքականապէս

պաշտպանութիւն կխնդրէր ։

Զարչամկայի առաջնորդը Պոլիս գտնուելով նոյն միջոցին, անկէ պաշտօնապէս տեղեկագիր մը առնուելէ ետև Բ. Դրան թագրիր մը գրուեցաւ յիշեալ գիւղականաց կրած հարստահարութեանց դարմանը խնդրելու համար ։ Միանգամայն աղէտելոց օգնութեան ժամանակաւորովին ալ յիսուն Օսմանեան ոսկի անմիջապէս Սամսոն դրկել տրուեցաւ յիշեալ գիւղականաց բաշխուելու համար ի ձեռն Թաղական խորհրդոյն Սամսոնի ։

## Թ.

Մշոյ Ս. Կարապետի վանուց հողային կալուածոց հին հրովարտակին պատճէնն արքունի տէֆթէրխանայի արձանագրութենէն հանել տալու խնդրանօք թագրիր գրուեցաւ ։

## Ժ.

Վանայ Հացուոց վանուց երբեմն կողոպտեալ անօթոց խնդրոյն համար, ըստ որում Վանայ Պօղոս վարդապետը Պոլիս գտնուելուն առթիւ նոյն վանքը կողոպտող գողերէն միայն հետ դառի բանուած էր ոստիկանութեան դուռը, Ժողովս անմիջապէս թագրիր գրեց նոյն կողոպուտներէն մինչև ցարդ երևան չելածները պահանջելու համար ։

## ԺԱ.

Ժողովս նախորդ վարչութեան օրէն կախ մնացած Զէյթունի Ազգային գետնի խնդրոյն նկատմամբ ըստ թախանձանաց տեղացւոց թագրիր գրեց խնդրելով որ նոյն գետինն Ազգին յանձնուի, և դեռ ևս պատասխանը չստացաւ բարձրագոյն դռնէն ։

## ԺԲ.

### ԲՈՂՈՔ ՏԻՎՐԻԿՑԻՈՑ

Տիվրիկցւոց բողոքը երկու կէտ կպարունակէր, մէկն Առաջնորդական խնդիրն, որ Խառն ժողովոյ վերաբերելուն Խառն ժողովոյ համաձայնութեան մէջ պիտի անցնի, իսկ միւսն Տիվրիկի կտակի խնդրոյն կվերաբերի, որուն համար Տիվրիկցիք երկու կողմ բաժնուելով, իրարու հակառակ պահանջումներ կընէին, Ժողովս իւր մասնաժողովին յանձնեց այս խնդրոյն անաչառ քննութիւն ։

## ԺԳ.

Ժողովս տեղեկանալով Կարնոյ առաջնորդէն և Մշոյ գաւառական վարչութենէն Մշոյ ժողովրդեան կրած վերջին հարստահարութիւնք որոց չդիմանալով 6-7 հարիւր ազգայինք մահմետականութեան դիմելու հարկին մէջ ինկած են, և թէ ներկայ կառավարչին օրով անհնար է բանուորաց զեղծմանց չափ և սահման դնել և ժողովրդեան համար սփոփանք մը գտնել, փութաց Սրբազան Պատրիարք Հօր միջոցաւ Մեծ Եպարքոսին խնամքն ու գթութիւնը խնդրել, որով անմիջապէս կառավարիչը փոխուեցաւ և ազդու հրամաններ դրկուեցան հոն ժողովրդեան ցաւերը բառնալու և բարեկարգութիւն հաստատելու համար ։ Այս անօրէնութեանց վրայ յատագրական նամակներով տեղեկութիւն հաղորդուեցաւ Պատրիարքարանէն Մշոյ ազգային վարչութեան ։

## ԺԴ.

### ԳԱՒԱՌԱՑՒՈՑ ՀՈՂԱՅԻՆ ԽՆԴՐՈՑ ՑԱՆՑՆԱԺՈՂՈՎ

Ժողովս Սրբազան Պատրիարքէն տեղեկանալով որ Մեծ Եպարքոսն Նորին Սրբազնութեան մատուցած ընդհանուր գաւառացւոց հողային խնդրոյն վերաբերեալ թագրիրին կարեւորութիւն տալով հրաման ըրեր է դուռը քոմիսիոն մը դրուիլ և քննութեան առնուլ այս խնդիրը, և թէ նոյն քոմիսիոնին դրուելիք հայ անդամներն ալ Նորին բարձրութեան հրամանաւ Սրբազան Պատրիարքն ինք ընտրեր և ցոյց տուեր է, որք են՝ Վահէ Օտեան և Աբրօ Սահակ էֆէնտիներն և Վարչութեան Ատենա_

պետ վանք. Սիմոն Պէյն, ժողովս ընդունելով այն ընտրութիւնը որոշեց որ գաւառներէն եկած և այսուհետև գալիք հողային խնդիրներն յիշեալ քոմիսիոնին դրկուին ։

## ԺԵ.

Մեծ Եպարքութենէն եկած հրամանագրին համեմատ, որով բարենորոգմանց հրովարտակին սահմանադրութիւնները գործադրելու համար յատկապէս կարգեալ Մէճլիսի ալիի իճրաաթի որոշմամբ կ'յանձնարարէր գիւղական տուրք բաշխման և հաւաքման եղանակին վրայօք շուտով ծրագիր մը պատրաստել և Բ. Դրան մատուցանել, ժողովս մասնաժողով մը կազմեց խնդրուած ծրագիրը պատրաստելու համար, որոյ անդամ ընտրեց ։

Աղոս Սահակ Էֆէնտի
Աղաբէկեան Սարգիս »
Փափազեան Կարապետ »
Մամիկոնեան Միքայէլ »

Նոյնպէս Մեծ Եպարքութենէն եկած ուրիշ հրամանագրի մը համեմատ Կտակաց և որբոց ստացուածոց մասին ալ պէտք եղած միջոցները խորհիլ ու ծրագրելն ալ նոյն մասնաժողովին յանձնեց ժողովս ։ Յիշեալ մասնաժողովն իրեն յանձնուած կարևոր պաշտօնն անյապաղ աւարտելով մեծ աջակցութիւն մատոյց Վարչութեան որ շնորհակալեաց արժանի է. Ինչպէս որ Ազգային ժողովն ալ անոր բրած ջանից արդիւնքն մատուցուած ծրագիրներէն տեսնելով յատկապէս շնորհակալութեան քուէ տուած էր արդէն իւր պատկառելի նիստին մէջ ։

## ԺԶ.

Ափիոն Գարահիսարի հրկիզեալ եկեղեցւոյ և դպրատան շինութեան համար նպաստ հաւաքելու շրջաբերական կոնդակին տեղւոյս և քահանայ մը ղրկած էին շրջագայելու համար ։ Ժողովս ըստ առաջարկութեան Սրբազան Պատրիարք Հօր հաւանութիւն տուաւ Պանտրմայի նըման շրջաբերական կոնդակ մը տալ յիշեալ քահանային ։

## ԺԷ.

Տիգրանակերտէն և Սղերդէն եկած պաշտօնական բողոքագիրներուն վրայ, Խարզանու գայմագամ տեղւոյն Ֆէթթահ պէյի գործած հարստահարութեանց համար ժողովս Թագրիր գրեց ։

## ԺԸ.

Ատանայի հայոց յունաց և բողոքականաց ազգապետաց ստորագրութեամբ եկած հեռագրին վրայ, որով տեղւոյն տէֆթէրտար Խալիլ Էֆէնտիին դէմ բողոքելով՝ քրիստոնէից վիճակը վտանգալից ըլլալը կ'յայտնէին, ժողովս անմիջապէս նոյն հեռագիրը Մեծ Եպարքութեան ուշադրութեան մատուցանել որոշեց և Քափուքէհեայի Աբրահամ Էֆէնտիին տեղեկացաւ որ յիշեալ տէֆթէրտար Էֆէնտին անմիջապէս բարձրագոյն հրամանաւ պաշտօնէն ինկեր է ։

## ԺԹ.

## ԱՍՈՐԻՈՑ ՄՈՒՍՈՒԼԻ ՄԷՋ ՈՒՆԵՑԱԾ ԵՒ ԿԷՍ ԱՌ ԿԷՍ ԿԱԹՈԼԻԿ ԱՍՈՐԻՆԵՐԷՆ ԳՐԱՒՈՒԱԾ ԵԿԵՂԵՑԵԱՑ ԽՆԴԻՐԸ

Ինչպէս յայտ է, Ասորւոց Պատրիարքը միշտ կբողոքէր և Պատրիարքարանիս պաշտպանութիւնը կխնդրէր այս մասին ։ Ժողովս ալ Նախորդ Վարչութեան օրէն կախ մնացած այս կարևոր խնդրոյն անօրէնութեանը մտնալով մէկ երկու անգամ Բ. Դրան հետ բանակցելէ ետև, այս անգամ Արտաքին գործոց բարձր. Պաշտօնէին ծանուցագրէն տեղեկացաւ որ խնդիրը տէրութեան Պետական խորհրդին յանձնուելով, որոշուեր է որ յիշեալ եկեղեցիները բուն Ասորւոց ազգին սեփականութիւն մնան, և այս որոշման համեմատ կայսերական հրովարտակ մը շնորհուեր և տեղը ղրկուեր է ։ Այս

հերքով այս հինաւուրց խնդիրն ալ վերջացաւ ի նպաստ Ատորւոյ ազգին ։

## Ե.

## ՀՐԱՀԱՆԳ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՏՐՈՑ

Քաղաքական ժողովս Ազգային ժողովէն վաւերացեալ կեդրոնական տրոց կանոնադրութիւնն ստանալէն ետև, անոր գործադրութեան համար պէտք եղած հրահանգն անմիջապէս պատրաստելով և տպագրել տալով, յատուկ շրջաբերականաւ մայրաքաղաքիս Թաղական խորհրդոց ղրկեց, որպէս զի ըստ այնմ կեդրոնական տրոց բաշխման ցուցակները մինչև մէկ ամիս պատրաստել և Պատրիարքարան ղրկել տան ։

Ցաւ է ըսել որ Թաղական խորհուրդք՝ բաց ի մէկ երկու փոքր թաղերէ այլ և այլ պատճառներով վարչական հրահանգին գործադրութիւնը չկատարելով անտանելի կերպով յետաձգեցին և բաշխման ցուցակները չղրկեցին ցարդ, որով այս տարուան համար կեդրոնական տրոց կանոնադրութիւնը չկրցաւ գործադրուիլ և Պիւտճէին մէջ կարևոր տեղ բռնելու յատկացեալ այն տրոց տարեկան գումարն անհնար եղաւ հաստատօրէն նշանակուիլ ։ Ժողովս տեսնելով որ տրոց բաշխման ցուցակաց պատրաստութիւնն այսպէս երկարաձգուելովը ըստ նոր կանոնադրութեան կեդրոնական տրոց հաւաքումըն ընդ երկար պիտի յապաղի և տրոց հաւաքումն ալ տալու մայիս և յունիս ամիսներուն մէջ կարգադրուածն, Տնտեսական խորհրդոյ և Ելևմտից հոգաբարձութեան առաջարկութեանց վրայ պարտաւորեցաւ 75 և 25 զուրուշի թերհաշիւ տրոց հաւաքումը շարունակել տալ նաև այս տարի, և միանգամայն Թաղական խորհուրդներն ալ կրկին և երկրորդ շրջաբերականաւ հրաւիրեց բաշխման ցուցակները փութացընելու, որպէս զի գոնէ մինչև տարեգլուխ պատրաստ լինին ցուցակները և յառաջիկայ 1876 տարւոյ մայիս մէկէն սկսեալ գործադրութեան մտնէ Ազգային ժողովէն քուէարկեալ տրոց նոր օրէնքը ։

## Զ.

## ԿԱՆՈՆԱԳԻՐ

## ՆԵՐՔԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐՈՒԹԵԱՆ

## ԵՒ

## ՊԻՒՏՃԷ ԿԵԴՐ · ՍՆՏՈՒԿԻ

## 1875—76 ԱՄԻՆ

Քաղաքական ժողովս իւր մէջէն ընտրեալ յանձնաժողովի մը ձեռօք պատրաստուած Պատրիարքարանի քարտուղարութեան կանոնագրի ծրագիրն և ըստ նմին 75—76 տարւոյն համար շինուած Պիւտճէն ստանալէ ետև, որոշեց այն Պիւտճէն Ազգային ժողովոյ հաստատութեան ներկայացնել և վաւերացուելէն ետև ըստ այնմ՝ Պատրիարքարանի քարտուղարութեան կանոնագիրն ալ գործադրել ։ Սակայն այս ընելէ առաջ անհրաժեշտ համարեց նաև Տնտեսական խորհրդէն ալ պահանջել որ իւր Պիւտճէն ներկայացնէ, և յատուկ նստի մը մէջ թէ ժողովոյս ըստ նոր քարտուղարական կանոնագրի շինած պիւտճէն և թէ Տնտեսական խորհրդոյ բերած տարեկան պիւտճէն ի միասին բաղդատելով հարկ եղած փոփոխութիւններն ընելէ ետև, Ազգային ժողովոյ մատուցանել Վարչութեան պիւտճէն յատուկ տեղեկագրով մը ։ Իսկ Ազգային ժողովը ինչպէս յայտնի է, այս տարուան համար պիւտճէ սահմանել զանց առնելով յանձնարարած էր ժողովիս մինչև առաջիկայ սահմանադրական տարեգլուխ ազգային սնտուկի ելևմտից անօրինութիւնն ըստ առաջնոյն շարունակել առանց տարեգլխին պատրաստ ձգելու, և առաջիկայ 1876—77 տարւոյ համար նոր պիւտճէի մը պատրաստութիւնը և մինչև տարւոյս վերջ ներկայացումը խնդրած էր, որպէս զի նոր տարւոյ սկիզբը գոյն միաձայնութեան ենթարկելէ ետև վաւերացնելով յանձնէ նոր ընտրելի Քաղաքական ժողովին ի գործադրութիւն ։ Ըստ այսմ հրահանգի Ժողո_

վրս Տնտեսական խորհրդոյ և Ելեւմտից հաշուեքննութեան միջոցաւ Պատրիարքարանի և վարչութեան ծախքերը մինչև առաջիկայ Սահմանադրական տարեգլուխ հնար եղածին չափ խընայողութեամբ մատակարարուելուն հոգ տարաւ, միտ դնելով որ տարեգլխին բաց սպրդիլ չթողուի, և իւր այս նպատակին հասած ըլլալը կընայ հասկցուիլ Տնտեսական խորհրդոյ համարատուութեամբ Ազգային Ժողովոյդ ներկայացուելիք ելեւմտական վիճակացոյց պատկերէն, որ մինչև յառաջիկայ Սահմանադրական տարեգլուխ կեդրոնական սնտուկին ճիշդ վիճակը կպատկերացնէ։

Իսկ գալով Ազգային Ժողովոյդ յառաջիկայ տարւոյ Պիւտճէի պատրաստութեան համար ըրած յանձնարարութեանը, Ժողովս որչափ որ ջանաց այս մասին արդեամբ պատասխանել և օրինաւոր Պիւտճէ մը ներկայացնել, սակայն քանի որ կեդրոնական տրոց համար Թաղերէն սպասուած բաշխման ցուցակներն անկարելի եղաւ տարեգլխէն առաջ ձեռք բերել, որով միայն տրոց քանակութեան տարեկան ճիշդ գումարն իմանալով կարող պիտի ըլլար յառաջիկային մէջ կեդրոնական տուրքէն գոյանալիք հասոյթից գումարին վրայ ծախուց բաշխը չափելով համապատասխանութիւն մը յառաջ բերել, ուստի և իրաց այս վիճակին մէջ նկատելով Ժողովս որ եթէ պատկառելի Ժողովոյդ յանձնարարութիւնը կատարելու փափաքէն մղեալ պիւտճէ մը պատրաստելու ըլլայ, մինչև ցարդ ներկայացուած պիւտճէներէն տարբեր բան մը չպիտի ըլլայ, աւելի պատշաճ դատեց ձեռնթափ լինիլ և թողուլ այս կարեւոր և փափուկ գործն իւր յաջորդին, որոյ յաջողութիւն կմաղթէ Ժողովս, որպէս զի այսօրուան մեր դէմը գտնուած դժուարութեան նա կարող ըլլայ ժամանակին հանգամանաց ներելովը յաղթել և պատկառելի Ժողովոյդ ակնկալած օրինաւոր պիւտճէն պատրաստել և ներկայացնել ի վաւերացումն։

Ժողովս կարեւոր կհամարի հոս յիշատակել նաեւ Ազգային Ժողովէդ քանի մը ամիս յառաջ առ Քաղաքական Ժողովս յղեալ այն երկու հարցումներն ալ, որոց մէկն էր Սմբատեան Մատթէոս էֆ. երեսփոխանին հարցումն Պոլիս գտնուող գաւառացի ազգայիններէն տուրք առնուելուն համար, և երկրորդն էր Պէշիկթաշլեան Ալիքսան էֆ. երեսփոխանին հարցումն կեդրոնական սնտուկի պիւտճէին առանց Ազգային Ժողովոյդ վաւերացման գործադրութեանն սկսուելուն համար։ Ինչպէս յայտ է արդէն, Ժողովս այն երկու կէտերուն նկատմամբ մանաւանդ այս պատասխանները պատեհութիւն չհամարելով արժան դատած էր նոյն ատեն այնպէս եղած տեղեկութիւններն իւր համարատուութեան պահուն վերապահել։ Սակայն պիւտճէի գործադրութեան սկսուելուն մասին եղած հարցման կէտն Ազգային Ժողովդ ինք սահմանելով՝ անոր պատասխանն իբրև անհնարին պնդելուն վրայ Ժողովս ասկէց առաջ նոյն մասին այնպէս եղած տեղեկութեանը մանրամասն կերպով հաղորդած ըլլալուն համար, համարատուութեանս մէջ կրկնել աւելորդ կդատէ, և միայն գաւառացի ազգայիններէն կեդրոնական տուրք առնելու մասին եղած հարցման վրայ հարկ կհամարի այժմ տեղեկացնել Ազգային Ժողովոյդ թէ՝ որովհետեւ Ազգային Ժողովէդ քուէարկեալ կեդրոնական տրոց նոր օրէնքին գործադրութիւնն առաջիկայ տարւոյն միայն հարկ եղած էր տրոց բաշխման ցուցակները Թաղական խորհուրդներէն չլինելու գալուն պատճառաւ, ուստի Ժողովս ստիպուեցաւ տրոց հաւաքումն ըստ նախորդ դրութեան շարունակել, որով Պոլիս գտնուող շահաւ տեղի գաւառացի ազգայինք ևս սոյնպէս չէին մասնակցիլ կեդրոնական տրոց վճարման, երբ անձնական գործոյ համար Պատրիարքարան դիմէին։

## Ե.

## ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԵԱՆՑ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ

Ցունաց Պատրիարքն փոխադարձ այցելութեան եկած ըլլալով ի Պատրիարքարան, Սրբազան Պատրիարքն այս լուրը Ժողովիս տալու առթիւ առաջարկեց նաեւ որ այսպիսի պաշտօնական այցելութիւնք արձանագրութեան յատուկ տոմարի մը մէջ իբրև նշանաւոր դէպքեր ա-

գային պատմութեան համար, և այս մասին Ժո-ղովէս արտօնութիւն խնդրեց ։

Ժողովս Պատրիարքական փոխանորդ հօր յանձնեց սոյն արձանագրութեան գործը, հը-րահանգ տալով որ Ներկայ Ս. բագան. Պատրի-արք հօր գահակալութեան օրէն սկսեալ տեղի ունեցած այցելութիւններն արձանագրէ, և հե-տըզհետէ շարունակէ ։

## Ը.

## ՓԱՐԻԶԻ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԽՆԴԻՐԸ

Սոյն խնդրին Ազգային ժողովէն վարչու-թեան յանձնուելուն վրայ, Քաղաքական ժո-ղովս 5 հոգիէ բաղկացեալ մասնաժողովի մը յանձնեց քննել և տեղեկագրել թէ Ազգն ի՞նչ իրաւունք ունի Մուրատեան կտակին մէջ, և ի՞նչ միջոց գործադրել հարկ է Ազգին իրաւուն-քը ձեռք բերելու և կտակին իր նպատակին հասցնելու համար ։ Սակայն մասնաժողովն մի քանի անգամ հրաւիրուելէ ետև տակաւին չը-կրցաւ գումարուիլ և իր պաշտօնին սկզբնա-ւորութիւն ընել, որով խնդիրը դեռ անլոյծ կը մնայ ։

## Թ.

## ԿՏԱԿ ՔԱՐԱԿԷՕԶԵԱՆ ԵՂԲԱՐՑ

Քարակէօզեան Կարապետ էֆէնտիի վախ-ճանէլէն ետև մեծ կտակի մը խնդիրն երևան ե-լած ըլլալով, Ժողովս Սրբազան Պատրիարքէն և Կիւմիւշեան Յովհաննէս էֆէնտիէն տեղեկա-ցաւ պաշտօնապէս թէ Քարակէօզեան եղբարք իրենց հանգուցեալ եղբօր Բիւզանդ էֆէնտիի ժառանգական հարստութենէն հրաժարելով, 5 ժառանգորդք միաբանութեամբ Ազգին թողած են վաճառականութեան դպրոց մը հաստատե-լու համար, և թէ նոյն իսկ հանգուցեալ Քա-րակէօզեան Կարապետ էֆէնտի ալ իրենց հետ համեմատ և համախոհ գտնուելով իր կենդա-նութեան նա ևս իր բաժինը թողած է յիշեալ վարժարանին հիմնարկութեան և յարատևութեան համար ։ Յիշեալ ժառանգորդք իրենց այս կտա-կի դիտաւորութիւնը Կարապետ էֆէնտիի վախ-ճանէն ետև գրի առնելով՝ ստորագրեր և յանձ-ներ են Կիւմիւշեան Յովհաննէս էֆէնտիի, որ-պէս զի ընդ պաշտպանութեամբ Սրբազան Պատ-րիարք հօր այնտեղ եղած կարգադրութիւններն ի գործ դնէ կտակին յարդիւնս ածելու և մասնաւոր-եալ վարժարանը Բերայի Բանկալթիի ազգային գերեզմանատան մէջ շինուելուն հրամանը Բ. Դրանէն առնելու համար ։ Հանգուցեալ Քա-րակէօզեան Կարապետ էֆէնտիի որդւոց խնամա-կալ Փափազեան Միհրան էֆէնտի ալ համա-ձայնեցաւ Քարակէօզեան եղբարց այս ազգօ-գուտ դիտաւորութեան, և այսպէս յիշեալ կը-տակին գործնականապէս հաստատութիւն առ-նելով, Ժողովս իւր ԻԴ. նիստին մէջ ( 3 սեպ-տեմբեր 1875 ) մասնաւորապէս իւր շնորհակա-լութիւնը յայտնեց թէ՛ Սրբազան Պատրիարք հօր և թէ Կիւմիւշեան Յովհաննէս էֆէնտիին, որ անդուլ ջանասիրութեամբ աշխատած և յաջո-ղած էին այս մեծ գործն ի գլուխ հանելու ։ Եւ միանգամայն խնդրեց որ երթան Ազգային վար-չութեան շնորհակալութիւնը յայտնեն նոյն ազ-գասէր գերդաստանին ։

## Ժ.

## ԿՏԱԿ ՍՐԲՈՒՀԻՈՅ ՄԱՅՐԱՊԵՏԻՆ

Սրբազան Պատրիարք յայտնեց թէ Սրբու-հի Մայրապետն՝ որ իւր աշխատութեամբ որբա-նոց մը հիմնած է ի Խասգիւղ, այժմ Ազգին կկտակէ նոյն որբանոցը մասնաւոր պայմաններով և կտակագրին ալ մասնաւոր խնամով Վսեմ. Սանփրան փաշան խմբագրած է, և թէ առ ի չգոյէ կտակաց հոգաբարձութեան, Տնտեսական խորհուրդն այդ կտակագիրը քննելով օրինաւոր դտած և հաստատած և ինքն ալ ըստ այնմ վաւերացուցած է, զոր և ներկայացնելով իբրև կատարուած գործողութիւն արձանագրութիւնը խնդրեց ։

Ժողովս նոյն կտակագիրը աչքէ անցնելով և տեսնելով որ Ազգային վարչութեան միջամ-տութիւնն ապահովուած է, ընդունեց և արձա-նագրել որոշեց ։

## ԺԱ.

## ԿԱՅՍԵՐԱԿԱՆ ՀՐՈՎԱՐՏԱԿ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԲԱՐԵՆՈՐՈԳՄԱՆՑ

Ժողովս վերջին միամեայ շրջանին գլխաւոր դէպքերէն մին է քաղաքական բարենորոգմանց համար կայսերական հրովարտակին հրատարակութիւնը, որուն տաճկերէն բնագրին տպեալ օրինակներէն ծրար մը Բ. Դրանէն Պատրիարքարանս ղրկուած էր գաւառները տարածելու համար։

Ժողովս նոյն հրովարտակը նաև հայերէնի թարգմանել տուաւ և տպագրեալ օրինակները ղրկեց մայրաքաղաքիս եկեղեցիները և բոլոր Առաջնորդական վիճակները, հրահանգ տալով որ հանդիսաւորապէս կարդացուի եկեղեցեաց մէջ և բարեմաղթութիւններ կրկնուին Օգոստափառ ինքնակալին և տէրութեան բարձր, նախարարաց համար։

## ԺԲ.

## ՀԻՆՔԵԱՐՊԷՅՃԷՆՏԵԱՆ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅԻ ԽՆԴԻՐԸ

Արքազան Պատրիարքը յայտնելով որ Հինքեարպէյճէնտեան տէր Յովհաննէս քահանային տէրութեան կողմէ ունեցած ամսականը կտրուած ըլլալուն պատճառաւ ընտանեօք հանդերձ Փարիզէն հոս փոխադրուիլը հարկ եղած է, և այս փոխադրութեան համար 6 հազար Ֆրանքի կարօտ է, որոյ 2 հազար Ֆրանքն արդէն հոգացուած է բարերար ազգայնոյ մը շնորհիւ, առաջարկեց որ Ժողովս 4 հազար Ֆրանքին համար ալ ազգային հանգանակութիւն մը ըլլայ, և եթէ այս դժուարին է ներկայ ժամանակիս մէջ, սովելոց օգնութեան մասնաժողովին քով յաւելցած գումարէն 4 հազար Ֆրանք առնուի և տրուի յիշեալ քահանային։

Ժողովս նկատելով որ հանգանակութեան ձեռնարկել դժուարին է, Արքազան Պատրիարք հօր երկրորդ առաջարկութեան հաւանեցաւ և որոշեց սովելոց օգնութեան մասնաժողովէն 4 հազար Ֆրանքի գումար մը խնդրել յիշեալ քահանային համար։

## ԺԳ

## ԱԶԳԱՅԻՆ ԿԱԼՈՒԱԾՈՑ ԽՆԴԻՐԸ

Ազգային հաստատութեանց սեփհական կալուածներն մահլիւլի և այլ զանազան կորուստներէ զերծ պահելու նպատակաւ պէտք եղած միջոցները խորհելու համար Արքազան Պատրիարքը Ժողովիս առաջարկութիւն ընելով յայտնեց նաև որ եթէ Ժողովս միջոց չունի այս խնդրոյն վրայ խորհելու, իրեն յանձնէ զարժանն տնօրինել։ Ժողովս ընդունեց այս առաջարկութիւնն և Արքազան Պատրիարք հօր յանձնեց ամեն պատշաճ տնօրէնութիւնն ընել։

Նմանապէս Գաւառները գտնուած զանազան Վանօրէից կողմէ խնդիրներ եկած ըլլալով որ Վանական սեփհականութիւն եղած տները Թափոյի օրինօք Վանահօրց անուան վրայ արձանագրուելով Վանահօրց մահուանէն ետև մահլիւլի տակ կինթարկուին, որուն առաջքն առնուիլը կը պահանջէին, Արքազան Պատրիարք հօր առաջարկութեամբ այս խնդրոյ տնօրէնութիւնն ալ Ժողովս Նորին Սրբազնութեան յանձնեց՝ իր յարակից ազգային կալուածոց պաշտպանութեան խնդրոյն։

## ԺԴ

## ՎԵՐՋԱԲԱՆ

Քաղաքական ժողովս կվերջացնէ ներկայ համառօտութիւնը յայտ առնելով թէ իր վերջին միամեայ շրջանին մէջ զինքն զբաղեցնող քաղաքական խնդրոց ստուար չեղջակոյտին մէջէն միայն անոնք զետեղած է իր համառօտութեան մէջ, որոնք կարևոր են ի գիտութիւն Ազգային Ժողովոյդ։ Իսկ Ժողովս խել մը խնդիրներ, նա մանաւանդ անհատական և մասնաւոր խնդիրներն, որոց թիւը մինչև 50 ի կը հասնի, և որոց համար Ժողովս որոշմամբ պաշտօնական գործողութիւններ և շատ մը

